Mkhitarcan, Khoren
Hamarot patmutiwn Erusaghemi...

# ՀԱՄԱՌՕՏ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ
## ԵՒ ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ
# ՍՐԲԱԶԱՆ ՏԵՂԵԱՑ


ՅՕՐԻՆԵՑ
ԽՈՐԷՆ Վ. ՎԱՆԵՑԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ
ՄԻԱԲԱՆ Ս. ՈՒԽՏԻՍ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ


Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ
Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ
ՆՈՐԸՆՏԻՐ ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ
ՀՐԱՄԱՆԱՒ
Տ. Տ. ԵՍԱՅԵԱՅ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ
ԵՒ ՊԱՏՐԻԱՐՔԻ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԱՅ
ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ
Տ. Տ. ՊՕՂՈՍԻ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ




ՅԵՐՈՒՍԱՂԷՄ
Ի ՏՊԱՐԱՆԻ ԱԹՈՌՈՅՍ ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ
— 1867 —

# ԱԶԴԱՐԱՐՈՒԹԻՒՆ

## ՀԵՂԻՆԱԿԻՆ



Երուսաղէմայ պատմութեան կարեւորութիւնը, որ խիստ զգալի եղած է մեր ազգին մէջ, և արդէն գտնուածները՝ այն է Հաննա վարդապետի և Մկրտիչ վարդապետի Արծրունեան, որոնք տպուած ու հրատարակուած են, համարձակեցուցին զիս երրորդ մի 'ի լոյս ընծայել. որ թէպէտ եւ, ինչպէս յիշեալ երկու աշխատասիրութիւնները՝ նոյնպէս և մերը չկրնար ազգին փափաքը լեցընել իրենց համառօտութեանը պատճառաւ, այսու ամենայնիւ բարեպաշտ ուխտաւորաց յորդորմունքն ու անոնց ցանկութիւնը առիթեցին զմեզ ժամ առաջ հրատարակելու համար՝ շատ պարագաներ ու դէպքեր զանց առնել առաջին մասին մէջ, որոնց մէկ մասը բարեւսէր ընթերցողք կրնան Մկրտիչ վարդապետի պատմութեանը մէջ կարդալ։

Մեր այս գործը ոչ իբրեւ կատարեալ վստահ համարձակեցանք հասարակութեան ներկայացընել, այլ մեր համոզումն այն է՝ որ հանդերձ ամեն թերութիւններովը կարող է գէթ առ ժամանակ մի ուխտաւորաց ձեռքը իբրեւ գործի իրենց բարեպաշտ հոգին վառելու և իբրեւ առաջնորդ սրբազան տեղիքը ցոյց տալու ծառայել։

Երկու մասի բաժնեցինք՝ մեր գործքը. առաջին մասը կը պարունակէ հին ու նոր պատմութիւնը, իսկ երկրորդը սրբազան տեղեաց ստորագրութիւնը։ Որոնք թէ եւ խիստ համառօտ, այսու ամենայնիւ եթէ կարողանանք գէթ այսքանով փոքրիկ ծառայութիւն մի ըրած համարիլ, բաւական հատուցում՝ մեզ կը սեպենք զայն։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Առաքելական հիմնարկութիւնը. — Քանանայէ, Յեբուսայէ ձեռքէ Դաւիթ կը գրաւէ զայն։
(1757—2989, ըստ ժամանակագրաց)։

### 1

Երուսաղէմի հիմնարկութիւնը, ըստ վկայութեան երեւելի սրբոց Հայոց եկեղեցւոյ և պատմագրաց, մինչեւ Նոյի ժամանակը կ'ելլէ։ Կ'ըսուի թէ անոր որդին Սեմ, որու բաժին ինկած էր Պաղեստինը, առաջին հիմերը դրաւ, անշուշտ նախազգաց ըլլալով սոյն նշանաւոր քաղաքին մէջ կատարուելիք նախախնամեալ խորհուրդներուն՝ որ եղաւ Մեսիայի ծննդեամբը։ Սեմ իւր հետը բերելով, ինչպէս կ'աւանդեն յիշեալ սուրբ Հարք,(1) նախահօր ոսկորները, զոր Նոյ իւր հետը տապանին մէջ պահած էր, Քեբրոն քաղաքը ամփոփեց, և գլուխը յետոյ՝ ինչպէս հաւանական է, Գողգոթա փոխադրուեցաւ, որ Սրբոյ եկեղեցւոյ լեզուաւ կը նշանակէ Տեղի գագաթան։

---

(1) Հերոնիմոս, սուրբն Բարսեղ, Որոգինէս, Օգոստինոս։

Սեմ իւր հետը բերած մարդոցը հետ մէկ-տեղ Սաղէմ քաղաքի պարիսպները կանգնեց Ակռա ըսուած լերանը վրայ, և հոն բնակեցաւ Քանանու սերնդոցը վրայ տիրելով, որոնք Պաղեստինու երկիրը ձեռք ձգած էին ։

Սաղէմ կամ Երուսաղէմ անունը առաջին անգամը կը կարդամք սուրբ գրոց մէջ՝ 'ի պատճառս յաղթութեան Աբրահամու, զոր ստացաւ Եղիմացւոց կամ Պարսից Կոդողագոմոր թագաւորին դէմ ։ Այն ժամանակին Սաղէմայ թագաւոր էր Մելքիսեդեկ, որ երբ Աբրահամ յաղթութենէն ետ կը դառնար, անոր դիմացն ելաւ (2092) մինչեւ Թագաւորայ ձորին մօտ, որ յետոյ Զոր որդւոցն Եննոմի ըսուեցաւ (1) ։ Ետքը երկուքնին մէկէն ելան Սաղէմ քաղաքը՝ որ եղած յաղթութեանը համար շընորհակալ ըլլան Աստուծմէ․ և ինչպէս որ հաւանական է ըստ սրբոց Հարց եկեղեցւոյ, Մելքիսեդեկին կամ Սեմին կանգնած տաճարին մէջ մատոյց Աբրահամ իւր գոհութիւնը, յորում Մելքիսեդեկ հանդերձեալ Փրկչին պատկերը ներկայացընելով իւր վսեմ պաշտամանը մէջ, ընծայեց Աստուծոյ անարիւն զոհը հացին և գինւոյ, զարմանալի օրինակն ամենաստուրբ Հաղորդութեան, զոր Յիսուս Քրիստոս պիտի աւանդէր մեզ իւր անհուն մարդասիրութեամբը, 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց ։

---

(1) Ըստ Յովսեպոսի և սրբոյն Եպիփանու՝ այս ձորն է որ Զոր Յովսափաթու ալ կոչուեցաւ ։

Աբրահամ որ Աստուծոյ հրամանաւը իւր հայրենեաց երկրէն՝ Խառանէն ելեր ու Երուսաղէմի կողմերը եկեր էր, ճանչնալով Մելքիսեդեկի պաշտօնին մեծութիւնը, և անտարակոյս աստուածային ազդեցութեամբ ալ անոր վրայ Յիսուսի Քրիստոսի պատկերը տեսնելով, Թշնամեացմէ առած աւարներուն տասներորդ մասը անոր նուիրեց իբրու քահանայի Բարձրելոյն, և փոխարէն ընդունեց անոր օրհնութիւնը։

## 2

Մելքիսեդեկի վախճանէն յետոյ, որ ինչպէս կ'երեւի ժառանգ չթողուց իրեն Թագաւորութեանը, Քանանացիք կրկին անգամ տիրեցին Սաղէմի և շրջակայ երկրին, որոնց ձեռքն էր արդէն Սիոնը՝ որ Յեբուս ալ կ'ըսուի, և առանձին պարիսպով մը միացուցին երկուսը։ Եւ մնաց իրենց ձեռքը վեց հարիւր տարիի չափ, մինչեւ որ Մովսէս Աստուծոյ հրամանաւ՝ Սեմայ ցեղը, որ Աբրահամէն սերեցան և Եգիպտոսի մէջ գերութեան մատնուած էին, հրաշիւք ազատեց, և քառասուն տարի անոնց մեղացը համար անապատներու մէջ բնակեցուցանելէն զկնի, իւր մահուանէն ետքը Նաւէի որդւոյն Յեսուայ առաջնորդութեամբ իրենց սեփական հայրենաժառանգ երկիրը եկան։ Յեսուայ վախճանէն ետքն ալ Աստուած հրամանատար կարգեց զՅուդայ, որ Շմաւոնի հետ մէկտեղ գնաց Երուսաղէմի Ադոնիբեզեկ Թագաւորին հետ պատերազմեցաւ, յաղթեց և զԱ-

դամիրբեղեկ բռնելով՝ ուրից և ձեռաց մատե-րուն ծայրերը կտրեց Թողուց 'ի պատիժ իւր ըրած մարդասպանութեանցը. և Երուսաղէմ բնակող յեբուսացիները, որ Քանանու մէկ տը-ղէն սերած էին, կոտորելէն ետքը քաղաքն ալ այրեցին. բայց Սիոնը իւր բերդովը մնաց դարձ-եալ անոնց ձեռքը, և միայն ստորին քաղաքը՝ որ Սաղէմ կ'ըսուէր, զայն առին Բենիամենի որ-դիքը: Իսկ Երուսաղէմ կոչուելուն պատճառը, մեկնիչք սուրբ գրոց կ'ըսեն՝ թէ երբ Յեբուս Սաղէմին ալ տիրեց, Սիոնի հետ միացընելով զայն միահետ պարիսպով մը, երկու անուանց միաւորութենէն Երուսաղէմ կոչուեցաւ, իբր թէ Յեբուսաղէմ:

3

Այսպէս Սիոն Յեբուսացւոց ձեռքը մնաց բաւական տարիներ, մինչեւ որ Յեսսէի որդին Դաւիթ, որ Քեբրոնի մէջ Յուդայի ցեղին վը-րայ միայն սկսեր էր թագաւորել, երբ Իսրա-յէլի ծերերուն աղաչանօքը ընդհանուր Իսրա-յէլի վրայ տիրապետեց յամի աշխարհի 2957, Սիոնի բերդն ալ պատերազմով Յեբուսացինե-րուն ձեռքէն առաւ, զիրենք հալածեց և զԵ-րուսաղէմը իրեն թագաւորութեան մայրաքա-ղաք ըրաւ: Սիոնի բերդն ալ ամրացուց շուր-ջանակի պարիսպով, և ամրոցին մէջը նստաւ Սաղմոսն երգեց. և քաղաքին անունը՝ որ Յե-բուս կ'ըսուէր, յետ այնորիկ քաղաք Դաւթի անուանեցաւ:

4

Յեսսէի որդւոյն Թագաւորութեան ժամանակ երկու անգամ այլազգիները Երուսաղէմի վրայ պատերազմի եկան, բայց չկրցան վնաս մը տալ, որովհետեւ Աստուծոյ ձեռքը Դաւթի պաշտպան էր, որուն համար ամեն թշնամիները կը կոտրէր անխնայ, Աստուծոյ սիրելի ազգին ապահովութեանը համար։ Երբ որ թշնամեաց կողմէն ապահովութիւն գտաւ Դաւիթ, Իսրայէլի 7,000 կտրիճ երիտասարդները ժողովելով, գնաց Ամինադարայ քահանային տունը, ուր տեղ էր տապանակ ուխտին, և անկէ վերցնելով զայն, Աբեդդարայ գետացւոյն տունը բերաւ, և 3 ամիսէն յետոյ հանդէսով իւր պալատին մէջ խորանի տակ դրաւ մեծ յարգանօք։

5

Դաւիթ այսչափ փառք և յաջողութիւն գտած ժամանակ, տակաւին իւր ամեն գործքերուն մէջ խոհեմութիւն չէր բանեցընէր։ Անգամ մը հպարտանալով՝ հրամայեց իւր Յովաբ զօրավարին, որ բոլոր ժողովուրդը համրանքի տակ ձգէ. և այն ալ թագաւորին հրամանին հնազանդելով, ժողովրդեան թիւը Դաւթին բերաւ։ Այս մեծամտութեանս բարկացաւ Աստուած, և Գադ մարգարէի ձեռօք երեք պատիժ առաջարկեց անոր, որ անոնցմէ մէկը որն որ ուզէ՝ ընտրէ. և ասոնք էին պատիժները, երեք տարի սով, կամ երեք ամիս

պատերազմ, և կամ երեք օր մահ։ Իսկ Թագաւորը՝ մարդիկներէն աւելի Աստուծոյ ողորմութեանը ապաւինելով, զինքը Աստուծոյ կամացը յանձնեց՝ մահը նախապատիւ համարելով, որ հաւասարակաբար ամենուն վրայ ալ կը թագաւորէ։ Առտուն առաւօտէ սկսաւ մահը իր հարուածները ընել, և մինչեւ կէս օր՝ եօթանասուն հազար հոգիի չափ կեանքերնին կորսնցուցին. և Դաւիթ տեսաւ՝ որ Աստուծոյ հրեշտակը Յեբուսացի Օռնային կալին վրայ ձեռքը սուրը բռնած ժողովուրդը կը ջարդէ, լացաւ իր մեղացը վրայ կատարեալ զղջումով, և երեսի վրայ իյնկնելով կ'ըսէ. "Տէր, ես հովիւս մեղայ, պէտք է որ զիս պատժես, և այս անմեղ ժողովրդեան խնայես, որոնք իմ մեղացս համար իրենց անմեղ կեանքերնին կը վճարեն"։ Ընդունեց Աստուած անոր զղջումը, խրկեց Գադ մարգարէն, որ եկաւ ու Դաւիթին ըսաւ թէ, գընա այն հրեշտակի եղած կալին մէջտեղը սեղան շինէ և Աստուծոյ զոհ նուիրէ, որպէս զի Աստուծոյ բարկութիւնը շուտով իջեցընես։ Դաւիթ այս խօսքս մարգարէէն լսած ժամանակը՝ փութով գնաց, այն կալին տեղը Օռնայէն գընելով սեղան շինեց, և այն սեղանին վրայ եզներ հանելով՝ զոհ մատոյց Աստուծոյ, որով մահուան պատիժը դադրեցաւ։ Թէպէտ Աստուծոյ այս մեծ երախտեացը փոխարէն՝ անկեղծ սիրով կը բաղձար Դաւիթ, որ ամենակալին Աստուծոյ փառաւոր տաճար մը շինէ, և տապանակ ուխտին ալ անոր մէջ հանգուցանէ,

բայց ժամանակին պարագայները իրեն ձեռընտու չըլլալով, այս մեծ փափաքը սրտին մէջ մընաց: Մանաւանդ Աստուած ալ հրաման ըրաւ որ այս գործը անոր որդին Սողոմոնը կատարէ, իւր հօրը մահուանէն յետոյ:

Դաւիթ շատ փառքերու և Թերևս անկէ աւելի ալ վշտաց մէջ քառասուն տարի Թագաւորելով՝ եօթանասնամեայ հասակին մէջ վախճանեցաւ (2989), և Թաղեցաւ Սիօն լերան վըրայ, որու գերեզմանը մինչեւ ցայսօր կը ցուցընեն, և Տաճկաց ձեռք է:

## Սողոմոն. Տաճարին շինութիւնը:
## (2989—3000):

## 6

Դաւիթ դեռ ողջ էր, երբ իւր որդին Սողոմոն Թագաւոր ու յաջորդ հրատարակուեցաւ: Թէպէտ տասուերկու տարեկան՝ բայց լեցուն էր իմաստութեամբ ու հանճարով:

Ինչպէս վերը տեսանք՝ Աստուած ուզեց որ իւր անուանը համար շինուելիք տաճարը Սողոմոնի ձեռօք հիմնուի: Ուստի իւր Թագաւորութեան չորրորդ տարին (2993) սկսեց Սողոմոն անոր շինութիւնը, որու միայն քարահատները ութսուն հազար հոգի էին, և եօթանասուն հազար քար կրող, երեք հազար հինգ հարիւր վերակացու: Տիւրոսի և Եգիպտոսի Թագաւորները բազմաթիւ արհեստաւորներ իրե-

կեցին ։ Այս տաճարս վաթսուն կանգուն երկայնութիւն և քսան կանգուն լայնութիւն ունէր, և երեսուն կանգուն բարձրութիւն ։ Տաճարին առջեւի սրահը քսան կանգուն երկայնութիւն ունէր հիւսիսէն ՚ի հարաւ, և լայնութիւնը տասը կանգուն ։ Թէ՛ տաճարին և թէ դաբիրին շրջապատը եռայարկ դստիկոններ շինուած էր պատին կից ․ վարի կարգի լայնութիւնը հինգ կանգուն, ու մէջի կարգինը վեց կանգուն, և երրորդինը եօթը կանգուն էր ։ Շինած ժամանակը երբէք մուրճի և ուրիշ գործիքի մը ձայն չլսուեցաւ ․ վասն զի ամեն նիւթերը իրենց տեղը վարպետներէն այնպէս պատրաստուած էին, որ հոն բերածնուն պէս առանց ձայնի լռութեամբ ամեն նիւթ իւր տեղը կը հագցընէին ։ Միջին կարգի դուռը տանը աջակողմն էր, ու շուրջանակի սանդուղներով միջին կարգէն երրորդ կարգը կ՚ելլուէին ․ և ձեղունը եղեւնափայտի տախտակներով քանդակուած էր, և բոլոր վրայի սենեակներուն կարգը հինգ կանգուն բարձրութեամբ շինեց, և պատերուն ներսի կողմէն յատակէն մինչեւ պատերուն վերի ծայրը եղեւնափայտի տախտակներով յօրինեց, և ներսի կողմէն փայտով ծածկեց ։ և յատակը դարձեալ մայրի տախտակներով պատեց ։ Նա տան ետեւի կողմէն՝ քսան կանգուն յատակէն մինչեւ պատին ծայրը եղեւնափայտի տախտակներով շինեց ․ և այն ներսի միջոցը Սրբութիւն սրբութեանց համար շինեց ։ Բայց առջեւի տաճարը քառասուն կան-

գուն էր, և տան մէջ եղած եղեւնափայտե-
րուն վրայ գնտակներ և բացուած ծաղիկներ
փորագրուած էր. և ամենն ալ եղեւնափայտէ
շինելով՝ ամենեւին քար մը չէր տեսնուեր: Այս
դաբիրին երեսը, այսինքն Սրբութիւն սրբու-
թեանցին համար տաճարին մէջը պատրաստը-
ւած յատուկ տեղը, ուր որ տապանակ ուխ-
տին դրուեցաւ, քսան կանգուն բարձրու-
թիւն ունէր, և զայն մաքուր ոսկւով պատեց.
եւս և տաճարի ներսի կողմը՝ մաքուր ոսկւով
պատեց, և Սրբութիւն սրբութեանցի առջե-
ւը ոսկի շղթաներով վարագոյր մը շինեց, և
զայն ալ ոսկւով պատեց: Վերջապէս առանց
տեղ մը ձգելու, տաճարին չորս կողմը ոսկւով
պատեց. և Սրբութիւն սրբութեանցի մէջ եր-
կու նոճիէ քերովբէներ շինեց՝ տասն կանգուն
երկայնութեամբ. և քերովբէներուն իւրաքան-
չիւրը հինգ հինգ կանգուն թեւեր ունէին, և
իւրաքանչիւր քերովբէն տաս տասը կանգուն
բարձրութիւն ունէին. եւս զանոնք ալ ոսկւով
պատեց, և բոլոր պատերուն վրայ քերովբէներ
արմաւենիներ և բացուած ծաղիկներ քանդա-
կաձեւ փորագրուած էին, և Սրբութիւն սըր-
բութեանցի դրան համար նոճիէ փեղկեր շինեց,
որոնք դրանդիներուն մէջ տեղ պատին հինգե-
րորդ մասն էին. և նոճիէ շինուած երկու փեղ-
կերուն վրայ քերովբէներ, արմաւենիներ, և
բացուած ծաղիկներ փորագրուած էին ոսկե-
պատեալ: Նոյնպէս տաճարին դրանը նոճիէ դը-
րանդիները շինեց, որոնք պատին չորրորդ մասն

էին . և դրան երկու փեղկերը մայր փայտէ էին, և փեղկերը երկու կտոր ըլլալով, կը ծալուէին . և անոնց վրան քերովբէներն ալ գոյնզգոյն ծաղիկներով զարդարուած փորագրուած էր, դրուագներուն վրան ալ ոսկւով պատած . և ներքին գաւիթը՝ երեք կարգ տաշուած քարերով և մէկ կարգ եղեւնափայտի հեծաններով շինեց ։ Ահա այս է տաճարին շինութեան ձեւը և կերպը, զոր Սողոմոն եօթը տարուան մէջ շինեց և կատարեց (3000) ։

7

Այսպէս Աստուծոյ տունը Սողոմոնի ձեռօք շինուելէն յետոյ, Պետութիւնը և բոլոր ժողովուրդը մէկտեղ փառաւոր հանդէսով մի տապանակ ուխտին՝ որ Սիօն լերան վրայ կը կենար տակաւին, վերցուցին ու Տաճարին մէջ Սրբութիւն սրբութեանց ըսուած տեղը քերովբէներուն թեւին տակ հանգչեցուցին ։ Եւ տասն եւ չորս օր մեծ տօնախմբութիւն կատարելով՝ 22 հազար կով և 120 հազար ոչխար զոհ ըրին այն նաւակատեաց օրերը . և Աստուծոյ շնորհակալութեան աղօթք մատուցած ժամանակ Տաճարը լուսաւորուեցաւ, ու երկնքէն հուր իջնելով՝ ողջակէզներն այրեց ։ Եւ խոստացաւ Աստուած Սողոմոնին, որ անոր անկեղծ սրտին բոլոր խորհուրդները կատարէ, պատուիրելով միանգամայն իրեն՝ որ հօրը Դաւթի օրինաւոր ճանապարհէն չխոտորի ։

Սողոմոն բաց 'ի Տաճարէն իւր թագուհեա-

ցը համար թագաւորական պալատներ ալ շի֊
նեց և անտառ տնկեց, և շատ իմաստութեամբ
քառասուն տարի բոլոր Իսրայէլի վրայ թագա֊
ւորելով մեռաւ (3029) խաղաղութեամբ, և
թաղեցաւ 'ի Սիօն հօրը գերեզմանին մօտ:



### Ռոբովամ. Թագաւորութեան երկուքի բաժնուիլը: Սուսակիմ և Տաճարին կողոպտուիլը. (3029 — 3046):

### 8

Սողոմոնի յաջորդեց իւր որդին Ռոբովամ,
որու ժամանակ Դաւթի թագաւորութիւնը եր֊
կուքի բաժնուեցաւ: Որովհետեւ երբ որ Իս֊
րայէլի ծերերը զինքը թագաւոր ընտրեցին, ա֊
ղաչեցին տուրքի մասին որ իրենց հետ խստու֊
թեամբ չվարուի իւր նախնեաց պէս. և Ռոբո֊
վամ ալ իւր հասակակից մարդկանց խորհրդոց
ունկն դնելով, փոխանակ անոնց աղաչանաց մը֊
տիկ ընելու, ա՛լ աւելի խստութեամբ վարուե֊
ցաւ հետերնին. վասն որոյ Իսրայէլի տասը ցեղը
բարկանալով մերժեցին զինքը, և իւր հօրը ծա֊
ռայ Յերոբովամը իրե՛նց վրան թագաւոր կացու֊
ցին. և Ռոբովամ Յուդայի և Բենիամինի ցե֊
ղին վրայ թագաւորեց: Թէ և Իսրայէլի տասը
ցեղը զինքը մերժելնուն համար՝ Ռոբովամ հա֊
րիւր ութսուն հազար զօրք ժողովեց, որ Յերո֊
բովամին հետ պատերազմի, և ընդհանուր Իս֊
րայէլին վրայ թագաւորէ, բայց այս գործը Տէ֊

տուծոյ հակառակ ըլլալով, Սամեաս մարգարէին բերանով արգիլեց. վասն զի Աստուծոյ կամքն այն էր, որ Իսրայէլի թագաւորութիւնը երկուքի բաժնուի ։

## 9

Ռոբովամի թագաւորութեան ժամանակը (3033) Եգիպտացւոց Սուսակիմ թագաւորը անհամար զօրքով գալով, Տաճարին ամէն ոսկեղէն զարդերը կողոպտեց, և անչքացոյց. նա և թագաւորական պալատներն ալ կողոպտելով, բոլոր Իսրայէլացիները Եգիպտացւոց հարկատու կացոյց ։ Եւ Ռոբովամ տասն և եօթն տարի թագաւորեց Երուսաղէմի վրան, բայց ոչ բարւոք. որովհետև Աստուծոյ ճանապարհէն թիւրեցաւ, և նոյն թիւրութեան մէջ անվայել գործքերով մեռաւ (3046), և թաղուեցաւ իւր նախնեաց շիրիմներուն մէջ ։

---

## Աբիա. Ասա. (3046—3090)։

## 10

Ռոբովամի քսան և ութն որդիներէն Աբիա լստուածը իր տեղը անցաւ, որ և ոչ սակաւ կրտրիճ և արիաձեռն էր, և գոռ պատերազմող թշնամեաց դէմ. բայց ինչ օգուտ որ երեք տարի միայն թագաւորեց, բոլոր Իսրայէլացիները ահաբեկ ընելով և ջարդելով, և մանաւանդ շատ աւարներ առնելով անոնցմէ, և ինքը Ա-

բիս իւր հօրը Թիւր ճանապարհը հետեւելով, յետ երեքամեայ Թագաւորութեան մեռաւ (3049), և Թաղեցաւ Սիոն լերան վրայ, իւր նախնեաց շիրիմներուն կարգը։

# 11

Աբիային յաջորդեց իւր բարեպաշտ որդին Ասա, որ շատ բարեպաշտ մէկն էր՝ միանգամայն և քաջ պատերազմող, որ գնաց Եթովպացիները ջարդեց, և անԹիւ գանձերը կողոպտելով բերաւ Աստուծոյ տաճարը վերստին զարդարեց փառաւորապէս. բայց դժբաղդաբար ետքը գէշնալով, Աստուծմէ աւելի մարդիկներուն վրայ յոյսը դնելով, փճացուց այն ամէն զարդերը։ Վասն զի՝ երբ Բաասա իրեն դէմ պատերազմ բացաւ, իւր ճարը հատնելով՝ Տաճարի զարդերը և գանձերը առաւ Ասորւոց Թագաւորին խրկեց. այն ալ օգնութեան գալով՝ Յուդայի Թշնամիները խորտակեց ու փախցուց։ Բայց Ասա Աստուածպաշտութեան մէջ այնքան ջերմ էր, որ իւր մայրը կռապաշտ ըլլալուն համար երեսէ ձգեց, և անոր պաշտած կուռքերը Գեթսամանիի ձորը լեցնելով այրել տուաւ. և այսպէս 41 տարի Թագաւորելով՝ ոտից ցաւօք մեռաւ (3090), և Թաղեցաւ ՚ի քաղաքն Դաւթի, ՚ի գերեզմանս Թագաւորաց հարց իւրոց։



## Յովրամ. Յովսափատ. (3090 – 3119)։

### 12

Ասայէն յետոյ թագաւորական իշխանութիւնը անցաւ իւր Յովսափատ որդւոյն, որ շատ պաշտօնասէր և կրօնասէր էր, և շատ մեծագործութիւններ ալ ըրաւ, վասնզի մեծամեծ շինութիւններ շինեց, գեղեցիկ աւաններ և ամուր բերդեր. եւս և Աստուածպաշտութեան հոգին արծարծեց ժողովրդեան սրտին՝ մէջ, ատոր համար Աստուած զինքը հաւատարիմ ծառայ համարելով, անոր ամէն խնդիրները կը կատարէր. ինչպէս որ անգամ մը Ամոնացիները, Մովաբացիները պատերազմի ելած ժամանակնին Եղիէլ Ղեւտացին յԱստուծոյ շարժեալ ըսաւ իրեն, թէ զօրք պատրաստէ թշնամեաց դէմ, բայց չէ թէ կռուելու, այլ միայն տեսնելու համար թէ Աստուած ինչպէս արդարութեան որով կը պատերազմի ձեր տեղը անիրաւ թշնամիներուն հետ։ (Բ. Մնաց. Ի. 96.)։ Ու անմիջապէս մարգարէին խօսքին մտիկ ընելով, գնացին և տեսան՝ որ թշնամիները զիրար կը կոտրեն, և իրենք ալ սկսեցին անոնց կողոպուտները ժողվել, որոնք երեք աւուր մէջ հազիւ կարողացան վերջ տալ. և երեք օրէն յետոյ ուրախութեամբ ետ դարձան։ Ու այսպէս այս բարեպաշտ թագաւորը՝ 25 տարի իւր իշխանութեան գաւազանը բարեզարդեալ պահելէն յետոյ, իւր Յովրամ որդւոյն յանձնելով՝ կնքեց իւր բարի կեանքը (3111) և թաղեցաւ ՚ի ձորն՝ որ իւր անունովը Յովսափաթու ձոր կ՚ըսուի։

## 13

Յովրամ որ իւր հօրը յաջորդեց, կռապաշտ Աքաաբին աղջիկը իրեն կին առնելով, անոր մոլար Թոյնը իրեն ներգործեց, հետեւաբար Թիւր ընԹացք մը բռնելով, կռապաշտուԹեան ախտերու մէջ Թաղուեցաւ, եւ մոլեգնելով իւր վեց եղբայրները մեռցնելէն վերջ, իւր հօրը ըրած բարեկարգուԹիւններն ալ բոլոր խանգարեց. ուստի Աստուած ալ՝ ինչպէս որ իմացուցեր էր իրեն մարգարէին յատուկ գրուԹեամբը, պատժեց զինքը. եւ պատիժն այս էր՝ որ իւր ԹագաւորուԹեան ուԹերորդ տարին փորի ցաւով մը ախտանալով՝ փորոտիքները դուրս ժայԹքեցան ու մեռաւ չարաչար (3119). եւ Յուդայի ծերակոյտը արժան չի դատեց՝ որ անոր մարմինը Թագաւորաց կարգը Թաղուի:

Յովրամ. Յովաս. Տաճարի գանձերուն կողոպտուիլը:
(3119—3166):

## 14

Յովրամին յաջորդեց Ոքոզիա. դեռ մէկ տարուան Թագաւորած էր, երբ Աքաաբին տունը Իսրայէլի Թագաւորին, Յովրամին տեսուԹեան գնաց, որ Թշնամիներէն վիրաւորելով հոն պառկած էր: Յէու՝ զոր Եղիսէ Թագաւոր օծեր էր Իսրայէլի վրայ, յանկարծ Աքաաբին տունը կոխելով, անոր ընտանեացը հետ սպան-

նեց նաեւ Ոքոզիան 'ի պատիժ իւր չարութեանը։ Եւ այս դէպքս Ոքոզիային մայրը Գոթողիա իմանալով, թագաւորութեան ժառանգորդիները զամէնքն ալ ջարդել տուաւ անգթութեամբ, և ինքը անարժան թագուհի նստաւ Երուսաղէմի վրայ եօթը տարի. (Դ. Թագ. ԺԱ. 7)։ Եւ Գոթողիան թագաժառանգ զաւակները ջարդած ժամանակը, Ոքոզիա թագաւորին քոյրը՝ որ Յովիդայէ քահանայապետին կինն էր, իւր եղբօր զաւակներէն ամենափոքրը մէկ տարեկան Յովաս տղան գողնալով՝ Գոթողիայի անգթութենէն փախուց, և Տաճարին մէջ պահեց մինչեւ եօթը տարի։ Եօթը տարիէն յետոյ Յուդայի մեծամեծներուն իմացունելով, օր մը յանկարծ Տաճարին մէջ ժողվեցան, և Յովասը թագաւոր օծեցին. և այս անակընկալ դէպքը Գոթողիան լսած ժամանակը, բարկութեամբ լցեալ 'ի Տաճար վազեց պոռալով, դաւաճանութիւն է, դաւաճանութիւն է։ Եւ այն ժամանակ Յովիդայէ հրաման ըրաւ՝ որ Գոթողիան Տաճարէն դուրս հանեն և մեռցունեն. և հրամանը կատարեցաւ. Գոթողիան սպանեցին (3126), և զՅովաս թագաւորեցուցին Յուդայի վրան։

## 15

Յովաս քառասուն տարի թագաւորեց, բայց վերջի ժամանակները շատ գէշութիւններ գործեց, մանաւանդ որ կռապաշտութեան ալ ըսկըսաւ հետեւիլ. վասն որոյ երբ Յովիադայի

որդին Զաքարիա քահանայապետը զինքը կը խրատէր որ համեստ և խոհեմ ըլլայ, բարկանալով Յովաս՝ անգթութեամբ քարկոծել տըւաւ զանիկայ։ Ասոր համար Աստուած բարկանալով, Ասորեստանի թագաւորը վրան հանեց, որ եկաւ բռնութեամբ Տաճարի ամէն գանձերը թագաւորական գանձերուն հետ առաւ ու գնաց։ Թէ և՛ այս գանձերուն կողոպուտը թագաւորին ազատ կամօքը եղաւ, որպէս զի Ազայէլ չգայ Երուսաղէմը պաշարէ և առնէ, բայց ինչ օգուտ՝ որ իր խիստ մոլորութեամբը անշքացոյց փառաւոր Տաճարը և Յուդայի թագաւորութիւնը։

## 16

Յովաս նոր թագաւորած ժամանակը խիստ բարի էր, մանաւանդ երբ տեսաւ որ Տաճարին եկամուտները բոլոր քահանաները իրենց պիտոյից կը վատնեն, ժողվեց ամէն քահանաները, և սաստիկ պատուէր տուաւ, որ Տաճարը եկած եկամուտները ամէնը մէկտեղ հաւաքեն, և անոր զարդերը շինեն ու փառաւորցնեն. և ինչպէս որ հրամայեց՝ այնպէս ըրին քահանաները. բայց վերջը ինչպէս տեսանք, բոլոր այս զարդերը Ասորեստան տարուեցան։

Երբ որ տեսաւ թագաւորը Տաճարին անշքութիւնը, և իր թագաւորութեան աղքատութիւնը, յուսահատած, և Ազայէլի գոլատեան երկիւղովը պաշարուած, հիւանդութեան մահիճն ինկաւ, և ծառաները օր մը խորհուրդ ընելով զինքը անկողնոյն մէջ սպանման ըրին (3166)։

Ամասիա. Երուսաղէմի պարսպին աւերումը ու տաճարին և թագաւորին կողոպտումը. (3166–3195).

# 17

Յովասէն վերջը՝ թագաւորեց Երուսաղէմի վրայ իւր Ամասիա անուն քսան և հինգ տարուան կորիճ որդին, որ վրէժխնդիր եղաւ իւր հայրը սպաննողներուն՝ սպաններով զանոնք. և մարգարէին խրատին մտիկ ընելով, այն զօրքերը զոր իրեն օգնութեան համար Իսրայէլէն վարձքով բերել տուած էր, անոնց ճանապարհ տալով յԱստուած յուսացաւ, և սկսաւ Եդովմայեցիներէն քիչ զօրքով տասը հազար հոգի ջարդել, և տասը հազար ալ գերի բռնելով՝ բերաւ բարձր ժայռէ մը վար ձգեց զանոնք ու բըպաննեց: Բայց այս յաղթութեան հետեւութիւնը աղէկ չեղաւ իրեն, որովհետեւ Եդովմայեցւոց կուռքերն ալ հետը յԵրուսաղէմ բերաւ, և թիւրամէտ ժողովուրդը սկսաւ զանոնք պաշտել: Այս մեղաց պատճառաւ ինքն ըլլալով, տէր արժանաւոր պատիժն ալ ինքը կրեց. որովհետեւ Իսրայէլի Յովաս թագաւորին հետ պատերազմ բացուած ժամանակը, բռնուեցաւ անոր զօրքերէն, և Երուսաղէմի պարիսպները՝ չորս հարիւր կանգունի չափ փլցուցին, և տաճարին ու բոլոր քաղաքին ոսկիները ու արծաթները կողոպտեցին: Վերջապէս իր զօրքերն ալ ապստամբելով, ինքը փախաւ Լաքիս քաղաքը, ուրտեղ բռնուելով իւր թագաւորութեան քը-

սան եւ երկրորդ տարին մեռցուցին (3195), և մարմինը բերին Երուսաղէմ Թագաւորաց գերեզմանը թաղեցին ։

---

### Ազարիա կամ Ոզիա . Յովաթամ . պարագէն ու փառքերէն նուազութիւնը . ( 3195 – 3262 ) ։

## 18

Ամասիային յաջորդեց իւր տասն և վեց տարեկան Ազարիա կամ Ոզիա որդին, որ ամեն թշնամիներուն յաղթելէն յետոյ, Երուսաղէմի պարիսպներն ալ նորոգեց, և շատ մեծագործութիւններ ըրաւ, և պատերազմական պատրաստութիւններ տեսաւ ։ Բայց վրան գոռոզ հպարտութիւն մը տիրելով, ուզեց որ քահանայապետութեան պաշտօնն ալ ինքը վարէ . այս մըտօք օր մը բուրվառը ձեռքը առած Տաճարը մտաւ որ խնկարկութիւն ընէ, թէ և քահանաները զինքը զգուշացուցին, թէ իրեն չվերաբերիր այն պաշտօնը, բայց նա զանոնք արհամարհելով սպառնացաւ, վասն որոյ 'ի պատիժ իւր յանդգնութեան բոլոր մարմինը բորոտեցաւ, և գնաց մտաւ իւր տունը մինչեւ ցմահ հոն կենալով (3246) ։ Այս վիճակիս մէջ ընդամենը 51 տարի թագաւորելէն յետոյ՝ իւր Յովաթամ որդին թագաւոր ըրաւ, որ շատ յաղթութիւններ և մեծագործութիւններ ըրաւ, որ Տաճարին դուռն ալ շինեց . և 16 տարի խաղաղութեամբ թագաւորելէն յետոյ մեռաւ (3262), և թաղուեցաւ 'ի գերեզմանս հարց իւրոց ։

Աքազ. կռապաշտի և Ասորւոց հարկատու լինի.
(3262 — 3277)։

## 19

Յովաթամին տեղը անցաւ իւր չարաճճիկ որդին՝ կռապաշտն Աքազ, որ իւր սիրելի որդւոյն անշունչ կուռքերուն զոհ ըրաւ, և Աստուծոյ անոր չարութեան վրէժխնդիր լինելով, յարոյց իւր վրան Ասորւոց Ռասոն, և Իսրայէլի Փակէ թագաւորները, որոնք գալով մեծ ջարդ տուին։ Ռասոն շատ գերի տարաւ, և Փակէ մեծազումար զօրքով Երուսաղէմի վրան դիմելով՝ մէկ աւուր մէջ հարիւր քսան հազար հոգի ջարդեց, երկք հարիւր հազար կին ալ գերի տարաւ. (Բ. Մնաց. ԻԸ. 6.)։ Այս մեծ կոտորածը Աքազի աչքին ծանր թուելուն համար, շուտով Տաճարին գանձերը կողոպտելով, Ասորեստանի Թագղաթփաղասար թագաւորին խրկեց որ իրեն օգնէ. և թէպէտ օգնութեան եկաւ նա և թշնամեաց ժանիքները խորտակեց, բայց Աքազ թագաւորն ալ իրեն հարկատու ըրաւ։ Յետ այնորիկ սկսեց Աքազ Աստուծոյ փառաւոր տաճարին մէջը Ասորւոց պաշտած կուռքերուն սեղաններուն նման սեղաններ շինել, և վրան զոհ մատուցանել. և այսչափին չքաւականանալով, վերջապէս տաճարը գոցեց, և շատ կուռքեր շինելով կռատուններ կանգնել տուաւ. և այսպիսի մոլար ընթացքով և անաստուածութեամբ տասն և վեց տարի թագաւորելով՝ չար մահուամբ մեռաւ (3277)։

Եզեկիա. աստուածպաշտութիւնն նորոգէ և թագաւորութիւնը հարկատուութենէն կ'ազատէ: Սենեքերիմայ զօրաց Երուսաղէմայ վրայ գալն ու հրեշտակի ձեռօք կոտորուիլը. (3277 — 3306):

## 20

Աքազէն յետոյ Երուսաղէմի թագաւոր նըստաւ իւր Աստուածասէր և բարեպաշտ որդին Եզեկիա. որ հեզութեամբ և խոհեմութեամբ վերստին հաստատեց Յուդայի տանը Աստուածպաշտութիւնը իւր բարեպաշտ նախնեաց՝ այսինքն Դաւթի և Սողոմոնի նման. և հանճարեղութեամբ բոլոր թշնամիները յաղթելէն յետոյ՝ ամեն կուռքերը խորտակեց, և Մովսէսի շինած պղնձէ օձն ալ անոնց հետ խորտակեց, զոր Յուդայի անմիտ ժողովուրդը պաշտմունքով կը պաշտէր. (Դ. Թագ. ԺԸ. 4.). եւ Ասորւոց տուրք տալն ալ դադրեցուց: Բայց այս տուրք չտալուն պատճառաւ Ասորւոց Սենեքերիմ թագաւորը մեծ բանակ մը կազմեց, և Յուդայի շատ երկիրներուն տիրելով՝ մինչեւ Լաքիս քաղաքը եկաւ: Եզեկիա այս լսելով երկիւղով պաշարուած, Տաճարի բոլոր ոսկեպատ դռները և սիւները խորտակեց, և շատ մը ոսկի և արծաթ հաւաքելով՝ Սենեքերիմ թագաւորին ղրկեց, խաղաղութիւն և հաշտութիւն խնդրելով. բայց նա փոխանակ խաղաղութեան և հաշտութեան՝ առաւել բարկանալով, իւր Ռափսակ աստուածամարտ հայհոյիչ բերան զօրապետը ղրկեց, որ գայ Երուսաղէմը պաշա-

րէ. և այն ալ գալով Սենեքերիմայ բերնէն Աստուծոյ հայհոյութիւններ կարդաց: Ասոր վրայ բարկացաւ Եզեկիա Թագաւորը, և Երու-սաղէմէն դուրս գտնուած ջուրերը, մանաւանդ այն՝ որ Գաւթի քաղաքի մէջէն կ՚անցնէր, ա-մենուն ալ ակունքները լցեց, որպէս զի Թըշ-նամեաց բանակը ջրէն նեղուելով ետ դառնան: Եւ այս վերջին հնարքը 'ի գործ դնելէն յետոյ՝ տաճարը գնաց, և երեսի վրայ գալով սկսեց աղօթել առ Աստուած Թշնամեաց կործանման համար: Այս միջոցիս Եսայի մարգարէն եկաւ զինքը խրախուսեց, որ երբէք չվախնայ անաստ-ուածներէն: Եւ Աստուած անոնց աղօթից ձայնը լսելով, յարոյց այն գիշերը կոտորիչ հը-րեշտակ մը, որ եկաւ Սենեքերիմայ բանակին մէջ մտաւ, և հարիւր ութսուն և հինգ հազար հոգի մէկէն սպաննեց: Այս անակնունելի դէպ-քը Սենեքերիմ տեսածին պէս, սարսափելով մը շուտով հետագայ առաւօտուն 'ի փախուստ դառնալով Նինուէ քաղաքը գնաց. և ուզեց որ իւր երկու կորիճ տղայքը կռոց զոհ ընե-լով, չաստուածներուն բարկութիւնը իջեցընէ: Բայց տղայքը իրենց հօրը այս անօրէնութեանը զայրանալով, զարկին չարաչար մահուամբ ըս-պաննեցին հայրերնին տաճարին մէջ, և իրենք Հայաստանի կողմերը փախան: Իսկ Եզեկիա Թագաւորը 29 տարի բարեպէս Երուսաղէմի վրայ Թագաւորելէն յետոյ խաղաղութեամբ մեռաւ՝ (3306) յանձնելով կառավարութիւնը իր Մանասէ որդւոյն:

## Մանասէ, իւր գերութիւնը ու կրկին դարձը. Ամոն. (3306—3363):

## 21

Երկոտասան տարեկան էր երբ Մանասէ հօրը աթոռը ելաւ. բայց անոր բարեպաշտ շաւղին չհետեւեցաւ, մինչեւ անգամ Տաճարն ալ կռատուն դարձուց, և իւր պատկը անզգայ կուռքերուն զոհ ըրաւ. և իրեն խրատ տուողները ամէնքն ալ մեռցընելէն զկնի, Եսայի մարգարէն, որ իրեն խրատ տուողներէն մէկն էր, անխղճաբար սղոցով երկուքի բաժնել տուաւ, և իւր մարմինը Երուսաղէմ ըսուած աղբիւրին քով թաղուեցաւ: Մանասէի այս անգութ չարութեանը համար բարկանալով Աստուած, յարուց անոր վրայ Ասորեստանի թագաւորը, որ եկաւ (3327) զՄանասէն շղթայի զարնելով դառն տանջանքներով Բաբելոն գերի տարաւ: Բայց այս թշուառութեանց մէջ Մանասէ միտքը բերաւ իւր գործած չարութիւնները, և կատարեալ զղջմամբ Տէր ամենակալ աղօթքն ըրաւ բանտին մէջ. և Աստուած ալ անոր զղջմանը նայելով ողորմեցաւ, և վերստին Երուսաղէմ դարձուց. ուր որ յետ այնորիկ բարեպաշտութեամբ կեանք վարելով, Սիօնի պարիսպներն ալ արեւմուտքի հարաւակողմէն դէպ 'ի հեղեղատին կողմը բարձր ամրութեամբ նորոգեց. և 55 տարի թագաւորելէն յետոյ խաղաղութեամբ մեռաւ (3361), և իւր տանը պարտէզին մէջը թաղուեցաւ, իւր Ամոն կռա-

պաշտ որդին յաջորդ Թողլով. որ իւր անտեղի չարութեանց չկրնալով տանիլ, յանկարծակի տանը մէջ սպաննեցին զինքը իւր Թագաւորու-Թեան երկրորդ տարին (3363։



### Յովսիա, կռապաշտներուն ջնջուիլը ու Տաճարին նորոգու-Թիւնը. (3363 — 3394)։

## 22

Ամոնէն յետոյ Թագաւորեց իւր ութ տար-ուան բարեպաշտ Յովսիա որդին, որու մեծ և երեւելի քաջութիւնը եղաւ կռատունները կոր-ծանել, և կուռքերը խորտակել. և ապա ձեռ-նարկութիւն ըրաւ Տաճարը վերստին նորոգե-լու, որուն մէջ Մովսէսի ձեռօք գրեալ օրինաց գիրք մը գտաւ, որ բաւական մխիթարութիւն եղաւ Յուդայի ցեղին, և մանաւանդ արծաթ-ներ ալ գտաւ, զոր գործաւորաց վարձք տա-լով տաճարի շինութիւնը կատարելագործեց։

Յովսիա Թէպէտ բարի էր, բայց վերջի ժա-մանակները աղէտալի ձախորդութիւն մը պա-տահեցաւ իրեն։ Ասորւոց դէմ պատերազմող եգիպտացւոց Նեքաւով Թագաւորին դէմ պա-տերազմի ելլելով մահացու վէրք մը ստացաւ եգիպտացւոց նետերէն, իւր մարմինը Երու-սաղէմ բերին, և անոր մահուանը վրայ Երեմիա մարգարէն ալ ողբ մը յօրինեց։ Երեսուն և մէկ տարի Թագաւորեց Յովսիա, և իւր մահուամ-բը (3394) Աստուծոյ պաշտպանութեամբ կա-

ռավարուած Յուդայի թագաւորութիւնն ալ գրեթէ վերջացաւ, ինչպէս պիտի տեսնեմք իւր յաջորդին օրովը։

---

Յովաքազ, Եգիպտոս գերի կ'երթայ ու հոն կը մեռնի։ Եղիակիմ, Յովակիմ, երեք գերութիւնը ու Նաբուգոդոնոսորայ ձեռօք տաճարին հրծանիլը։ Սեդեկիա, վախճան Յուդայի թագաւորութեանը, (3394—3416)։

## 23

Յովաքազ քսան և երեք տարուան հասակին մէջ հօրը յաջորդեց, և կռապաշտութեան հետեւեցաւ։ Նեքաւով Եգիպտոսի թագաւորը, ինչպէս ըսինք, Ասորւոց վրայ պատերազմի գընաց, անկէ ետ դառնալու ժամանակը Երուսաղէմ եկաւ, և շղթայով կապեց Յովաքազն ու հետը Եգիպտոս տարաւ։ Հոն մեռաւ (3395) Յովաքազ ընդ ամէնը երեք ամիս թագաւորելով. և անոր տեղը Յովսիայի մեծ տղան Եղիակիմը թագաւոր կարգեց Նեքաւով, մեծ տուրքեր վրան դնելով. և Եղիակիմին անունն ալ Յովակիմ դրաւ։ Արդ՝ այս Յովակիմն ալ սկըսաւ գէշութիւններ ընել, և Երեմիա մարգարէն թէպէտ կը խրատէր զինքը որ ետ կենայ անօրէնութիւններէն, բայց Յովակիմ երբէք մտիկ չընելէն զատ կը բարկանար ալ մարգարէին. և իւր անօրէն գործքերուն պատիժը այս եղաւ իրեն, որ չորս տարուան թագաւորութեան մէջը Նաբուգոդոնոսոր Բաբելացւոց թա-

գաւորը անթիւ զօրքով եկաւ Երուսաղէմը առաւ, և հուսկ յետոյ Յովակիմ թագաւորը շղթաներով կապած Բաբելոն գերի տարաւ, և շատ նեղելէն զկնի, վրան խիստ ծանր տուրքեր դնելով՝ ետ խրկեց։ Բայց օգուտ մը չեղաւ, վասն զի քանի մը տարիէն յետոյ Յովակիմ վերստին ապստամբութեան նշաններ ցոյց տալուն համար, փութանակի Նաբուգոդոնոսորին զօրքերը՝ որ արեան ծարաւի էին, Երուսաղէմի վրան յարձակեցան անհնարին կոտորած մը ըրին, և քաղաքը առնելէն ետքը Տաճարին մէջ գտնուած ամէն ոսկիները, արծաթները, և ծանրագին զարդերը կողոպտեցին. և Յովակիմ ապստամբ թագաւորն ալ, որ իւր մոլար վարքովը և չարագործութեամբը տասն և մէկ տարի անարժանաբար վարած էր թագաւորութեան պաշտօնը, չարաչար մահուամբ սպաննեցին (**3405**)։

## 24

Իրեն տեղը յաջորդեց իւր տասն և ութը տարուան Յովակիմ որդին, որ Յեքոնիա ալ կ՚ըսուէր։ Նոր թագաւորութեանը երկամսեայ միջոցին մէջ Բաբելոնի Նաբուգոդոնոսոր թագաւորը կրկին ծանր զօրքով Երուսաղէմի վրայ յարձակելով, քաղաքը պաշարեց երկար ժամանակ, մինչեւ Յեքոնիայի ճարը հատնելով ելաւ իւր մեծամեծ իշխաններովը և ծառայներովը գնաց Նաբուգոդոնոսորայ բանակը՝ անձնատուր ըլլալով։ Նոր վրայ զօրքերը

մտան ներս, տաճարին և Թագաւորին տանը ամէն ոսկիները, արծաթները և ծանրագին զարդերը խորտակեցին և կողոպտեցին։ Իսկ Նաբեստանի Թագաւորը՝ Յովակիմ շղթաներով կապած, անոր մայրը և ընտանիքը և եօթն հազար զօրաւոր մարդիկ ալ գերի առած Բաբելոն տարաւ։ Յովակիմին տեղը անոր Սեդեկիա անուն պզտիկ տղան իւր կողմանէ իբր հաւատարիմ պաշտօնեայ՝ Թագաւոր կարգեց միացեալ ժողովրդոց։ Բայց այս Սեդեկիան կռապաշտութեան խիստ հակեալ ըլլալով, մարգարէները միշտ կը ծանակէր ու կ'արհամարհէր, և վերջն ալ ապստամբեցաւ Նաբուգոդոնոսոր Թագաւորին դէմ. որ անհամար զօրօք կրկին եկաւ, նախ Հրէից պաշտպան Եգիպտացիներուն յաղթեց, և ապա յարձակեցաւ լի բարկութեամբ և սրտմտութեամբ Երուսաղէմի պաշարեց, որպէս զի մէկը ոչ դուրս ելլէ, և ոչ ներս մտնէ։ Նոր վրայ սաստիկ սով մը ինկաւ քաղաքին մէջ, մինչեւ որ բնակիչները սովամահ կը կոտորուէին։ Այս պաշարումը երկու տարի տեւելով, Սեդեկիա առիթ գտաւ գաղտնի փախչելու. գիշեր մը իւր զօրացը հետ արքունի պարտէզին դռնէն դուրս ելաւ, դէպ 'ի Յորդանանու կողմը խոյս տուաւ. բայց քաղաքը պաշարող Բաղդէացի զօրքերը իմանալով ետեւէն ինկան բռնեցին, և Նաբուգոդոնոսորին առաջը բերին. ան ալ դատաստանկաւ յանդիմանելէն ետքը հրամայեց, որ անոր իշխանները, բարեկամները՝ որ զինքը յապստամբութիւն գրգռած

էին, որդիքն ու ընտանիքները ամենքը Սեդե-կիային աչքին առաջը չարաչար սպաննեն, և անոր երկու աչքն ալ հանեն. յետոյ շղթայի զարկած Նաբուգոդոնոսորի մետասաներորդ տարին գերի տարին Բաբելոն:

## 25

Այս վիճակիս մէջ ալ չմնաց Երուսաղէմ, այլ նոյն տարին (3416) Նաբուզարդան՝ Նաբուգոդոնոսորի դահճապետը, եկաւ իր տէրութեան կողմէն, Աստուծոյ տաճարը բոլորովին կողոպտեց, ոսկի, արծաթ, մանաւանդ պղինձները ամէնը Բաբելոն խրկեց. և անապատ դարձուց Տաճարը. նոյնպէս և թագաւորական պալատները ամէնը կողոպտելով՝ անշքացուց, և որպէս զի կրկին անգամ ապստամբելու խորհուրդ չընեն, Երուսաղէմի պարիսպներն ալ հիմնայատակ քանդեց, և կրակի տուաւ քաղաքը՝ Տաճարը և թագաւորին պալատները: Եւ յետ այնորիկ ամէն մեծամեծները, արհեստաւորները, և պիտանացու մարդիկները Բաբելոն գերի տարաւ, թողլով միայն աղքատները՝ որոնք կարողութիւն չունէին երթալու, և երկրագործները՝ որոնց վրայ Նաբուգոդոնոսորի հրամանաւ Հրէից ազգէն Գոթողիա անունով մէկ իշխան մը դրաւ Նաբուզարդան, ու ինքը իր տեղը դարձաւ:

Քանի մը ամսէն յետոյ Յուդայի թագաւորական ցեղէն Նաթանայ որդին Իսմայէլը եկաւ զԳոթողիան սպաննեց. բայց ինքն ալ Բաղդէ-

ացիներէն վախնալով՝ Ամմոնացւոց Թագաւորին քով փախաւ ։ Իսկ Երուսաղէմայ երկրին իշխանութիւնը անցաւ Կարեէի որդի Յովնաթանին ձեռքը, որ Քաղդէացիներէն սաստիկ կը վախնար ։ Թէպէտ Երեմիա մարգարէն զինքը շատ կը քաջալերէր որ անվախ մնայ, բայց մարգարէին խօսքը իրեն երկչոտ սրտին ազդութիւն մը չըրաւ. ուստի ժողովուրդը համոզելով առաւ Եգիպտոս փախաւ, ու հոն ամենքն ալ պատժուեցան ։ Անկէ յետոյ Երուսաղէմ անապատ և աւերակ դարձած, ոչ Թագաւոր ունէր, ոչ իշխան. իւր ամէն փառքերէն զրկուելով, եօթանասուն տարի իւր կործանման և անշքութեանը վրայ ողբալով, երեսի վրայ մնաց ։ Ահա Երուսաղէմի Յուդայեան Թագաւորութիւնը հոս լրացաւ, որ ըստ ժամանակագրաց՝ յամի աշխարհի 3416 թուականին էր ։

## Զօրաբաբէլ. Վերադարձ Բաբելոնէ Գերութեան և Երկրորդ շինութիւն Տաճարին, (3416—3469)։

## 26

Եօթանասուն տարի գերութեան մէջ մնալէն ետքը, Աստուծոյ հոգին խաղաց Պարսից Կիւրոս Թագաւորին վրայ, որ 3466 ին աստուածային օգնութեամբ Բաբելոնն առաւ, և մէկ տարի ետքը հրաման ըրաւ որ ամէն գերի Հրէաները կրկին իրենց հայրենի երկիրը դառնալով՝ Աստուծոյ Տաճարը շինեն ։ Նաև

Նաբուգոդոնոսորի ժամանակ Տաճարին կողոպտեալ ոսկեղէն և արծաթեղէն անօթները բոլորն ալ ետ դարձուց, և հրաման ըրաւ որ Տաճարը իւր Թագաւորական գանձէն փառաւորապէս շինուի։ Ասոր համար յիսուն հազար Հրէից իրենց առաջնորդ առնելով Զօրաբաբէլը, սկսեցին քաղաքը նորոգել և Տաճարը շինել։ Բայց դժբաղդաբար Կիւրոսի օրհասը վրայ գալով՝ որուն տեղը Արտաշէսը յաջորդեց, Սամարեցի մերձակայ ազգերը նախանձեցան շինութեանը վրայ, և գրեցին Արտաշէս Թագաւորին, թէ Հրէից ազգը Բաբելոնէն գալով՝ ըսկսած են իրենց քաղաքը շինել ու պարիսպները ամրացընել, որոնց միտքը ապստամբել ու հարկ չտալ է։ Յայտնի է տէրութեանդ, կ՚ըսեն, որ այս ազգը միշտ ապստամբ եղած է, որոնք իրենց Տաճարին վրայ յոյսերնին դրած՝ դէմ կեցած են քու նախնիքներուդ. ուստի գիտնաս որ եթէ քաղաքը շինելու ըլլան, ալ քեզ ոչ իշխանութիւն և ոչ ճամբայ կը թողուն Ասորւոց ու Քանանացւոց երկրին մէջ։

Այս որ լսեց Արտաշէս, և արձանագիրներէն ալ իմացաւ և ստուգեց Հրէից ապստամբ ու զօրաւոր ազգ մը ըլլալը, իսկոյն մարդ խրկեց ու արգիլել տուաւ շինութիւնները. և այնպէս խափանուած մնացին մինչեւ Դարեհի Թագաւորութեան երկրորդ տարին. (Ա. Եզր. Բ. 16.)։

## 27

Երբ Ասորեստանեայց իշխանութիւնը Դա-

րեհին անցաւ՝, հրամայեց որ Տաճարը շինուի, որոյ պարագաները այսպէս կը պատմէ Եզր։

Դարեհ թագաւորը օր մը մեծ սեղան տուաւ նախարարներուն և օտար ազգաց իշխաններուն, երբ կերակուրէն ետքը իւր սենեակը առանձնացեալ կը քնանար, իւր երեք սենեկապետ սպասաւորները՝ մէկ մէկ առանձին գիր գրեցին, կնքեցին և Թագաւորին բարձին տակը դրին։ Թագաւորը արթնցած ժամանակ բացաւ նոյն գրերը, որոց մէջ այսպէս գրուած կար։ Առաջինը գրած էր՝ ամենէն յաղթող և զօրաւոր գինին է։ Երկրորդը գրած էր՝ թէ ամենէն զօրաւոր և յաղթող Թագաւորն է։ Եւ երրորդն ալ՝ որ Զօրաբաբէլ Սաղաթիէլեանն էր, գրած էր՝ թէ ամենէն զօրաւորը կանայք են, և աւելի յաղթող ճշմարտութիւնն է։ Այս բանին վրայ Դարեհ նախարարները ժողվելով, շատ քննութենէն ետքը՝ Զօրաբաբէլի միտքը յաղթող գտնուեցաւ. և այս իմաստութեան վարձք, հայրենի աշխարհին՝ այսինքն Երուսաղէմի և Տաճարի շինութեան հրաման ընդունիլը նախապատիւ համարեց Զօրաբաբէլ։ Եւ ատի այն բազմութեան մէջ Դարեհ իւր թագաւորութեանը երկրորդ գահը խոստացած ժամանակ, Զօրաբաբէլ անոր ամեն խոստմունքները մերժեց, և միմիայն այս ըսաւ թագաւորին։ «Յիշէ քու թագաւորութիւնդ ընդունած առաջի աւուր ուխտդ, որ խոստացար Տաճարը շինելու և անոր անօթները ետ դարձնելու»։ Իսկոյն հաւանեցաւ Թագաւորը այս բանին, և

Զօրաբաբէլը գործոյն առաջնորդ կարգելով՝ Երուսաղէմ (3469) խրկեց Յովսեդեկեանց Յեսուայ հետը, որոնք գալով անմիջապէս ըսկըսեցին Տաճարը շինել. և Թագաւորական հըրամանէն ակնածելով՝ նոյն իսկ Թշնամիներին անդամ ձեռնտու կ'ըլլային Տաճարի շինութեանը, որ Դարեհի Թագաւորութեան վեցերորդ տարին կատարեցաւ ։ Եւ Զօրաբաբէլ Տաճարին նուիրական կրակը՝ որ Պահուըր ըսուած տեղը պահուած էր, գտնել տալով բերաւ Տաճարին մէջը դրաւ, և յետ այնորիկ սկսեցին զոհ մատուցանել ։ Բայց վատաւորութեան մասին՝ այս շինութիւնը առջինէն շատ ստորին ըլլալուն, Հրէից ծերերն ու քահանաները կ'ողբային առաջին փառաւորութիւնը յիշելով ։ Այս միջոցին էր որ կը մարգարէանային Անգէա և Զաքարիա ։



Եզրաս. Մովսէսի օրինաց նորոգութիւնը և պարսպաց շինութիւնը. (3469 — 3543)։

## 28

Եզրաս Ահարոնի ցեղէն և Բաբելոն գերի գնացող քահանաներէն մէկն էր, որ և Երկայնաձեռն Արտաշէս Թագաւորին ժամանակը, նոյն իսկ Թագաւորին ներկայանալով, մեծցուց արքայանիստ Աբերա քաղաքը, և շատ շնորհք գտաւ Թագաւորին առաջը. որ և հրամանն ընդունեց 3537 Թուականին՝ Երուսաղէմ երթա-

լու, օրէնքները սովրեցընելու ժողովրդոց, և Երուսաղէմի աւերակները շինելու, որ և ըստ հրամանին կատարեց այլ: Որովհետեւ 3543ին եկաւ Երուսաղէմ, ու ժողովեց քահանաները ու ծերակոյտները, և Մովսէսի օրէնքները անոնց մտքին մէջ նորոգելէն յետոյ՝ ողբաց քաղաքին աւերակութեանը վրայ. և անոնք ալ համահաւան կամօք յանձն առին իւրաքանչիւրը իրեն կարողութեան համեմատ քաղաքին պարիսպները շինելու օգնել, և սկսեցին ամեն մարդ իրեն տանը սահմանի պարիսպը շինել, և Արտաշէսէն ալ հրաման եկաւ Եզրասին այսպէս գրուած:

"Թագաւոր Արտաշէս՝ Եզրի քահանայի և պատմչի օրինաց Տեառն՝ ողջոյն: Ամենայն մարդասէր կամօք կշռեալ իմ, հրամայեցի ամենայն ազգաց Հրէաստանի, որք կամիցին ելանել յԵրուսաղէմ. և քահանայապետացն Ղեւտացւոց համարձակութիւն լիցի ընդ քեզ երթալ յԵրուսաղէմ. և որպէս փափագին ցանկութեամբ հասանել՚ի Հրէաստան և յԵրուսաղէմ, հրամայեցաք ես և եօթն խորհրդակիցք իմ, զի երթեալ ըստ օրինաց կատարեսցեն զամենայն պահելով որպէս ունիք յօրէնս Տեառն: Եւ մատուսցեն զպատարագն Տեառն Աստուծոյ Իսրայէլի, որպէս ուխտեցաք ես և սիրելիք իմ Երուսաղէմ. և զամենայն ոսկի և արծաթ որչափ և գտցի յերկրին Բաբելացւոց, Տեառն Աստուծոյ մատուսցեն պատարագս Երուսաղէմ: Եւ առեալ նպաստաւորութիւն յերկրէս Բաբելացւոց, քահանայից Տեառն Աստուծոյ տացեն

Երուսաղէմ, ոսկի և արծաթ, և զուարակս և խոյս և գառինս, և զայլ ամենայն զոհս նուէրաց մատուսցեն 'ի տեղւոջն Տեառն Աստուծոյ Երուսաղէմ։ Եւ զամենայն ինչ որպէս և կամիցիս համդերձ եղբարբքդ քովք արասցես։ Վասն ոսկւոյ և արծաթոյ հարկացն ըստ կամաց Տեառն Աստուծոյ քո կատարեսջիր, և զքահանայականն զգահ և զսպասն Տեառն տարեալ Երուսաղէմ արասջիր ըստ պիտոյից տաճարին Տեառն Աստուծոյ, եւս եղեալ զամենայն առաջի Տեառն Աստուծոյ քո Երուսաղէմ։ Եւ զայլս եւս մնացուածս և զաւելորդս, որ ինչ և իցեն 'ի պէտս Տաճարին, գիցես զայն 'ի տունս գանձից և թագաւորաց։ Եւ ես Արտաշէս թագաւորս հրամայեցի գանձաւորաց՝ որք են Ասորեստանի՝ և 'ի կողմանս Քանանացւոց, որչափ և կամեսցի առնուլ Եզր քահանայ և պատմիչ օրինաց Տեառըն Աստուծոյ բարձրելոյ, անխափան տայջիք նմա, արծաթ՝ տաղանդս հարիւր, ըստ նմին օրինակի և ոսկի, և ցորեան՝ քոռս հարիւրս, և գինի և ձէթ նոյնչափ։ Եւ զամենայն ըստ օրէնացն առեալ կատարեսցեն Տեառն Աստուծոյ բարձրելոյն. և մի լիցի ցասումն Աստուծոյ 'ի վերայ թագաւորութեան իմոյ, և որդւոյ իմոյ։ Եւ հրամայեալ վասն ձեր քահանայիցդ Ղեւտացւոց և սաղմոսասաց պաշտօնէիցդ և դռնապանաց և ծառայից քահանայից և սպասաւորաց տան Տեառն, մի զհարկս ինչ, և մի այլ ինչ որ իշխեսցէ ամենեւին 'ի դացանէ ապահանջել։ Եւ դու Եզր ըստ իմաստութեան

քում, որ տուեալ է քեզ յԱստուծոյ, կացո մե-
րակացուս և դատաւորս, որք դատեսցեն զկող-
մանս Ասորւոց և Փիւնիկեցւոց, ամենեքեան ո-
րոց ունեալ է զօրէնս Տեառն Աստուծոյ քո։ Եւ
որք ոչն գիտիցեն՝ ուսուսջիր. և ամենեքեան որք
անցանիցեն զօրինօք Տեառն Աստուծոյ և զօրի-
նօք մեր Թագաւորաց, տուեալ է քեզ պատու-
հասել և խոշտանգել, և եթէ մահապարտք ի-
ցեն՝ սպանանել, և կամ թէ պատուհասի ար-
ժանի՝ պատուհասել, և տուգանս պահանջել»։
Եւ այս հրամանը Եզրաս ընդունած ժամանակը
շատ ուրախանալով, առաւել քաջալերուեցաւ
քաղաքին պարիսպները կանգնեցնելու։ Եւ
ձեռնտու էին իրեն այս գործոյն Հրէից ծերերն
ալ։ Բայց սահմանակից ազգերը՝ այսինքն Սանա-
բաղատ և Տուփիաս Արաբացիները, Ամոնացի-
ները երբեմն ծաղր կ'ընէին, և երբեմն զչարե-
լով խորհուրդ կ'ընէին Երուսաղէմի հետ պա-
տերազմելու. բայց որովհետեւ Աստուած էր
Երուսաղէմի պաշտպանը, անոր համար միշտ ա-
նոնց խորհուրդը կը ցրուէր. և Եզրաս Թշնա-
մեաց դէմ դուրսէն պահապաններ բերաւ դը-
րաւ, և իրենք փութանակի կ'աճապարէին գոր-
ծոյն կատարմանը. և սաստիկ վախերնէն մէկ
ձեռքերնին զէնք առած՝ միւս ձեռօք քար կու-
տային իրենց եղբօրը. և այսպէս անքակ սիրով
միաւորուած աշխատելով, Էլուլ ամսոյ 25 ին,
յիսուն և երկու աւուր մէջ քաղաքին շրջապատ
պարիսպը կանգնեցուցին. (Գ. Եզր. Զ. 15)։

## 29

Յետ այնորիկ Եզրաս ներքին բարեկարգութեան զբաղեցաւ ։ Որ մը բոլոր ժողովուրդը մէկտեղ բերաւ ժողվեց , որոնք չորս բիւր երկու հարիւր վաթսունի չափ էին , ծառաներէն և աղախիններէն 'ի զատ , որք եօթն հազար երեք հարիւր երեսուն և եօթնի չափ էին . եւս և երկու հարիւր քառասուն և հինգ երգեցիկ . և անոնց առաջքը կարդաց օրինաց գրքերը , զորս բազմութիւնը լսած ժամանակ իրենց օրինաց դէմ գործած մեղքերը միտքերնին բերելով , երեսի վրայ ինկած կ'ողբային , թէ ինչպէս այս պատուական օրէնքները մինչեւ ցարդ կորսնցուցեր էին ։ Իսկ Եզրաս զիրենք քաջալերեց և մխիթարեց , որ երթան ուրախութիւն ընեն , մէկ մ'ալ եւս չմեղանչեն , և ողորմութիւն ընեն կարօտելոց . այսպէս ըսելով ժողովուրդը արձակեց ։ Յետ այնորիկ միշտ Տաճարը կուգար և օրէնքները կը սորվեցնէր ժողովրդոց ։ Նա և տասը ցեղերը մէկտեղ բերելով վիճակ ձգեցին Երուսաղէմի վրայ , որ միայն Յուդայի և Բենիամինի ցեղին ինկաւ , և միւս ցեղերը զանոնք օրհնելով իրենց քաղաքները դարձան . ( Գ . Եզրա ԺԱ . 7 ) ։ Եւ Եզրաս տասն և երկու տարի բարեպէս ժողովուրդը կառավարելէն յետոյ բարի մահուամբ վախճանեցաւ ։



Երուսաղեմայ յաջորդ քահանայապետք և Մակաբայեցի իշխանք մինչև ցՀերովդէս Ա. (3569—4001).

## 30

Ինչպէս յայտնի է, Սեդեկիայի մահուանէն ետքը Երուսաղէմ իւր գաւառաւը հանդերձ առանց Թագաւորի մնաց, և Բաբելոնի գերութենէն սկսեալ հինգ հարիւր եօթանասուն տարուան չափ քահանայապետները յաջորդաբար տիրեցին Երուսաղէմին, մինչև ցՀերովդէս ասկաղոնացին, որուն Թագաւորութեան ժամանակը Յիսուս փրկիչն մեր յաշխարհ եկաւ։

Եւ Յուդայի Թագաւորութեան վերնալէն մինչև Հերովդէսի Թագաւորութեան ժամանակը, իշխող քահանայապետները ասոնք են, Յովսեդեկ 29 տարի. Յեսու 30. Յովակիմ 48. Եղիասիբ 22. Յովադէ 22. Յովնաթան 44. Յադդուս 47. Ոնիաս Ա. 21. Սիմոն 14. Եղիազար 33. Մանասէ 12. Ոնիաս Բ. 11. Սիմոն Բ. 46. Ոնիաս Գ. 16. Յասոն 3. Մենեղաւոս 10. Լուսիմաքոս ամիս 3. Եղկիմոս 3. Յովնաթան 9. Շմաւոն 8. Յովհաննէս հիւրկանոս 29. Արիստաբուղոս առաջին Թագաւոր 12. Աղեքսանդրոս Յաննէոս 27. Հիւրկանոս 12. Արիստաբուղոս Բ. 3. Հիւրկանոս վերստին 23. Անտիգոնոս 3. Հերովդէս որ իւր Թագաւորութեան չորրորդ տարին առաւ Երուսաղէմը, և ընդ ամենը երեսուն եօթը տարի Թագաւորեց։

Պտղոմէոսի անգթութիւնը ու պատիժը։

## 31

Այս քահանայապետաց իշխանութեան ժամանակ երեւելի դէպքեր պակաս չեղան Երուսաղէմի մէջ։

Առաջին Անտիոքին ժամանակը Պտղոմէոս Եգիպտացւոց թագաւորը տիրեց ընդհանուր Հրէաստանի վրայ եւ Երուսաղէմին, եւ իւր յաջորդներէն մէկը, որ Փիլոպատոր կ'ըսուէր, օր մը Երուսաղէմ եկաւ եւ Աստուծոյ զոհ մատուցանելէն վերջը՝ հետաքրքրութեամբ մը ուզեց որ Տաճարին Սրբութիւն սրբութեանց ըսուած տեղը մտնէ ու տեսնէ։ Եւ թէպէտ քահանաները զինքը արգիլեցին, բայց նա բռնութեամբ մտնելու աշխատած ժամանակը ժողովուրդը խուռն բազմութեամբ վրան յարձակելով՝ քիչ մնաց որ պիտի սպաննէին, թէ որ քահանաները միջնորդ լինելով չազատէին զինքը անոնց ձեռքէն։ Այսու ամենայնիւ դարձեալ կ'ուզէր ներս մտնել, եւ որքան որ աղաչեցին քահանայք ետ կենալ, նա դարձեալ մտիկ չընելով անոնց աղաչանացը, բռնի զօրութեամբ մտաւ ներս. բայց հազիւ թէ հոն ոտք կոխեց, սկսաւ դողալ պատէ պատ զարնուիլ, եւ յանկարծ գետնին իյնալով անդամալոյծ եղաւ. ծառաները իսկոյն վրան հասնելով Տաճարէն դուրս քաշեցին, եւ բաւական միջոցէ մը ետքը հազիւ խելքը գլուխը եկաւ, ու սկսեց ինքզինքը ճանաչել. բայց փոխանակ զղջալու՝ առաւել զայ-

բացաւ Հրէայները Թշնամանելով։ Ու ետ դար-ձած ժամանակը հրաման ըրաւ որ իւր իշխա-նութեան տակ եղող Հրէայները ամենքն ալ կուռք պաշտեն. իսկ անոնք որ դէմ կը դնեն Թա-գաւորին հրամանին, կապուին՝ Աղէքսանդրիա տարուին, ու հոն փղերուն ոտքը տակ ջար-դուին, որ Թագաւորը այս տեսարանովս զուար-ճանայ։ Բայց Աստուած՝ որ Հրէից ազգին վը-րայ միշտ կը հսկէր ու կը պաշտպանէր, անոնց աղօթքը լսելով՝ երկու սոսկալիչ հրեշտակներ խրկեց, զոր միայն Հրէայք կը տեսնէին. այս հրեշտակները գալով փղերը և Թագաւորին զօրքերը իրարու վրայ յարուցին, որոնք զիրար սկսան ջարդել, և Հրէայները անվնաս մնացին։ Այս մեծ կոտորումը ցիր ու ցան ըրաւ փղե-րը ու զօրքերը. և Թագաւորը այս անակնունելի դիպուածոյս վրայ 'ի գութ շարժելով, հոն ուր որ սպառնացեր էր Հրէաները կոտորելու, նոյն տեղը մեծ կոչունք ըրաւ, և եօթն օր զանոնք կերակրեց. ասկէց 'ի զատ՝ անոնց ամեն պիտոյ-քը հոգալով, իւրաքանչիւրը իւր տեղը խրկեց։ Այս դէպքէս ետքը խաղաղութեամբ մնացին Հրէայք մինչեւ Սելեւկիոսի Փիլոպատորին ժա-մանակը։

Հելիոդորոսի տաճարը կողոպտելուն համար կը պատմուի։

## 32

Այս միջոցիս Սիմոն խռովարար քահանայն գնաց Սելեւկիոս Թագաւորին սիրտը գրգռեց

Հրէից վրայ . այն ալ իւր Հեղիոդորոս իշխանը 3828 Թուականին Երուսաղէմ խրկեց, որ բռունն զօրութեամբ եկաւ Տաճարին ոսկեղէն արծաթեղէն անօթները և Թագաւորին առուները կողոպտեց . բայց երբոր Ոնիաս Գ. քահանայէն խնդրեց Տաճարին գանձերը, պատասխանեց Ոնիաս, թէ այն ոսկիները ու արծաթները որբերուն և այրիներուն ապրուստներն են ։ Բայց քահանային խօսքը մտիկ չընելով ներս մտաւ, և գանձերը կողոպտած ժամանակը երկնքէն ձիաւոր մը երկու կտրիճներու հետ գալով, մերձ 'ի մահ ծեծեց զինքը և չնչապառ դուրս քաշեցին . այս տեսնելով իւր զօրքերը՝ աղաչեցին Ոնիաս քահանային, որ աղօթիւք առողջացընէ զՀեղիոդորոսը ։ Եւ երբ քահանայն անոր բժշկութեանը համար զոհ մատոյց, կրկկին առողջացաւ իշխանը, և ձիաւորը կտրիճներովը մէկտեղ նորէն երեւցաւ՝ ըսելով. « Գնա՛ շնորհակալ եղիր Ոնիայ քահանայապետէն, որուն աղօթքովը Աստուած քեզի վերստին ողորմեցաւ »։ Եւ Հեղիոդորոս շնորհակալ ըլլալով զոհ մատոյց, ու պարգեւներ տալով խաղաղութեամբ ետ դարձաւ, ու պատմեց Թագաւորին ամեն եղելութիւնները. և ըսաւ թէ ասկէ ետքը ով որ պատժել կ'ուզես, Երուսաղէմ խրկէ՝ որ ըստ արժանւոյն ընդունի իւր պատիժը ։

Յասոն և Մ՝ենեղաւոս քահանայապետութեան համար մրցեցին : Անտիոքոս Դ Եպիփանի անգթութիւնը :

## 33

Ոնիա Գ. քահանայապետին յաջորդեց իւր եղբայրը Յասոն, որ Անտիոքոս Եպիփանէն խոստացաւ ժողովուրդը կռապաշտութեան դարձնելու. բայց իւր քահանայութեան երրորդ տարին Մ՝ենեղաւոս ծանր կաշառքներ խոստանալով թագաւորին, յափշտակեց Յասոնի ձեռքէն քահանայապետութիւնը. և Տաճարին բոլոր գանձերը ծախելով Անդրոնիկոսին, որ թագաւորին մեծ իշխանն էր, կաշառք տուաւ: Բայց Ոնիաս դեռ ողջ ըլլալով, երբ այս անիրաւութիւնը ամենուն յայտնեց, Անդրոնիկոս զինքը սպաննեց. բայց ինքն ալ այս անիրաւ սպանութեանը վրայ թագաւորին հրամանաւը իշխանական պատմուճանէն զրկուելէն յետոյ, գլուխն ալ կտրեցաւ: Իսկ Մ՝ենեղաւոս երբոր չկարողացաւ իւր խոստացեալ տուրքը թագաւորին հատուցանելու գնաց անոր քով, և դաղանի լուր խրկեց իւր Լիւսիմաքոս եղբօրը, որ Տաճարի գանձերը իրեն խրկէ, բայց ժողովուրդը այս անիրաւութիւնը լսածին պէս դէմ դրաւ և արգիլեց, և Լիւսիմաքոս շատ մարդիկ ժողովելով մեծ պատերազմ բացաւ Հրէից դէմ, և շատ մարդիկ կոտորեցան: Այս օրերուս մէջ քառասուն աւուր չափ երկնից երեսը ձիաւոր մարդիկ կ՚երեւային, և զէնքերու ձայներ կը լսուէին, և Յասոն որ տուրք չտալու համար,

Անտիոքոս Թագաւորին երեսէն փախած էր, օր մը յանկարծակի լուր առաւ թէ՝ Անտիոքոս Եգիպտոսի վրայ պատերազմով գացած ժամանակը մեռեր է, խնկոյն երեք հազար հոգի ժողվելով Երուսաղէմ եկաւ, և շատ մարդիկներ ջարդեց, որպէս զի Մենելաւոսը քահանայապետական իշխանութենէն ձգէ, դարձեալ ինքն առնէ նոյն իշխանութիւնը։ Իւր փափաքը լցաւ, անցաւ Ահարոնի աթոռը, և երեք տարի ալ անարժանութեամբ պաշտօնը վարեց, բայց երբ որ Անտիոքոս այս բաներս չարագրգիռ մարդիկներէն լսեց, կարծեց որ Հրէաները իւր թագաւորութենէն ապստամբած են. ուստի զօրաց բանակ կազմելով փութով Երուսաղէմ եկաւ, և լի ցասմամբ երեք աւուր մէջ ութսուն հազար մարդ ջարդելով, և քառասուն հազար ալ գերի բռնելով օտար քաղաքներ խրկեց ու ծախեց։ Նա եւ Մենելաւոսի մատնութեամբը Տաճարը մտաւ, արծաթները ոսկիները և բոլոր պահուած գանձերը, մանաւանդ ոսկի սեղանը, լուսոյ աշտանակը, վարագոյրները, խնկամանները, պնակները, և զարդերը՝ ամենը հազար եօթն հարիւր քանքարի չափ ժողովեց տարաւ, և մնացեալ Հրէից վրայ ալ Փռիւգիացի Փիլիպպոս անունով մէկ չար մարդ մը վերակացու դրաւ, և ինքը գնաց իւր տեղը։

## 34

Շատ ժամանակ չանցած խրկեց Ապողոնիոսը 20,000 զօրքով, որ ամեն չափահաս մարդիկնե-

որ ջարդէ, և կանայքն ու տղայքը գերի ծախէ։ Նկաւ հասաւ այս խորամանկ մարդը Երուսաղէմ, և սպասեց մինչև Հրէից շաբաթ օրը, որուն մէջ ամենեւին գործքի մը ձեռք չեն զարներ. յանկարծակի վրանին հանելով շատ մարդիկ ջարդեց, և քաղաքին պարիսպներն ալ կործանեց։ Բայց Անտիոքոսին կամքն էր, որ միացած ժողովուրդը կուռք պաշտէ, անոր համար Աթենեբիոսը Երուսաղէմ խրկեց որ շատ չարչարանքներ տալով անոնց կռապաշտութիւն սորվեցնէ. որ և եկաւ և շատ հեզգասիրտ մարդիկ դարձուց. և որ մ'ալ երկու կանայք իրենց տղայքը Մովսէսի օրինաց համեմատ թլփատելնուն համար, Աթենեբիոս զանոնք անգթութեամբ պարիսպէն վար նետել տուաւ։ Այս աղէտալի և անգութ տեսարանները խղճալի ժողովուրդը տեսած ժամանակնին շատերը ինքնակամ թողուցին իրենց հայրենի ժառանգութիւնը ու հեռացան, և լեռներու ու ծերպերու մէջ սկսան բնակիլ, սովոյ և նեղութեանց համբերելով. և Երուսաղէմն եղաւ տուն կռոց և տեղի կռապաշտութեան. երեք տարիի չափ Աստուածպաշտութեան ձայնը դէպ 'ի երկինք առ Աստուած չբարձրացաւ։ Լռեցին ու դադարեցան Աստուծոյ զոհերու ու պատարագներու նուէրները, և կռապաշտութեան ձենձերները երկիրը ապականեց, (Ա. Մակ. Ա. 29)։



Յուդա Մակաբէի և իւր եղբարց յաղթութիւնը․ Նիկանորի պարտիլը․

# 35

Աստուած՝ որ երբեք ձեռքէ չթողուց Իսրայէլի ժողովուրդը, յորոց նախանձախնդիր հայրենի օրինաց Յուդայ Մակաբէն, քաջ պատերազմողը․ որ երկու անգամ հայրենի օրինաց նախանձովը վառուած, թշնամեաց ժանիքները խորտակելէն և շատ գանձեր կողոպուտներ բերելէն զկնի, խրախուսեց իւր եղբայրները՝ որ իրեն հետ արիանան օրինաց ազատութեանը համար։ Անոնք քաջալերուելով Յուդայ Մակաբէէն՝ մեծ պատրաստութեամբ Երուսաղէմ եկան, և թշնամիները հալածեցին․ և քաղաքին կործանման և աւերակներուն վրայ շատ ողբալէն յետոյ, խրախուսեցին զիրար, որ կռապաշտութեան պղծութիւնները սրբեն, և յետ այնորիկ սկսին Աստուծոյ տաճարն ալ նորոգել և Սրբութիւն սրբութեանցը շինել, զոր և կատարեցին․ քաղաքի պարիսպներն ալ կանգնեցին և մեծամեծ շինութիւններ ընելէն յետոյ, Աստուծոյ շնորհակալութեան համար եօթն օր նաւակատեաց տօն կատարեցին, և զոհ մատուցանելով փառաւորապէս Տաճարը զարդարեցին, (Ա․ Մակ․ Դ․ 44)։ Բայց տաճարին և քաղաքին փառաւորութիւնը դարձեալ առիթ եղաւ թշնամութիւն յարուցանելու․ վասն զի Եաւայ ցեղի այլազգիները նախանձելով քաղաքին շքեղութեանը, շատ չանցած եկան պատերազմեցան Իս-

րուսաղէմի հետ. բայց Յուդայ Մակաբէն ղանանք արդարութեան սրով ջնջեց հալածեց, այն սահմաններէն ու խաղաղեցաւ. (Ա. Մակ. Ե. 3)։

Բայց երկար ժամանակ չտեւեց այս խաղաղութիւնը, վասն զի քիչ ժամանակէն յետոյ Լուսիաս սուտ հաշտութիւն խոստանալով՝ եկաւ վերին քաղաքը (Սիօն) մտաւ, և հրամայեց որ բոլոր պարիսպները քանդեն։

# 36

Այս միջոցին էր որ Սելեւկիացւոց Լուսիա թագաւորի հրամանաւ Նիկանովր խորամանկութեամբ Երուսաղէմ եկաւ, և Մակաբէին հետ խնամութիւն ըրաւ, որպէս զի դաւադրութիւն ընէ։ Օր մը քահանայները զինքը պատուելով ըսին, տես թագաւորին կենացը համար զոհ կը մատուցանեմք. բայց Նիկանովր փոխանակ շնորհակալութեան, ձեռքը դէպ 'ի Տաճարը երկնցունելով ըսաւ. այս Տաճարը պիտի քանդեմ; և անոր տեղը կուռքերի պիտի կանգնեցընեմ։ Այս յանդուգն և անակնկալ խօսքին վրայ քահանայները երկիւղով պաշարուած՝ անդադար գիշեր և ցորեկ կ'աղօթէին որ անոր չար խորհուրդը Աստուած խափանէ։ Նիկանովր իւր չար կամքը կատարելու համար՝ մեծ պատերազմ բացաւ, բայց պատերազմին մէջ ինքը սպաննուելով, բանակը ցիր ու ցան եղաւ. և Իսրայէլացիք անոր ամբարտաւան ձեռքը ու գլուխը Տաճարին պարսպէն կախեցին, 'ի նախատինս անոր ամբարտաւանութեանը։

# 37

Բայց այս նախատակման գործը Սելեւկիացւոց Ա. Դեմետր Թագաւորը լսելով, սաստիկ շփոթեցաւ, եւ (3859) Բաքերը եւ Աղկիմոսը խրկեց. որոնք եկան մեծ պատերազմ բացին եւ Յուդայ Մակաբէն սպաննեցին, եւ Սիմոնի բերդն ալ առին։ Բայց Յովնաթան Աղէքսանդրի հետ դաշնադրութիւն ընելով եւ քահանայապետութեան իշխանութիւնն ալ ընդունելով՝ սկսաւ Երուսաղէմի պարիսպները շինել, եւ քաղաքը փառաւորել. (Ա. Մակ. Ժ. 18)։ Թէպէտ Դեմետր երբ որ լսեց այս դաշնադրութիւնը շատ զղջացաւ իր ըրածին վրայ, բայց օգուտ չեղաւ, վասն զի այս դաշնադրութիւնը Դեմետր լսած ժամանակը՝ խռովացաւ որ իւր արքունական գանձէն Տաճարը շինուի, եւ քահանայներուն ալ ռոճիկ կապուի, բայց Յովնաթան յանձն չառաւ, որովհետեւ քաջ գիտէր Դեմետրի չարամտութիւնը։ Եւ այս դաշնադրութիւնը առիթ եղաւ Դեմետրի եւ Աղէքսանդրի իրարու հետ պատերազմելու, եւ պատերազմին մէջ Դեմետր կրկին յաղթուեցաւ։ Եւ Յովնաթան վերստին եկաւ Երուսաղէմի պարիսպները ամրացուց։ Այս միջոցիս ալ չարախօսները գնացին Անտիոքայ միւս Դեմետրին, բայց այն ալ կրկին անգամ Յովնաթանը հաստատելով, քահանայապետութիւնը ու Հրէաստանի ընդհանուր իշխանութիւնը անոր յանձնեց, (Ա. Մակ. ԺԱ. 31), եւ Երուսաղէմէն Ասորւոց զօրքերը հանել տը-

ւաւ, որպէս զի միամիտ լինի Յովնաթան։ Բայց Յովնաթան երբ որ տեսաւ՝ որ Ասորւոց զօրքերը Երուսաղէմէն գնացին, եկաւ վերստին նուիրական տեղերը սրբեց և ամրոցները հաստատեց, սկսեց Հռովմայեցւոց հետ դաշնակցիլ, որով քիչ ժամանակ մը խաղաղութեան մէջ մնացին։

Պոմպէոս Երուսաղէմ կ'առնու և Հռովմայեցիք կը տիրեն Պաղեստինու։ Հերովդէս Ա. Եդոմայեցի։ Ծնունդ Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի։

## 38

Յովնաթանի մեռնելէն յետոյ քահանայապետութեան աթոռը անոր եղբայրը Շմաւոն նստաւ, և երբ այս ալ կոչունքի մը մէջ սպաննուեցաւ, տեղը անցաւ իւր որդին Յովհաննէս Հիւրկանոս (3869)։ Երբ որ լսեց Անտիոքոս անոր իշխանութիւնը՝ յարձակեցաւ վրան, և Հիւրկանոս Երուսաղէմ փախաւ, և սկսեցին խաղաղութեան միջոցներ գտնել, դաշինք դնելով Ասորւոց հետ. ազատութեամբ իրենց օրէնքը կը պաշտէին, և բաց Երուսաղէմէ՝ ընդհանուր Հրէաստանէն 500 քանքար արծաթ հարկ տալ խոստացան Ասորւոց ամէն տարի։ Եւ այսպէս մինչեւ 3938ին վարուեցան. բայց մէջերնին գժտութիւն ինկաւ, իրարու Թագաւորներ կը լուրէին, մանաւանդ քահանայապետութեան վրայ. և այս գժտութիւնները մանաւանդ երկու եղ-

բայց մէջն էին՝ այսինքն Յիւրկանոսի և Արիստաբուղոսի, որոնք պատճառ եղան որ Պոմպէոս Հռովմայեցւոց զօրապետը եկաւ Երուսաղէմն առաւ, և երեք ամիս Տաճարը պաշարեց, և մեծ կոտորած մը տալով պարիսպները քանդելով զայն ալ առաւ. բայց Սրբութիւն սրբութեանցին չմօտեցաւ և պատուեց ալ ընծաներով։ Ահա դարձեալ կորսնցուց Երուսաղէմ իւր պարիսպները և շքեղութիւնը։

## 39

Երուսաղէմ կարծես թէ դատապարտուած էր 'ի սկզբանէ անտի միշտ խռովութեանց և պատերազմներու։ Վասն զի հազիւ թէ Պոմպէոս ոտքը քաշեց Պաղեստինու երկրէն, Անտիգոնոս Բ. Հայոցմէ օգնութիւն առնելով (3964) եկաւ Երուսաղէմն առաւ, և Յիւրկանոս և Փասայէլ երկուքով պաշարուած ձերբակալ եղան. և Անտիգոնոս Թագաւորը Յիւրկանոսին ականջը կտրել տուաւ, որպէս զի չկարողանայ քահանայապետութեան պաշտօնին հասնիլ, և հեռաւորին Հայաստան տարին. իսկ Փասայէլ ինքզինքը սպաննեց, որ այլոց ձեռօք չսպաննուի։

## 40

Իսկ Հերովդէս Ասկաղոնացին, որ արդէն Հրէից քաղաքական գործերուն մէջ մտնելով մեծ դեր մը կը խաղար, այս շփոթութիւնները տեսնելով, իւր տունը և Յիւրկանու տունը, և շատ միամիտ ժողովուրդներ առնելով փախաւ Հռոմ

դնաց, և շատ սիրով ընդունուեցաւ Անտոնիոսէն, և Հոկտաւիանոսէն, և անոնցմէ շքով թագաւորութեան ընդունեց, և նորին ձեռընտուութեամբ, մանաւանդ վարձաւոր զօրքեր ժողվելով Հերովդէս Հրէաստան եկաւ, և շատ քաղաքներ առնելէն յետոյ, Երուսաղէմն եկաւ պաշարեց երկար ժամանակ. և շատ պատերազմէն և մեծամեծ կոտորածներէն յետոյ առեց քաղաքին, և Անտիգոնոսն ալ չարաչար գլխատեց: Ասիկա յետ այսորիկ սկսաւ եղեռնագործութիւն ընել, և բոլորովին այլակրօն ըլլալով, Երուսաղէմի մէջ սկսեց թէատրոն և ամփիթէատրոն շինել. և ձիարշաւի և գազանամարտութեան տեսարանները կը հանդիսացունէր, և Մակաբայեցւոց ցեղն ալ բոլորովին ջնջեց: Աս և Հրէից աչքին հաճելի թուելու համար՝ սկըսաւ Տաճարն ալ նորոգել, որ 46 տարին հազիւ լրացաւ, թէպէտ և ինքը անոր աւարտումը չիտեսաւ, որովհետև որդնալից սատկեցաւ 4001 ին՝ եօթանասնամեայ հասակին մէջ, 37 տարի անարժանութեամբ թագաւորելով Օգոստոս կայսեր հրամանաւ ընդհանուր Իսրայէլի վրայ:

## 41

Այս Հերովդէսի թագաւորութեան երեսունուվեցերորդ տարին Կենարարն մեր Յիսուս Քրիստոս ծնաւ ի Մարիամայ Ս. կուսէն: Ասորին թագաւորութեան վերջին տարին էր՝ որ Բեթլէհէմի անմեղ մանկանց արիւնը մտնելով,

ամէնն ալ կոտորել տուաւ, որպէս զի Յիսուսն ալ անոնց մէջը գտնուելով սպաննուի, որ ինքը իւր թագաւորութեան [illegible] փառքը չկորսնցընէ ։ Բայց Յիսուսը՝ Հրեշտակին ազդեցութեամբ Յովսէփ և սուրբ կոյսն Մարիամ Եգիպտոս փախուցին, մինչեւ ըստ Աւետարանին՝ Յիսուսի ծննդեան առաջին տարին մեռաւ Հերովդէս, և անոր տեղը Արքեղայոս յաջորդելուն համար, Յիսուս վերստին Գալիլեա դարձուցին. ուր օր ըստ օրէ կ'աճէր և կը զօրանայր ։ Պատմութեանս կարգը կպահանջէ որ համառօտ տեսութիւն մ'ալ տանք Յիսուսի Քրիստոսի և իւր աշակերտացը վրայօք ։

---

Յիսուսի Քրիստոսի աշակերտաց և [illegible] վրայ համառօտ տեսութիւն ։ Ընդհանուր հատուածը ։ Առաջին նախադասութիւնը ․ (1—34) ։

## 42

Յիսուս երկոտասանամեայ հասակին մէջ իւր ծնողաց հետ Երուսաղէմ գալով, Տաճարին մէջ քահանայապետներուն հետը նստած սուրբ գրոց վրայօք հետերնին կը խօսէր, մեկնութիւն կուտար և զամէնքը կը զարմացընէր. բայց իւր աստուածային քարոզութիւնները և հրաշքները սկսաւ Մկրտութենէն ետքը ։ Տասներկու հոգի ընտրեց ժողովրդեան մէջէն և իրեն առաքեալները անուանեց ։ Յետ այնորիկ սկսեց հրաշագործութիւններ ընել, ինչպէս Գալիլեայ

հարսանեաց մէջ ջուրը գինիի փոխարկեց . կոյ-րերը լուսաւորեց , անդամալոյծները առողջա-ցոյց , չարե[illegible]ոյ մեռեալը այսինքն Ղազարը և միամօր որդի[illegible]որոյ : Այս վերջին հրաշագոր-ծութեանս միջոցներն էր , որ Աբգար Թագա-ւոր գիր գրեց Յիսուսի՝ որ երթայ զինքը բը-ժշկէ իւր հիւանդութենէն : Իսկ անոր Յիսու-սի աստուածութեանը հաւատալուն պատճառն ու պարագաներն այսպէս կը պատմուի :

Քրիստոսի ծննդեան 24 Թուականին Պարս-կաստան երթալով Աբգար՝ Պարսից Թագաւո-րին որդւոցը մէջ խաղաղութիւն ընել : Բայց այս գործը Հռովմայեցւոց հակառակ Թուեցաւ , և անանկ կը կարծէին՝ որ Պարսից Թագաւորու-թիւնը իրեն ձեռնտուութեամբը Հռովմայեց-ւոց դէմ պիտի յարուցանէ , վասն որոյ Աբգար զինքը արդարացընելու համար այս անհիմն կար-ծիքէն՝ դեսպան խրկեց Սաբինոս հազարապետին որ Հռովմայեցւոց կողմանէ կարգուած էր Մի-ջագետաց վրայ . բայց երբ որ դեսպանները Յե-սուսի հրաշագործութիւնները լսեցին , վերա-դարձին Աբգարին պատմեցին , և այն ալ իր յու-սով գիր գրեց Յիսուսին որ երթայ զինքը բը-ժշկէ , ըստ Խորենացւոյն : Բայց Յիսուսի փըր-կագործ չարչարանաց օրերը մօտ ըլլալով , Թովմա առաքելոյն ձեռօք գիր գրեց , Թէ իմ եր-կինք համբառնալէս յետոյ , աշակերտներէս մէկը պիտի գայ և զքեզ բժշկէ , ոչ միայն մարմնա-ւոր՝ այլ և հոգեւոր հիւանդութենէդ : Եւ այս գրին հետ նա և դաստառակի վրայ նկարուած

Յիսուսի պատկերն ալ տարին, որ աստուածա-
յին հրաշիւք տպեցաւ. և զկնի Տեառն մերոյ
համբարձման, սուրբ առաքեալն Թադէոս գը-
նաց Եդեսիա, և մկրտեց զԱբգար՝ բժշկելով
ամէն հոգեւոր և մարմնաւոր հիւանդութիւն-
ներէն. և մկրտուելէն յետոյ 3 տարի ապրելով՝
մեռաւ խաղաղութեամբ ՚ի Քրիստոս՝ անդրա-
նիկ հաւատացեալ Աբգար Թագաւորն Հայոց:

## 43

Իսկ Աստուածորդէմ Յիսուսի կենարարին մե-
րոյ ըրած սքանչելագործ գործերուն վրայ, շատ
նախանձեցան Հրէաները, մանաւանդ քահա-
նաները, որոնք ճշմարտութեան անունով սու-
թեան մէջ կը դեգերէին, իրենց փառասիրու-
թեանը ծառայելով. ուստի կ'ուզէին որ կեր-
պիւ մը կորսնցունեն կամ մեռցունեն զՅիսուս,
ինչպէս որ ըրին. վասն զի Յուդայ Իսկարիովտա-
ցին ձեռօք, որ իւր տասներկու առաքեալնե-
րէն մէկն էր՝ մատնուեցաւ: Եւ յետ այնո-
րիկ Հրէաներէն չարչարուեցաւ, խաչուեցաւ,
թաղուեցաւ, և իւր աստուածային ամենակա-
րող զօրութեամբը յարեաւ, և համբարձա-
յերկինս առ Հայր (34): Եւ յետ ութ աւուր
եկաւ սուրբ Հոգին առաքելոց վրայ իջաւ. լե-
ցուց զանոնք գերբնական շնորհօք, որոնք սկը-
սեցին այլ և այլ լեզուաւ ճշմարտութիւնը քա-
րոզել և ՚ի հաւատս հրաւիրել զմարդիկ, և մկը-
րտել զանոնք Հօր, Որդւոյ, և սուրբ Հոգւոյն
անուամբը: Եւ այս միջոցներս Տէրտերիոս կը

տիրելը Հռովմայեցւոց կայսերական իշխանութեամբ, և Պաղեստինի երկիրն ալ իւր իշխանութեան տա[illegible]

## 44

Այն կայսեր իշխանութեան ժամանակն էր՝ որ սուրբն Ստեփաննոս արտաքոյ Երուսաղէմի Գեթսեմանի ձորին մէջ քարկոծեցաւ կամակցութեամբ փարիսեցի Պօղոսին, որ և յետոյ առաքեալ եղաւ։ Նոյն ժամանակէն սկսան առաքեալներն ալ ցրուիլ բոլոր երկրիս երեսը, զՔրիստոս Աստուած քարոզելու բոլոր արարածոց. և լուր գուշակելոյ Փրկչին ամէնքն ալ մարտիրոսական մահուամբ պսակեցան, որոց կատարումն և տեղերը հոս նշանակելու պատշաճ կը դատիմ՝ ի ծանօթութիւն փափաքող ընթերցողաց։

Սուրբ առաքեալն Թադէոս ըստ հրամանի Յիսուսի գնաց յԵդեսիա՝ Աբգար թագաւորը մկրտելու, որ և լուսաւորեց զինքը, և նորին խոյրարար Ադդէն եպիսկոպոս ձեռնադրեց. յետոյ դէպ 'ի վերին Հայաստան անցաւ, և շատերը դարձուց 'ի Ճշմարիտ հաւատս ու մկրտեց. Զաքարիա անուն մէկն ալ անոնց վրայ Եպիսկոպոս ձեռնադրեց։ Իսկ Աբգարու քեռորդին Սանատրուկը և անոր Սանդուխտ դուստրը մկրտելով, անցաւ Աղուանից և Կապադովկիայի կողմերը, ուր շատերը դարձուց 'ի Քրիստոս. և կամեցաւ կրկին դառնալ 'ի Հայաստան Սանատրուկի քով։ Իսկ Միջագետաց սահմանները եկած ժամանակը Հռովմայեցւոց հինգ զօրա-

պանները մերոնց, որոնք Աշկեանք կոչուեցան, և Յիսուսի 107 թուականին նահատակուեցան։ Բայց Սանատրուկ յետոյ ուրանալով Քրիստոսի ճշմարիտ հաւատքը, սուրբ Թադէոս առաքեալը և իւր Սանդուխտ դուստրը Շաւարշան քաղաքին մէջ սպաննել տուաւ. բայց շատերը անոնց նահատակութեան ժամանակ հրաշքներ տեսնալով հաւատացին 'ի Քրիստոս, և նահատակեցան։

Պօղոս առաքեալը շատ քաղաքներ քարոզելէն զկնի, Ներոնի հալածման ժամանակ 68 թուականին Հռոմ քաղաքէն երեք մղոն հեռու՝ Սաղուեան ջուրին մօտ գլխատեցին. Նոյն այս սրբազան առաքելոյս քարոզած քաղաքները անոնք են. նախ Կիլիկիա, Փռիւգիա, Գաղատիա, Մակեդոնիա, Աթէնք, ուր որ Դիոնեսիոս մեծ փիլիսոփային դարձուց. Կորնթոս և Փիլիպպէ.

Պետրոս առաքեալը քարոզեց նախ Պոնտացւոց, Կապադովկացւոց, Բիւթանացւոց կողմերը, առաջին աթոռը դրաւ Անտիոք, և վաթսուն և եօթն թուականին՝ ըստ Տիեզերական պատմութեան Հռոմ գնաց, և Պօղոսի հետ ինն ամիս բանտը մնալով՝ յետոյ Տիբերեայ գետոյն միւս կողմը, Հրէից բնակութեան սահմանները յանիկողեան բլուրին գլուխը գլխիվայր խաչեցին. և այս միջոցիս Մարկոս աւետարանիչը Աղեքսանդրիա քաղաքին առաջին եպիսկոպոսը ըլլալով, ուր որ աւետարանը գրեց, այն տեղ կատարեցաւ։

Յովհաննէս աւետարանիչ փոքր Ասիոյ մէջ

քաղաքէն, ուր որ Եփեսոսի եկեղեցին հիմնեցաւ, և հարիւր տարուան հասակին մէջ լի արդեամբք, յաւուր կիւրակէի իրեն կեանքը կատարեց, և իւր զարմանասքանչ ննջման շատերը հիացան ։

Անդրէաս առաքեալ քարոզեց Սկիւթացիներուն, Եթովպացիներուն, Թրակացիներուն, և շատ հալածանքներ կրելէն զկնի, իւր ճշմարիտ վարդապետին նման զինքն ալ խաչեցին,

Փիլիպպոս առաքեալը Սկիւթացւոց քարոզելէն յետոյ, Փռիւգիա, Տրապօլիս գնաց, և Տրայիանոսի կայսերութեան ժամանակ, ութսունամեայ հասակին մէջ նահատակուեցաւ ։

Թովմաս առաքեալը քարոզեց Մարաց, Պարթեւաց, և Հնդիկներուն, ուր որ վկայական մահուամբ կատարեցաւ, և իւր սուրբ ոսկորները Հայաստանի Մծբնացւոց գաւառը բերին ամփոփեցին ։

Սուրբն Բարթուղիմէոս քարոզեց Մեծն Հայաստանի ժողովրդոց, Լիկայոնացւոց, և Նախացւոց և ուրիշ գաւառներու. և այս սըրբազան առաքելոյս մարմինը՝ Սանատրուկ Թագաւոր հանելով խաչել տուաւ Աղբակ ըսուած գաւառը։ Եւ այս սրբազան առաքեալն սուրբ Կուսի ննջման ժամանակ Երուսաղէմ չգտնուելով, կը փափագէր նորին մարմնոյն տեսութեանը. բայց երբ սրբազան առաքեալները Տիրամօր սուրբ Կուսի տապանը բացին, որ սուրբ առաքեալը տեսնէ, և իւր փափագանացը հասնի, վերափոխեալ տեսան անոր սուրբ Մարմի-

նը ։ Աւստի 'ի մխիթարութիւն Առաքելոյն վշտացեալ սրտին, Կուսին կենդանագիր պատկերը իրեն տուին ։ Այս այն պատկերն էր, որ ըստ խնդրոյ առաքելոց՝ սուրբ Աստուածածին իւր գերամաքուր երեսին վրայ դնելով, և աղօթս տանելով անոնց ընծայեց, և այլն ։ Տես Խորենացւոյն Թուղթն գրեալ առ Սահակ Արծրունի ։ Բարթուղիմէոս առաքեալ առաւ Հայաստան տարաւ զայն, և անով շատ հրաշագործութիւններ ըրաւ. և Հոգւոց վանք ըսուած տեղը հրաշակաւոր Կուսանաց վանք մը շինելով, նոյն սուրբ Պատկերը հոն դրաւ ։

Մաքսաւոր Ղեւի Ալփեան, որ Մատթէոս աւետարանիչն է, Յիսուսի համբառնալէն ութ տարի ետքը Երուսաղէմացւոց խնդրանօք՝ նոյն սուրբ քաղաքին մէջը Եբրայեցւոց լեզուաւ Աւետարանը գրեց, և շատ ազգաց քարոզեց, մինչեւ որ բարբարոսաց երկիրները հասաւ, և այն տեղուանքը կատարուեցաւ ։

Կանանացի նախանձայոյզն Շմաւոն, որ և Սիմոն, Ասիայի Միջագետաց կողմերը քարոզելով, ըստ եկեղեցական պատմութեան, և ըստ Վարք սրբոցի վկայութեան՝ Ռշտունեաց կողմերը նահատակուեցաւ ։

Յուդայ Ղեբէոսը, որ և Թադէոս, Արմի քաղաքը կատարեցաւ, ըստ Վարք սրբոցի ։

Յակոբոս Ալփէոյ կոչեցեալն, որն որ Մատթէոս աւետարանչի եղբայրն էր, Հրէից և հեթանոսաց քարոզելէն յետոյ՝ Նոբուաց երկրին մէջ կատարեցաւ ։

Մատաթիան որ աստուածային մղմամբը մետասան առաքեալներէն Յուդայի տեղ ընտրուեցաւ , շատ տեղեր քարոզելէն յետոյ , վերըստին Հրէաստան դառնալով այն կողմերը կատարեցաւ , ըստ Տիեզերական պատմութեան . իսկ ըստ Վարք սրբոցի՝ Եթովպիոյ մէջ կատարեցաւ :

Յակոբոս Զեբեդեան Յովհաննու եղբայրը Պաղեստինու կողմերը Հրէից թելադրութեամբ Հերովդէս չորրորդապետէն բռնուելով՝ Փիլիպպեայ Կեսարիայի մէջ սրով նահատակեցաւ , Յիսուսի 42 թուականին՝ որուն մարմինը հրաշիւք Սպանիա գնաց , և գլուխը Երուսաղէմ քաղաքը Սիօն լերան վրայ՝ հրեշտակի ձեռօք սուրբ Կոյս Մարիամ Աստուածածնի յանձնուեցաւ , երբ նստած էր Յակոբ արդար առաքելոյն տանը մէջ . և նոյն պատուական Գլուխը այն տեղ ամփոփեց Մարիամ Աստուածածին , իւր ամենամաքուր ձեռօքը . ուր որ անշարժ կը մնայ մինչեւ ցայսօր ժամանակ : Եւ այս սուրբ տեղս Յակոբ արդար Առաքելոյն լինելով , սոյն Սրբազան առաքեալն ալ , որ Երուսաղէմի առաջին Պատրիարքն էր , այս տեղս թաղուեցաւ , վասն որոյ սոյն տեղւոյս կ'ըսուի Վանք Սրբոց Յակոբեանց : Իսկ Յակոբ սրբազան առաքեալն որ սուրբ Երուսաղէմի առաջին Պատրիարքն էր, ինչպէս ըսինք , միշտ ճշմարտութիւն քարոզելով՝ Հրէայները նախանձեցան , և Տաճարի աշտարակէն վար ձգելով , և թափչաց գլուխը ճըմլելով նահատակեցին , և մարմինը իւր տանը մէջ ըստ նախնի սովորութեան ամփոփեցին . որոյ

վրայ այժմ եկեղեցւոյ աւագ խորանը կառուց-
եալ է. և այս սուրբ տեղը՝ որ Վանք Սրբոց
Յակոբեանց կ'ըսուի, Հայոց ազգիս սեպհա-
կան ժառանգութիւնն է 'ի սկզբանէ անտի, ու-
րուն փառաւորութիւնը ճշմարտապատմաւ ու-
կանոնաւորեալներուն առաւել արժանի կը համարիմ
պատմելու, քան թէ իմ անհեթեթ գրչիս. բայց
և այնչափ իւր տեղը փոքր 'ի շատէ կը ծանու-
ցանեմ ձեր կրօնասէր և ազգասէր ընթերցողաց։



Սուրբ Տեղեաց և վանօրէից շինութիւնը։ Հեղինէ Թագու-
հի կին Աբգարու. (34—49. կամ ըստ հռոմ. թուա. 46)։

45

Սրբազան Առաքելոց քարոզութիւնը խիստ
արդիւնաւոր եղաւ նորածին եկեղեցւոյն. վասն
զի շատերը հաւատացին 'ի Քրիստոս և մկրտ-
եցան, և դիմեցին այս սուրբ Երկիրս, և անոր
բնական տեղերը պայծառացունելով, երե-
ւելի մեծամեծ վանքեր շինեցին և պաշտպանե-
ցին սուրբ Տեղերը. և ճշմարիտ հաւատքը օ-
րէ օր պայծառացուցեալ՝ հաւատացելոց թիւը
բազմացուցին։

Սուրբ տեղեաց այցելութեան եկողներուն
մէջ առաջին կը համարուի Աբգար Թագաւո-
րին բարեպաշտ կինը Հեղինէ Թագուհին, որ
իւր էրկանը մեռնելէն յետոյ կռապաշտ տղա-
յէն զզուելով, մանաւանդ լսելով թէ Յերու-
սաղէմ սաստիկ սով կայ, իրեն պաշարք համա-

րեց, և Հայոց Խուրան Արծրունի զօրավարը՝ որ ժամանակաւ Հերովդէսին հետ պատերազմեցաւ, հետը առնելով Կղոդիոս կայսեր ժամանակ (42 հաւ. Քրս.) Արուստղէմ եկաւ, և շատ գանձեր խրկելով՝ Եգիպտոսէն ու Կիպրոսէն ցորեն բերել տուաւ, քրիստոնէից և առհասարակ ամենայն աղքատաց բաժնել տուաւ՝ մինչեւ որ սովութիւնը անցաւ։ Նա յետոյ սկսաւ հոգտանիլ և ձեռնարկութիւն ընել սուրբ Տեղեաց շինութեանը, ինչպէս որ Կենարարին մերոյ Յիսուսի Գերեզմանին վրայ փոքր մատուռ մը շինեց, եւս և մատուռ մը ձիթենեաց լեռը Յիսուսի ոտնատեղւոյն վրայ, որու նշանը քարի վրայ մինչեւ ցայսօր յայտնի կ'երեւայ։ Այս քար մ'ալ Օմէրի տաճարին մէջ, զոր Տաճկաց չէլը քրիստոնէից համբուրել կու տայ, որոյ համար կ'ըսուի թէ համբարձման ժամանակ կոխած քարին մէկ կտորն է։

Հեղինէ Թագուհին Բեթլեհեմի մէջ ալ Յիսուսի ծննդեան սուրբ Այրը քարապատեց։ Նա բաժակարբու որբազան Յակոբ առաքելոյն գլխոյ ամփոփուած տեղն ալ՝ որ Սիոն լերան վրան է, փոքրիկ կամար մը շինել տուաւ։ Նա այս ամէն բարեպաշտ գործքերը ութ տարուան մէջ լրացունելէն յետոյ՝ խաղաղութեամբ հանգեաւ ՚ի Բրխուսս (շուրջ 46 հաւ. Քրիստոնէն.) ՚ի մեծ կսկծի երախտապարտ ժողովրդոց, որոնց այնչափ բարերարած էր, և քաղաքին հիւսիսային կողմը, նշանաւոր բլուրի մը վրայ թաղուեցաւ, որոյ տեղը հիմայ յայտնի չէ։

Հրէից կործանման մօտենալը. և անոր նախագուշակ սքանչելի նշանները. խառնակութիւնք և պատերազմունք Հրէից. (46—69)։

## 46

Այս միջոցներս կ'իշխէր Հռովմ Ներոն կայսրը, որու ժամանակ երբ Յակոբ տեառնեղբայրը նահատակեցաւ (62), և իւր Շմաւոն եղբայրը տեղը յաջորդեց, Հրեաները նախանձելով քրիստոնէից բազմանալուն վրայ, մանաւանդ իրենց ընտիր ազգ ըլլալուն վրայ պարծենալով՝ Հռովմայեցւոց դէմ կը մաքառէին, և անոնց լուծը իրենց ծանր. կու գար. և որովհետև իրենց անօրէնութեանց թիւը լեցուած էր, ուստի և կործանումնին ալ մօտ էր։ Եւ Աստուած թոյլ կու տար դատաստանաց ձեռօք զանազան նեղութիւններ կրելու։ Այն միջոցներուս (62 թուականին) Յեսու անունով մէկը երեւնալով Տաճարի մէջ կ'աղաղակէր ու կ'ըսէր. "Ձայն բարբառոյ յարեւելից, ձայն յարեւմտից, ձայն 'ի չորից հողմոց. բարբառ 'ի վերայ Երուսաղէմի և Տաճարի, և 'ի վերայ արանց և կանանց, և ամենայն ժողովրդեանն„։ Եւ յետ այնորիկ ըստէպ ստէպ գիշեր և ցորեկ կը կանչէր. "Վայ, վայ, վայ Երուսաղէմի„։ Թէպէտ այս ահաւոր ձայնը դադարեցընելու համար, շատ կը ծեծէին զինքը, բայց երբէք չանսալէն յետոյ, եօթը տարի ամէն տեղ նոյն զարհուրեցուցիչ ձայնը կը կանչէր. և երբ որ քաղաքը Թշնամիներէն պաշարուեցաւ, պարսպաց վրայ շրջելով՝ բարձր ձայնով մը վերջին անգամ պոռաց. "Վայ Տաճա-

րին , վա՜յ քաղաքին , վա՜յ ժողովրդեան . և յետոյ աւելցուց , վա՜յ և ինձ ալ » . և նոյն պահուն քարընկէց մեքենաներէն մէկը մեծ քար մը իրեն զարնելով մեռցուց ։

Բայց ասկէ ուրիշ նշաններ ալ երևցան . 65 Թուականին զատկի տօնին , կէս գիշերուան մէջ յանկարծակի Տաճարին պղնձէ դուռը ինքնին բացուեցաւ . և օդը լուսաւորեցաւ , և նոյն օդին մէջ՝ արևմուտից կողմէն պատերազմի կառքեր , և պատերազմող զօրքեր տեսնուեցան ։ Իսկ Պենտէկոստէի գիշերը քահանաները Տաճարին մէջ աղմուկ մը և շփոթութիւն մը լսելէն զկնի , ետևէն զարհուրելի ձայն մըն ալ լսեցին թէ , « Գնամք աստի գնամք » ։

## 47

Բայց այս նշաններէն մէկն ալ Հրէից կարծրացեալ սրտին՝ իրենց չարիքներէն ետ դառնալու կակղութիւն մը չբերին ։ Ասոր չորս կողմէն Թշնամիները բազմացան , և ապստամբները եկան Երուսաղէմի վրայ պատերազմեցան , և անոր մէջ գտնուած հռովմայեցի զօրքերը , որք սակաւաթիւ քրիստոնէից հետ բնակած էին Երուսաղէմ , զանոնք մինչև երրորդ աշտարակը փախուցին ։ Այս երրորդ աշտարակը առաջին Հերովդէսէն շինուած էր շատ ամրութեամբ . և քանի մը օր ետքը հռովմայեցիք շաբաթ օրը պարապ գտնելով՝ ապստամբներուն մեծ ջարդ մը տուին , և հեռացուցին Երուսաղէմէն . բայց ինչ օգուտ որ այս միջոցներս Ա-

սորւոց Կեստիոս Գաղոս կուսակալը 25000 զին-
ուորով խաղաց Հրէաստանի կողմերը, և շատ
քաղաքներ հիմն 'ի վեր տապալելով Երուսա-
ղէմ հասաւ, և քաղաքի առաջ մէկ մղոն հե-
ռաւորութեամբ բանակը զարնելով նստաւ:
Թէպէտ հռովմայեցւոց հետ միաբան գտնուող
հրէաները այս բանակին վրայ յարձակելով մեծ
ջարդ մը տուին, բայց վերջը իրենք յաղթուե-
ցան, և Ասորեստանի զօրքը Երուսաղէմը առ-
նելով՝ Տաճարին ալ տիրեցին հինգ աւուր մէջ,
և շատ կոտորած ըրին: Յետ այսորիկ Հրէայք
և Քրիստոնեայք Երուսաղէմէն խորտակեալ նա-
ւէ մը դուրս ելլելու պէս, այս կողմ այն կողմ
ցիր ու ցան կը փախչէին: Թէպէտ մնացեալ
Հրէաները վերստին քաջալերուելով յարձակե-
ցան Թշնամեաց, վրայ և անոնցմէ քսան հազար
մարդ մեռցունելով փախուցին, բայց անօգուտ.
վասն զի իրենց մէջ մեծ խռովութիւն կար, մա-
նաւանդ օրինաց նախանձաւորներուն կողմը
բռնացեր էր միւսներուն վրայ, և Եղիազարի մը
առաջնորդութեամբ Երուսաղէմ մտնելով Տա-
ճարը գրաւեցին, և շատ վտանգներ գործելէն
զկնի՝ շրջակայ գաւառներէն Եդովմայեցիները
իրենց օգնութեան կանչելով, գիշեր մը քաղա-
քին դռները բացին, և յանկարծակի տան և
երկու հազար երեւելի անձինք սրով կոտորե-
ցին: Այս մեծ կոտորածը տեսնելով, Հրէից
շատերը Կեսարիա Հռովմայեցւոց Վեսպասիա-
նոս զօրավարին դիմեցին, ամբաստանութիւն
մատուցանելով նախանձաւորներուն վրայօք:

Վեսպասիանոս կայսր կ՚ընտրուի իր զօրքերէն. և իր որդին Տիտոս զԵրուսաղէմ պաշարելով կ՚առնու — ու Տաճարը կը կործանէ. (69—70):

# 48

Այս միջոցին Երուսաղէմէն դուրս աւազակապետ մը Սիմոն անուն, քանի հազար զինուորէ բաղկացեալ գունդ մը կազմեց, մանաւանդ իւր կողմն ձգեց քանի և հինգ հազար Իդումեացիները, որոնք պաշարեցին Երուսաղէմ. և այն ժամանակը հարկ համարեցին Սիմոնն ալ իրեններովը ներս առնել, և անհնարին խռովութիւն տիրեց Երուսաղէմի վրայ. և կուսակցութիւնը երեքի բաժնուելով՝ որոնք իրարու արեան ծարաւի էին, խղճալի ժողովուրդը կը տառապեցունէին: Բայց Վեսպասիանոս մեծագունդ զօրքով Իդումեացւոց երկիրները ասպատակելով առաջ կը խաղայր, և դեռ Երուսաղէմը չառած Ներոն կայսրը աթոռէն ինկաւ:

Տասն և ութ ամսուան մէջ երեք կայսերք իրարու ետևէ նստելով՝ Հռոմ սաստիկ խռովութեան մէջ կը ծփար: Այն միջոցին (69) Ասիոյ զօրքը Վեսպասիանոս կայսր հրատարակեցին, զոր ընդունելով գնաց ի Հռոմ, Տիտոս որդին իւր տեղը դնելով: Նա իւր թագաւորութեան երկրորդ տարին, որ եօթանասուն թուականին էր, չորս լէգէոն հռոմայեցի զօրք խրկեց Տիտոսին, որովք եկաւ՝ մանաւանդ Ասիացւոց ձեռնտուութեամբը Երուսաղէմը պաշարեց, որ երեք պարիսպ ունէր: Թէպէտ երեք անգամ հաշ-

տութիւն առաջարկեց, բայց չհաճեցան Երու-սաղէմացիք. յետ այնորիկ սկսաւ Տիտոս սաստիկ քարընկէց մեքենաներով զարնել քաղաքը, որ քառասուն օր տեւեց: Թէպէտ այս միջոցներս երեք կուսակցութեանց գլխաւորները քաղաքին մէջ մէկմէկ ամուր տեղուանք բռնած զիրար կը հալածէին, բայց երբոր հասարակաց թշնամին իրենց վրայ յարձակուած տեսան, այն ժամանակը միաբանեցան զանիկայ մերժելու, բայց չկարողացան դիմադրաւ լինել. վասն զի քառասնօրեայ սաստիկ յարձակումէ մը ետքը թուլացան քաղաքի պաշտպանող զօրքերը և բնակիչները, վասն որոյ Հռովմայեցիք առաջին պարսպէն ներս մտան, և հինգ օրէն ետքը երկրորդ պարիսպն ալ կործանեցին. Թէ եւ Տիտոս իրենց կենաց ազատութեանը համար հաշտութեան պատգամ խրկեց՝ իրենց ազգականը Յովսեպոսին ձեռօք, բայց երբոր անոր ալ մտիկ չըներով զինքը նետով խոցեցին, բարկացաւ Տիտոս ու քաղաքի շրջապատը պարսպաւ պաշարեց, որպէս զի մէկու ել ու մուտ չըլնէ: Յետ այնորիկ մեծ սով մը տիրեց քաղաքին մէջ, այնպէս որ մինչեւ անգամ մեռելոց և սպանելոց դիակունքը սկսան ուտել. կանանց կարգէն մէկը իւր վեցամսեայ մանուկը մորթելով եփեց կերաւ: Այս սաստիկ սովին ատենը ժամանակամէն ալ դադրել՝ տասն և վեց աւուր մէջ պարսպէն ի վար վեց հարիւր հազար մեռելոց դիակներ ձըգեցին. ուստի Տիտոս ի գութ շարժեալ՝ իւր պարսպին դուռը բանալով, շատերը փախան.

և ըստ Յովսեպոսի պատմութեան, հարիւր տասն և վեց հազար մեռելոց դիակներ դըռներէն դուրս հանեցին. ոմանք ալ Հռովմայեցւոց քով՝ փախչելով անձնատուր կ'ըլլային, որոնց վըրայ կասկած ընելով զօրականները, անոնց փորերնին կը ճեղքէին և կլլած ոսկիները փորոտիքներուն մէջէն դուրս կը հանէին։ Այս ամենը կատարուելէն յետոյ, դարձեալ Տիտոս մեհանձնութեամբ լուր տուաւ որ քաղաքը իրեն յանձնեն. բայց Հրեայք քաղաքը չյանձնելէն զատ՝ անոր խաղաղասէր ոգւով ըրած այս առաջարկութիւնն ալ կ'արհամարհէին, և կը կարծէին թէ ակարանալու և յաղթուելու նըշան էին անոնք։ Իսկ Հռովմայեցւոց զօրքը Հըրէից այս մեծ յանդգնութեանը չկրնալով ժուժկալել, ընդդէմ Տիտոսի հրամանին Տաճարին պարիսպը իսկոյն քանդեցին։ Հրեայք այս անակնունելի դէպքը տեսած ժամանակնին թուլցան, և Հռովմայեցւոց զօրականները կրակ ձգելով Տաճարը այրեցին, թէ և Տիտոս շատ աղաչեց որ Տաճարը ազատեն, բայց անհնարին եղաւ. միմիայն քիչ մը եկեղեցական անօթներ ազատեցան։ Այսչափով գոհ չեղան Տիտոսի զօրքերը, այլ և սրով մաշեցին ծերերն ու երիտասարդները՝ առանց խտրելու անոնց աստիճանները, որոնցմէ շատերն ալ անոնց սուրէն ազատելու համար հրոյ մէջ կը նետէին զիրենք, և ոմանք պարսպէն դահավէժ կ'ըլլային։ Բայց յանդուգն խռովիչները, որք ընտանի թշնամիներ էին ազգին, քաղաքին մէջ զիրար կը կոտ-

րէֆին, և չզգաստանալէն ի զատ փութացան ամ֊բառնալ վերին քաղաքը՝ այն է Սիոնի մէջ. և ի֊րենց ազգականներէն ու թ հազար հոգի մեռ֊ցընելով հոն ամրացան : Բայց Երուսաղէմ գե֊րեցաւ Հռովմայեցիներէն, և անթիւ անհամար մարդկանց դիակներով լեցուեցաւ աւերակ դարձած փողոցներն ու թաղերը :

## 49

Տիտոս Քրիստոսի եօթանասուն թուոյն Ե֊րուսաղէմը հիմնայատակ ընելէն յետոյ յարձա֊կեցաւ Սիոնի վրայ, և անհնարին պատերազմու֊նեպատնեմքերի ու թէին՝ աստտնկ կոտորածով մը զայն ալ առաւ. Քաղաքը մնաց ժամանակը, հե֊ացաւ անոր աւուր չինուածոյ և անպարտելի պարսպաց վրայ, մնացանք երեք մեծամեծ աշտարակներուն վրայ. և այս յաղթութենէն ետքը Հրէից երիտասարդները գերի բռնելով՝ անոնց մէկ մասը Եգիպտոս ղրկեց հոն քանի աշխատութեան մատնելով՝ հանդիսական խաղե֊րու մէջ սպաննել տուաւ, և անճնափոքը տղայ֊քը գերի ծախեց. և ըստ Յովսեփոսի՝ մէկ միլիոն մարդէն աւելի սոյն պաշարման ժամանակ մե֊ռան այլ և այլ մահուամբ. իսկ գերիներուն թիւը՝ ինսուն և եօթը հազարի կը հասնէր : Եւ այսպէս պատժեց Աստուած Տիտոսի ձեռօք ապերախտ ազգը, և հարթ հաւասար ըրաւ տա֊ճարը քար քարի վրայ չթողլով՝ ինչպէս գուշա֊կեց Տէրն մեր : Յովսեփոս կը պատմէ թէ այս պատերազմին մէջ Տաճարին այրած ժամանակը

ներսէն աղաղակ կը լսուէր, թէ « Երթանք, անկէ երթանք, և այլ չդառնանք »։

Տիտոս Երուսաղէմը կործանելէն յետոյ գունդ մը զօրք պահապան ձգեց անոր աւերակներուն վրայ, և խորանի եօթնաջահեան աշտանակը և մեծագին անօթները՝ որոնք կրակէն ազատած էին, և Տաճարի վարագոյրը, եւս և Օրինաց գիրքը առաւ հետը Հռովմ տարաւ։



Հրէայք նորէն կը շփոթեն Երուսաղէմի մէջ, որոնք Ադրիանոս կայսեր ձեռօք կրկին կը ցրուին։ Երուսաղէմ ջնջուելով հեթանոսք և քրիստոնեայք կը բնակին։ Սուրբ տեղերը կուռքերով կը պղծէ։ (70—327)։

## 50

Այսպէս Հրէից ազգը ցրուեցան և սկսան տատանողական թափառիկ բաւական ժամանակ։ Յետոյ յիշեցին իրենց սեպհական հայրենի ժառանգութիւնը, և զայն չկորսնցունելու համար, յանձն առին Հռովմայեցւոց հնազանդիլ, և եկան Երուսաղէմի աւերակները ըստ կարեաց նորոգելով հոն բնակեցան։ Իսկ շատերը գետնի տակ խորունկ այրեր փորելով անոնց մէջ կը բնակէին. և այսպէս մինչեւ Տրայիանոսի կայսերութեան ժամանակը քիչ քիչ սկսան շատնալ։ Բայց այս միջոցներս Բարկոքեբաս անուանով Հրէայ մի երեւնալով, զինքը Մեսիա կ'անուանէր, և պարզամիտ ժողովրդոց միտքը գողնալով՝ զանոնք վերստին ապստամբեցուց Հռովմայեց-

ւոց դէմ, որոնք իրենց առջի խստութիւնը Թող֊լով՝ Թոյլ տուած էին որ իրենց Հայրենի օրինօք վարուին, և տուրքի կողմէն համարեա Թէ ա֊զատ էին, և հանգստութեան մէջ բնակած։

Բայց այս ապստամբութիւնը երկար չտե֊ւեց, վասն զի 136 Թուականին Տրայիանոս կայ֊սեր եղբօրորդին Ադրիանոս կայսրը, շատ հե֊ծելազօրօք Երուսաղէմ գալով՝ ապստամբներէն շատերը կոտորեց, և մնացեալները ցիր ու ցան ը֊նելէն յետոյ՝ Տիտոսի աւերած քաղաքը վերըս֊տին շրջապատեց պարսպաւ և շինութիւններ շինեց, և Հրէաները խապառ մերժելով՝ միայն հեթանոսաց և քրիստոնէից Թողուց որ հոն բը֊նակին. և Գողգոթայ լեռը որ քաղաքէն դուրս էր, քաղաքին հետ խառնեց, և Երուսաղէմի ա֊նունը իւր մականուամբ Հեղիոս անուանեց. և Սողոմոնի տաճարի մնացեալ քարերը քանդե֊լէն յետոյ Յովսափաթու ձորը լեցնել տուաւ։

## 51

Ադրիանոսի քրիստոնէից Երուսաղէմայ մէջ բնակեցընելը մարդասիրութեան համար չէր, այլ աւելի Թշնամութեամբ. վասն զի Հրէա֊ները խապառ տարադիր ընելէն յետոյ, ձեռք զարկաւ քրիստոնէից հաւատքն ալ ջնջելու. բայց երբ տեսաւ որ անոնց ուրացութիւնը անհնա֊րին էր, սկսաւ Թամուզայ արձանը Քրիստոսի ծննդեան տեղը, և Աստղկան արձանն ալ՝ Գող֊գոթայի վրայ. և Ափրոդիտէի արձանն ալ՝ կեն֊սատու Գերեզմանին վրան կանգնել տալ, որ֊

պէս զի Յիսուսի փրկագործութեան յիշատակը խափանուի ։

Այս ժամանակներէն քրիստոնեայք հալածանաց և նեղութեան մատնեցան, մինչև բարեպաշտ Կոստանդիանոսի ատենը. Երուսաղէմ իւր քրիստոնեայ բնակիչներովը մնացին անշքութեան մէջ և զուրկ սուրբ Տեղեաց շնորհքներէն՝ զորոնք թագուն կը պաշտէին ։ Բայց ինչպէս ըսինք՝ Կոստանդիանոսի թագաւորութիւնը վերջ տուաւ այս հալածանաց, և սկսաւ քրիստոնէութիւնը բարձր 'ի գլուխ պարծել ։

---

## Սուրբ տեղեաց նորոգութիւնը ։

## 52

Երեք հարիւր քսան և եօթը թուականին, իւր բարեպաշտուհի մայրը Հեղինէ դշխոյն Երուսաղէմ սուրբ Տեղեաց այցելութեան եկաւ, և Յուդայի ձեռքով Յիսուսի կենսատու խաչը Պիղափ խող բռուած տեղէն մեծաւ աշխատութեամբ հանել տուաւ, և մեռեալ պատանւոյն կենագործութեամբը միւս երկու աւազակներուն խաչերէն որոշելով, մեծ փառաւորանօք մէկ մասը իւր բարեպաշտ Կայսր որդւոյն ղրկեց, իսկ միւսը արծաթեայ տապանակի մը մէջ ամփոփելով՝ Երուսաղէմ թողուց 'ի մխիթարութիւն քրիստոնէից ։ Նա այս անգին գանձը գտնելէն յետոյ սկսաւ անհետացեալ սուրբ Տեղերը քննել և խնամել, և Ադրիանոս կայսրէն սուրբ

Տեղեաց վրայ դրած կուռքերը խորտակել տա-
լով, ձեռք զարկաւ հիմնարկութեան երկնան-
ման սրբոյ Յարութեան տաճարին, որ արդէն
սրբուոյն հրամանաւը և Մակար հայրապետի
ձեռօք սկսած էր շինուիլ։ Նոյն և Յիսուսի
Ծննդեան տեղւոյն և Համբարձման լերան վրայ
սքանչելի և փառաւոր եկեղեցիներ շինելէն յե-
տոյ, խաղաղութեամբ և աստուածատուր պար-
գեւներով իւր տեղը դարձաւ, և լի արդեամբք
հանգեաւ ի Քրիստոս։

## 53

Այս միջոցներս քրիստոնէական սիրով կապ-
ուեցան միմեանց հետ Լուսաւորիչն Հայոց
սուրբն Գրիգոր և Սեղբեստրոս սուրբ հայրա-
պետները, և բարեպաշտ Կոստանդիանոս և Տրդ-
ատ թագաւորները, որոնց շահաւէտ արդ-
եամբը պայծառացաւ եկեղեցին քրիստոնէից,
և ընդարձակեցաւ քրիստոնէութեան առաքել-
ը։ Վասն զի այն համամտիւ և միակամ սուրբ
Հայրապետները և թագաւորները իրենց բարձր
հրամանաւը շինեցին և բարեկարգեցին հռչա-
կաւոր եկեղեցիներ Յորուսաղէմ անօրինական
սուրբ Տեղեաց վրայ. և աշխարհիս չորս կողմէն
քրիստոնէական կրօնից ազատութիւնը լսելով
հաւատացեալք՝ սուրբ քաղաքը դիմեցին, և
իւրաքանչիւր ազգ իւր սեպհական բնակու-
թեան համար վանքեր և եկեղեցիներ շինեցին,
և քրիստոնական հաւատքը պաշտպանեցին։ Եւ
այս միջոցիս ըստ Ագաթանգեղոսի, Վիրակոսի

և Տաթեւացւոյն պատմութեանց, Սիոն լերան վրայ եղած սրբոց Յակոբեանց վանքը, ուր որ Աբգարու կինը բարեպաշտ Հեղինէն կամար մը դարձուցած էր սուրբ Յակոբայ պատուական գլխոյն վրայ, եւս և սուրբ Գողգոթան և սուրբ Յովհաննու մատուռը Հայոց ժառանգութիւն ինկաւ ։ Նաև այսպէս եղբայրական սիրով փոխեղեցին սուրբ տեղեաց շնորհքը ամեն քրիստոնեայ ազգ, որոնք ՚ի նշան հաւատոյ իրաւանց զոր ունէին սուրբ Տեղեաց վրայ, երեք ազգ՝ Հայք, Լատինք և Յոյնք մէկ մէկ կանթեղ կախեցին ամենասուրբ Գերեզմանին վրայ յանուն ազգին իւրեանց ։ Յետ այսորիկ սկսան մեր նախարարներն ալ առանձին վանքեր շինել իրենց տոհմին անունովը՝ ըստ Հայաստանի Հնախօսութեան (Երես 72), և ըստ Մովսէսի Կաղանկայտուացւոյ պատմութեան (Երես 100) զանազան վանքեր շինեցին սուրբ քաղաքին մէջն ու բոլորտիքը եղած նշանաւոր տեղերը, որոց վրայօք իրենց տեղը համառօտ պիտի պատմենք ։



Երեւումն խաչին ։ Յուլիանոս կայսեր անիրաւ հրամանը ։ Երկրաշարժերուն Հրէից դադարումը. (37 — 363) ։

## 54

Քրիստոնէութիւնը երկրորդ անգամ նոր պայծառանալու սկսած ժամանակ, Աստուած ուզեց նորագոյն նշաններով ալ երկնէն փառաւորել զայն յաչս Հրէից և հեթանոսաց. ուստի 352

թուականին Կիւրեղ Հայրապետի ժամանակ, յանկարծակի լուսեղէն խաչ մը երեւցաւ երկնքի երեսը, որ Գողգոթայէն ցոլանալով դէպ ի ձիթենեաց լերան վրայ տարածուեցաւ ու մնաց երկար միջոց մը ցորեկ ատեն. որուն զարմանաքանչ երեւումը ամենքը հիացոյց և ապշեցոյց։ Այս հրաշալի տեսիլը քրիստոնէից հաւատոյ խարիսխը ամրացընելէն ի զատ՝ բազմաթիւ անձինք Քրիստոսի հաւատալով՝ Կիւրեղ Հայրապետի ձեռօք մկրտուեցան, որ նոյն մկրտութեան աւազանը մինչեւ ցայսօր սրբոց Յակոբեանց վանքը՝ Ս. Ստեփաննոս անուանեալ եկեղեցւոյ որմոյն մէջը դրուած է արեւմտեան կողմէն, և Կիւրեղ Հայրապետի տօնախմբութեան օրը սուրբ պատարագ կը մատուցուի նոյն աւազանին վրան։

## 55

Երբոր սուրբ տեղերը երկու սրբազան Հայրապետները և երկու բարեպաշտ Թագաւորները սկսեր էին պայծառացընել, չարն սատանայ նոր փորձութիւն մը հանեց եկեղեցւոյ վրայ։ 361 թուականին ուրացողն Յուլիանոս թագաւոր բնաջինջ ընել կ'ուզէր բոլոր քրիստոնեաները. սաստիկ հրամանաւ վերստին կուռքերը կանգնեցընել տուաւ սուրբ Գերեզմանին և արիւնաման Գողգոթայի վրայ. և Յիսուսի անսուտ վճիռը ոչինչ համարելով՝ զոր տուած էր Տաճարին համար, ըսելով՝ թէ քար քարի վրայ չմնայ, զանիկայ սուտ հանելու հա-

մար հրաման ըրաւ Հրէից ազգին, որ Տիտոսին ձեռօք աւերեալ Տաճարը կրկին շինեն։ Բայց վերնախնամ Տեսչութիւնը միշտ չարաչար խորհուրդ մարդկանց գործը կը խափանէ այլ և այլ պատճառներով. ինչպէս որ այս Տաճարին շինութեան ալ արգելք եղաւ. հիմք փորած ժամանակ կրակ ու բոց մը դուրս ցատկելով հոն աշխատող Հրէաները և Տաճարին համար պատրաստուած ամեն նիւթերը այրեց մոխիր դարձուց, որով գործը խափանուեցաւ։ Այս արմանէն միմիայն Տաճարի պարսպի մէկ անկիւնը անփլաս մնաց, որ մինչեւ ցարդ կը տեսնուի և Սելովամ ըսուած աղբիւրի կողմը կ'իյնայ հարաւային կողմէն։

## 56

Յուլիանոս որ Պարսից դէմ պատերազմի կ'երթար այն ժամանակ, չարաչար սատակեցաւ ճանապարհին, և տեղը յաջորդեց Յովբիանոս. (363) որ ըստ Եկեղեցական պատմութեան քրիստոնեայ էր կրօնքով, և խիստ բարեսէր և կրօնասէր. վասն որոյ իւրեն սրբազան պարտքը համարեց սուրբ Տեղերը մաքրել և օրհնել, և բակիզք ըրաւ ամեն կուռքերը խորտակելու, կռատուններն կործանելու, և անոնց տեղ եկեղեցիները պայծառացունելու, մանաւանդ հրաման ըրաւ որ սուրբ Տեղեաց կուռքերը բոլորովին խորտակէն և անհետանան, և այն տեղերը պայծառանան քրիստոնէական հաւատով. և Աստուծոյ պաշտօնը անխափան կատարուի բոլոր իւր իշխանութեան ներքեւ եղած երկիրները։

Պարսիկք կ՚առնուն զԵրուսաղէմ, և սուրբ խաչը գերի կը տանին. Նորա վերադարձը. (363—629)։

# 57

Այս աղետալի դէպքերը կրելէն յետոյ, Երուսաղէմ մինչեւ Փոկասի 614 թուականին խաղաղութեան մէջ էր. յետ այնորիկ յաւնիս ամսոյն մէջ Պարսից Խոսրով Ապրուէզ բռնաւոր թագաւորը՝ որ Շահվարազ, կամ Ոռազման ալ կ՚անուանէր, իւր Եռազմայուզան խուռնէ մը Յունաց Հերակլ կայսեր վրայ պատերազմի ղրկեց, որ Երուսաղէմ ալ գալով և անհնարին կոտորածներ տալով սուրբ քաղաքն առաւ, և յիսուն և եօթն հազար մարդ կոտորելէն զկնի, երեսուն հազար մարդ, և փրկչական սուրբ խաչը, և անոնց հետ Զաքարիա պատրիարքն գերի տարաւ Պարսկաստան. ուր սուրբ խաչը Խոսրով թագաւորին կռոց մեհեանը դրուեցաւ, ՚ի նախատինս Հերակլ կայսեր. (Սեբէոս. Երես 156)։

Զաքարիա պատրիարքի բացակայութեան ժամանակ ըստ Սեբէոսի պատմութեան, Մոդեստոսը փոխանորդ կարգեցին. որ շատ ջանք տարաւ սուրբ տեղեաց նորոգման, և մխիթարական նամակ մ՚ալ գրեց որբազան Կոմիտաս Կաթուղիկոսի Էջմիածնայ, և պատասխանն ընկալաւ լի խնամանական և մխիթարական բանիւք (անդ Երես 131)։

Զաքարիա պատրիարքը և կենսատու խաչը երկար ժամանակ գերութեան մէջ չմնացին. որովհետեւ 629 թուականին Հերակլ կայսեր

ձեռնտու լինելով Խուռեմայ Խոսրով Թագաւորի փեսային, սպաննել տուաւ այն ժամանակի Պարսից Շահրաշիր Թագաւորը․ և անոր տեղը յաջորդեցուց զԽուռեմ, որ ըստ խոստման իւրում՝ սուրբ Խաչը Կոստանդնուպօլիս դարձուց մեծ պատուով, և Հերակլ կայսր հետը առած հանդերձ ժողովրդեամբ և Պատրիարքաւ Երուսաղէմ եկաւ․ և կենդանատու Խաչը իւր տեղը դնելով՝ Վերացման Խաչի տօն կատարելը սահմանել տուաւ, որ մինչեւ ցայսօր կը կատարէ անխափան սուրբ եկեղեցին։

## 58

Անոր վրայ չորս տարիի չափ հազիւ անցեր էր, երբ Երուսաղէմ նոր փոփոխութիւն մը կրեց, և քրիստոնէութեան ազատութիւնը քիչ մը վըտանգեցաւ։ Որովհետեւ Երուսաղէմի սահմանները գտնուող Հրէից շատերը ապստամբած էին Հերակլ կայսրէն, ուստի 633 Թուականին՝ չորս կողմէն մանաւանդ Եդեսիա քաղաքէն դիմեցին հագարացւոց Աբդալլայի որդի Մահմէտին, որ գայ իրենց օգնութեան հասնի, և ազատէ զիրենք Հերակլի իշխանութենէն։ Սա նոր եկաւ բազմաթիւ զօրքով՝ երեք անգամ պատերազմեցաւ Հերակլի եղբայր Թէոդոսի հետ և յաղթեց․ և Յորդանան գետէն անցած ժամանակը Երուսաղէմի բնակիչ քրիստոնեայները երկիւղով պաշարուած, կենդանատու Ս․ Խաչը և եկեղեցական սպասները Կոստանդինուպօլիս տարեցին՝ պահպանութեան համար։

Հագարացիք կ'առնուն զԵրուսաղէմը։ Օմէր խալի-ֆայի մզկիթը։ Ս. Յարութեան Տաճարի և այլ սուրբ տեղեաց աւերակութիւնը. (633 – 972)։

## 59

Թէպէտ Մահմէտ իւր վերահաս մահուանէն չկարողացաւ իւր բաղձանացը հասնիլ Երուսաղէմի տիրելով, բայց իւր երկրորդ յաջորդը, այսինքն Օմէր խալիֆայ ամիրապետը շատ զօրքով 637 Թուականին շատ քաղաքներ առնելով, Յունաց Սոփրոնիոսի պատրիարքութեան ժամանակը Երուսաղէմն ալ առաւ։ Նոյն այս Օմէր խալիֆային համար կը պատմուի՝ Թէ հանդիսաւոր օր մը Սոփրոնիոսի հետ միասեղ սուրբ Յարութեան երկնանման Տաճարը մտած ժամանակ, անոր փառաւորութեանը շատ զմայլութիւն տալէն զկնի, ուզեր է որ իւր ազգն ալ այնպէս փառաւոր Տաճար մը ունենայ. ուստի կ'առաջարկէ Պատրիարքին որ յարմար տեղ մը ցուցընէ իրեն. և նա կը տանի զինքը Սողոմոնեան Տաճարի տեղւոյն վրայ որ աղբիւս դարձած էր՝ կանգնեցունելով կ'ըսէ. Ահա յարմար տեղ այս կրնայ ըլլալ. քանզի Սողոմոնին շինած հրաշալի Տաճարին տեղն է, զոր Տիտոսի ժամանակէն մինչեւ ցարդ աւերակ մնացած է։ Ամիրապետը Պատրիարքէն շնորհակալ ըլլալով՝ անմիջապէս Տաճարին հիմը փորել կուտայ, և իւր ազգին համար վայելուչ մզկիթ մը կը շինէ։ Կը պատմեն նաեւ Թէ Օմէր սուրբ Յարութեան Տաճարին մէջ չէ ուզած բնաւ իւր կրօնքին պա-

հանգչման համեմատ օրական աղօթքն ընել, որպէս զի հետագայ կրօնակիցք իւր աղօթքը պատճառ ընելով՝ հրաշալի Տաճարը քրիստոնէից ձեռքէն չյափշտակեն ։ Նոյն և դաշանց գիր ալ տուաւ Սոֆրոնիոսին, ինչպէս և Հայոց առանձին Պատրիարքին ալ տուած էր, որ չըլլայ թէ այն տեղը էզան կանչեն, այլ միշտ ապահով մընայ քրիստոնէից ձեռքը ։

Սուրբ Յարութեան տաճարին նոյն ժամանակի ունեցած ձեւոյն և շէնքին, նոյնպէս ուրիշ սրբազան տեղեաց և եկեղեցեաց վրայ Սովսէս Կաղանկայտուացին այսպէս տեղեկութիւն կուտայ ։

« Ընձնաչափ կենարարին Քրիստոսի լայնութիւն տապանափորած վիմին գիրկ և կէս հեռի են 'ի միջի գմբէթին որոյ կենարար Գերեզմանէն . և 'ի վերայ եկեղեցւոյն, որ շինեալ է 100 կանգուն բարձրութիւնն և 100 կանգուն լայնութիւնն՝ բոլոր յայս և յայն կողմն երկոտասան սիւնք ներքոյ, և երկոտասան 'ի վերայ վերնատանն . և յայն վերնատանն գեղարդն և բուպունգն և սկուտառակն Քրիստոսի պատեալ ոսկւով ։ Իսկ եկեղեցին կաթուղիկէ, որ մատուռն անուանի, որ է Գիւտ Խաչի՝ 20 կանգուն հեռաւոյն 'ի Յարութենէն, 65 սիւն վեր և 'ի ներքոյ երկայնութեան . Իսկ սուրբ Գողգոթայի եկեղեցին 10 քայլ հեռի է 'ի Յարութենէն, որ Ադամայ գերեզման կոչի . և 'ի վերայ՝ սեղան խորհրդոյ, յորում խաչեցաւ Քրիստոս 'ի վիմին վերայ ։ Իսկ սուրբ Սիոն եկե-

դեցին միով տապարիզաւ բացադոյն է 'ի Յարութենէն , 100 կանգուն 'ի յերկայնն և 70 'ի լայնն , 80 սեամբք կամարակապօք . և չէ վերնատնօք , այլ Թաղք կապեալ է փայտեայ , և պսակ փշոյն կայ 'ի կախ գԹաղքէն , որ եդին Կենարարին 'ի գլուխ : Եւ յաջմէ եկեղեցւոյն վերնատունն խորհրդոյ և փայտեայ գմբէԹ , յարում նկարեալ է զընԹրեացն խորհուրդ Փրկչին , յորում է սեղան խորհրդոյ , և պատարագ մատչի 'ի վերնայարկին Սիոնի , և վերնատուն մի լինի : Եւ սուրբն Սիոնի ընդ աջմէ խորանն Պեղատոսի , որ Կայափաթա անուանի . և վէմն յարոյ 'ի վերայ կայր Փրկիչն առաջի Պիղատոսի , յոր ոտից տեղն երեւի ցարդ եւս . և առաջանն ներքոյ նորին , ուր զաշակերտացն լըւայ զոտսն . և յահեկէ Սիոնի բանտն , ուր զՔրիստոս արգելին . անդ սեղան է , և պատարագ մատչի : Եւ յայնմ տեղւոջ ուր զսուրբ Կուսին դագաղն կալաւ Հրէայն առաքելոց քաղաքին չտալ Թաղել՝ գմբէԹ կապեալ 'ի չորից սեանց ,' և սեանցն պղնձի խաչ զգեցուցեալ , որ են մարմարինք . և անտի ցվայր 250 քարեայ աստիճանք մինչեւ ցսուրբ գերեզման Կուսին որ 'ի ձորն Գեթսեմանի . և անտի մինչեւ 'ի լեառն ձիթենեաց ուստի վերացաւ Քրիստոս՝ 800 աստիճանք : Իսկ 'ի տեղւոջ Համբարձմանն ըստ Յարութեան եկեղեցւոյ ձեւոյ գեղեցկատես գմբէԹաձեւ շինուած 100 կանգուն յերկայնն , և 100 լայնն . անտի երեւի Յորդանան գետ և Ծովն լեառն և բազում գաւառք : Իսկ

Բեթղեհեմ՝ հեռաւորն է 'ի Յարութենէն 220 հրասախ յարեւմտից կողմանէ ։ Չափ մեծութեան եկեղեցւոյն 200 կանգուն յերկայնութիւնն և 100 'ի լայնն, 90 սեամբք մարմարիոնովք, քարեայ կամարակապ. և 'ի նմա է կրկին այրն, զոր Աբրահամ գնեաց 'ի կալուածս շիրմացն ։ Այլ 'ի ներքոյ բեմին սուրբ Այրն և Մըսուրն, ուր ծնեալն է և պատարագ մատչի ։ Այլ յաջմէ եկեղեցւոյն մատուռն, յորում մանկանցն սպանելոցն 'ի Հերովդէէ նշխարք պահին ։ Այլ անտի յարեւմտից կուսէ ըստ Յորդանանու կողմանէ 3 ասպարիզօք հեռի 'ի Բեթղեհեմէ՝ հովանոցն, ուր (գոն) երկու եկեղեցի. 7 հրասախ հեռի է Երուսաղեմէ յարեւելից կուսէ, ուր Փրկիչն մկրտեցաւ. յորում եկեղեցի սաղաշէն խաչանման յարմարեալ՝ 80 կանգուն երկայն, և 80 լայն, երեք սեղան խորհրդոյ, և պատարագ մատչի. և լեառն ձիթենեաց Երուսաղեմի յարեւելից կուսէ լինի »։



Չմշկիկ կայսրը կ'առնու զԵրուսաղէմ Հայ զօրաց օգնականօք ։ Նորա նամակը առ Աշոտ Գթած (972) ։

## 60

Երուսաղէմ՝ 335 տարիի չափ Հագարացւոց ձեռքը մնաց մինչեւ 972 թուականին, յորում Յովհաննէս Չմշկիկ որ ազգաւ Հայ էր, Յունաց Նիկեփոր կայսեր տեղ յաջորդելով 'ի Կոստանդինուպօլիս, և Աշոտ Թագաւորէն շատ զօրք

առնելով՝ խաղաց Ասորեստանի կողմերը. և շատ քաղաքներ առնելէն ետքը՝ եկաւ սուրբ Երուսաղէմն ալ առաւ այլազգեաց ձեռքէն, և շատ քաջութիւններէն և յաղթութիւններէն զկնի, Հայոց զօրքերը մեծամեծ պարգևներով և շնորհալի նամականի մը ետ խրկեց, և այս է նոյն նամակին համառօտութիւնը, զոր Սմբատ Վահրամի պատմութեանը մէջէն առնելով հոս կը նշանակեմք։

“Աշոտոյ արքայի Հայոց մեծաց՝ հոգևոր որդւոյ իմոյ ՚ի Տէր խնդալ։

“Ծանիցէ իմաստութիւն քո, թէ որչափ եղեւ ողորմութիւն Աստուծոյ ՚ի վերայ մեր, և ետ մեզ յաղթութիւն ՚ի վերայ թշնամեաց մերոց. զօրութեամբ և ողորմութեամբն Աստուծոյ մաշեցաք զզօրս Տաճկաց ՚ի սուր սուսերի, և զմնացեալս հարկատու կացուցաք . . . . . . . . : Եւ յետ բազում յաղթութեան եկին առ մեզ յՄամլայէ և յԵրուսաղեմէ շատ աղաչեցին տալ մեզ հարկս, և առնուլ ՚ի մէնջ զօրաւորս. և Թափեցաք զսուրբ Գերեզմանն ՚ի ծառայութենէ Տաճկաց, և շահեցաք ՚ի Գաբաւոն զհողաթափն Քրիստոսի, և ՚ի Ներիսոն զպատկերն Քրիստոսի, զոր յետ ժամանակաց Հրէայք խաչեցին։ Եւս և զհերս Յովհաննու Մկրտչի, և առնեմք աստուածապահ քաղաքին մերոյ Կոստանդինուպօլսոյ ՚ի պահպանութիւն և ՚ի պաշտպանութիւն։ Եւ զայսոսիկ լուեալ Աշոտոյ արքայի Հայոց, առաքեաց զբազում՝

եպիսկոպոս, և զՊանտալէոն 'ի Պօլիս, և կատարեցին զմեծ հանդէսս՝ վասն սուրբ Պատկերի և հոգաթափի Փրկչին, և հերացն Յովհաննու, և այլն »:



Երուսաղէմ Փաթիմեանց. յետոյ Սելճուկեանց և Օրտոգեանց ձեռքը կ'անցնի: Այն ժամանակի եկեղեցւոյ վիճակը: Խաչակիրք կ'առնեն Երուսաղէմը. (1011—1187):

## 61

Բայց Երուսաղէմ երկար ատեն չմնաց քրիստոնէից ձեռքը. վասն զի 1011 թուականին Եգիպտոսի Փաթիմեանց հարստութենէն Հաքիմ խալիֆէ Մանսուր՝ Երուսաղէմն առնելով, Ս. Յարութեան Տաճարը կործանել տուաւ՝ Յունաց ստութեանը չկրնալով հանդուրժել, որոնք կ'ըսէին թէ՝ Զատկի ճրագալոյցի երեկոյին հրաշալի հուր կ'ելլէ սուրբ Գերեզմանէն:

Երեսուն և եօթն տարիի չափ աւեր մնաց սուրբ Գերեզմանը. մինչև Հաքիմի որդին Դահիր յաջորդելով, խաղաղութիւն ըրաւ քրիստոնէից հետ, որոնց խնդրանօքը հրաման ալ շնորհեց որ սուրբ Գերեզմանի Տաճարը նորոգուի: Այս շինութեան ծախուց Դահիրի մայրը Մարիամ անուն՝ որ քրիստոնեայ էր, նմանապէս և Յունաց Կոստանդին Մոնոմախոս կայսրը հանգանակեցին: Իսկ Երուսաղէմ Դահիրի մեռնելէն ետքը դարձեալ տառապանաց մէջ ինկաւ, Պաղեստինի երկրին իշխանութիւնը Սելջուկ-

եան և Սրդոգեան և ուրիշ ցեղեր իրարու ձեռքէ յափշտակելով՝ քրիստոնէից խաղաղութիւնը կը վրդովէր և եկեղեցին կ'անշքանայր ։ Մինչեւ որ անոնց բողոքները և վիշտերը Եւրոպայւոց ականջին հասնելով՝ երեւելի իշխաններ, դուքսեր ու պարոններ առջ ելնելով և շատ ժողովուրդ հետերնին առած, որոնք Խաչակիր կոչուեցան ուսերնուն վրայ խաչի նշան կրելնուն համար, ու դիմեցին զէնքով և մեծամեծ պատրաստութեամբ դէպ 'ի արեւելք 1099 թըւականին, և շատ երեւելի քաղաքներ և աւաններ առնելով Երուսաղէմ եկան, և քառասուն օր պաշարելով զայն, առին Տաճկաց ձեռքէն ։ Այն միջոցին Երուսաղէմայ մէջ գտնուեցաւ մեծն Գրիգոր վկայասէրը՝ որ առըր Տեղեայ ուխտի եկած էր ։ Իսկ խաչակիրք Երուսաղէմ քաղաքը առնելէն յետոյ Կոթֆրիտոսը թագաւոր կացուցին անոր վրան, և անոր յաջորդեցին իրարու ետեւ երկու Պաղտին թագաւորները, Ֆուլքօնը, երրորդ Պաղտինը, Ամերիկը, չորրորդ Պաղտինը, Գուիտոն Լուսինեանը. որոնց գերեզմանները առ Ս. Յարութեան երկնանման Տաճարը մտած ժամանակ Քրիստոսի Ս. պատանատեղւոյն դիմացը կ'իյնան, ուր հիմայ Յունաց Տաճարի պատին տակն է ։

Կոթֆրիտոս թագաւորէն համար կը պատմուի՝ թէ բարեսիրտ ըլլալով շատ բարեկարգութիւններ ըրաւ, և յետոյ կանոնիկոսարան մը և անոր մերձ փառաւոր պալատ մը շինեց, որուն մէջ խաչակիր զօրքերը բնակեցոյց ։ Այս

միջոցներս (1169) Հեթմոյ մայրը և Ներսէսի Լամբրոնացւոյ Շահանդուխտ մայրը բազում մեծամեծ պարգևներով ուխտի եկան սրբազան տնօրինական Տեղեաց։



### Սալահատտին կ՚առնու զԵրուսաղէմ։ Սուրբ Յակոբայ վանքը կրկին Հայոց կը դարձնէ. (1187–1266)։

### 62

Ութսուն և ութ տարիի չափ Խաչակրաց ձեռքը մնաց Երուսաղէմ. յետոյ Եուսուֆ Սալահատտին, որ Եգիպտոսի Սուլթանն էր, զօրանալով՝ և շատ քաջութիւններէն ու յաղթութիւններէն ետքը Երուսաղէմ եկաւ և Լատինաց Գուիտոն վերջին թագաւորը և մեծամեծ իշխանները բռնելով՝ շատ նեղութիւններ տուաւ. վերջապէս տուգանքներ և գանձեր առնելէն ետքը արձակեց, և ինքը տիրեց Երուսաղէմին և անոր սահմաններուն (1187)։ Նոյն այն Սալահատտինն է որ, ըստ Սարգիսի պատմութեան սուրբ Յարութեան զանգակատունը քանդելէն յետոյ, ամենափառաւոր Տաճարն ալ ձեռք զարկաւ քանդելու. բայց ուրիշ աւերութիւններ միջնորդ լինելով, Կոստանդինուպոլսոյ Պալաթիայի Արաղ Ճամբոսին Յունաց թագաւորին նորոգել տալէն, որպէս զի նոյն ամենափառաւոր սուրբ Յարութեան Տաճարը չքանդէ։

## 63

Եւ ըստ պատմութեան Հաննա վարդապետի, Սալահատտին Սուլթանը նախանձեցաւ նաեւ Հայոց սեպհական վիճակին վրայ, այն է սուրբ Յակոբայ վանուց և եկեղեցւոյ, որ Տրդատայ և Կոստանդիանոսի ժամանակէն սկսեալ իրենց ձեռքն էր հաստատուն կերպով. և մինչեւ ան-դամ Խաչակրաց իշխանութիւնը չէր ուզած յա-փշտակել: Բայց Սալահատտին անոր բարձրու-թեան և չնաշխարհիկ գեղեցկաշէն փառաւո-րութեան ցանկալով կը բաղձար իւրացուցա-նել. ուստի կ'ըսէ Հաննա պատմիչը. «Երբոր Եգիպտոսի Սուլթան Սալահատտին եկաւ Լա-տինաց ձեռքէն այս սուրբ քաղաքս առաւ, մեր սուրբ Յակոբայ վանուց գեղեցկութեանը և բարձրութեանը զմայլելով՝ կ'ուզէր իւրացու-ցանել զայն, որ այն ժամանակը Հայոց ազգին լուսաւոր աչքը պիտի խաւարէր: Երբոր կը մը-տաբերէր այս գործը կատարելու, մեր օրհնեալ ազգը արք և կանայք ծերք և տղայք, արտաս-ուալից աչօք և կսկծալի աղէտիւ, միամիքեալ սրտիւ անոր նախարարներուն ոտքը իյնալով, մանաւանդ բարձրեալն Աստուած միջնորդ կը բռնէին, որ չզրկէ Հայոց ազգը իւր բնիկ հայ-րենի ժառանգութենէն: Երբոր լսեց Սուլթա-նը մեր ազգին անմխիթար ողբերը և արտաս-ուաց հառաչանքները, մանաւանդ բարձր ձայ-նով բարձրելոյն Աստուծոյ մեծ անունը անոր լսելեացը կրկնուելով ՚ի գութ շարժեցաւ, բայց

ոչ բոլորովին շնորհեց ։ Այո՛, ըսաւ, պիտի տամ
ձեզի ձեր Սարեաղուայն, այսինքն սուրբ Յա֊
կոբը, բայց ոչ այժմ ։ Ահաւասիկ կը հրամայեմ
որ անոր լուսամուտը՝ նոյնպէս դուռները կըն֊
քուին. և ներքը նշան մը կը դնեմ մինչեւ որ
Դամասկոսէն դառնամ. եթէ եկած ժամանակս
անոր մէջ դրած նշանս գտայ ինչպէս որ դրի,
այն ժամանակ ձեզ կը շնորհեմ» ։ Ինչպէս որ
ըսաւ, այնպէս ալ կատարեց ։ Վասն զի աւագ֊
խորանի կանթեղը վառ թող տալով առանց մէ֊
կու մը գիտութեան, գնաց Դամասկոս ։ Իսկ
մեր եկեղեցականները անձկարանալով՝ եկեղեց֊
ւոյ գաւիթը պատէն քանի մը քար հանելով
մերձ եկեղեցւոյ դրան, պատուհանաձեւ փոքր
խորան մը շինեցին յանուն սրբոյն Գէորգայ ե֊
րագահաս վկային. և անոր առաջը կը կատարէ֊
ին ժամերգութեան պաշտօնը, և նոյն փոքրիկ
պատուհանին մէջ պատարագ կը մատուցանէին,
և զԱստուած կ'աղաչէին որ այցելութիւն ընէ
իրենց կրած թշուառութեանցը ։ Եւ այս տա֊
ժանելի նեղութեան և երկբայութեան մէջ եօ֊
թը տարի մնացին, մինչեւ որ վերյիշեալ Սուլ֊
թանն եկաւ. որուն գիմաւորելու գնացած ժա֊
մանակ յիշեցուցին իրեն ։ Այն ժամանակը թա֊
գաւորն խուռն բազմութեամբ գալով եկեղեց֊
ւոյն դուռը բացաւ և դիմեց դէպ 'ի աւագ֊
սեղանը, և Աստուծոյ շնորհօք և սրբոց Յա֊
կոբեանց զօրութեամբ և միջնորդութեամբ,
իւր գաղտնի նշանակած կանթեղը տակաւին
վառ տեսնելով՝ որուն շրջապատը սարդի ոս֊

տայններ հիւսուած էին, յայտնապէս ըսաց, թէ այս եկեղեցւոյս Հայոց ձեռքը մնալը առանց Աստուծոյ կամացը չէ։ Ուստի ես ալ բոլորովին կը հաւանիմ և կը հաստատեմ՝ որ այս վանքս Հայոցն է, և անոնց ձեռքը պիտի մնայ։ Նա և վանքի դրանը վրայ իրենց օրինաց համեմատ արաբերէն լեզուաւ անէծք գրեց, որպէս զի մէկը այս վանքս Հայոց ձեռքէն չհամարձակի առնելու. և նոյն գիրը մինչեւ ցայսօր անեղծանելի կը մնայ։



Լեւոն Հեթումեան և Հեթում Բ. Երուսաղէմ կու գան. իրենց ընծաները. (1266—1301)։

## 64

Հազար երկու հարիւր վաթսունևվեց թուականին, Հայոց առաջին Հեթում թագաւորի արքայորդի Լեւոնը, որ գերի գնացած էր Եգիպտոս, հրաման առնելով Եգիպտոսէն կապանօք Երուսաղէմ եկաւ սուրբ Տեղեաց ուխտ և երկրպագութիւն ընելու, և դարձաւ իւր տեղը։ Եւ 1269 թուականին գերութենէն ազատելով Կիլիկիա գնաց իւր վախճանեալ հօրը տեղը թագաւորեց, և շատ բարեկարգութիւններէն զկնի, սուրբ Յակոբայ վանուց կից սուրբ Հրեշտակապետի վանքին պարիսպը շինել տուաւ, և իւր Թորոս որդին որ Երուսաղէմ մեռած էր, 'ի յիշատակ անոր՝ սուրբ Յակոբայ վանքին մէջ սուրբ Թորոս անունով տաճարին

մատուռ մը շինել տուաւ, և հոն հիւսիսակող-
մը պատին մէջ ամփոփուած է Թորոսի մարմինը ։ Այն եկեղեցւոյ մէջ երեք անգամ՝ հանդիսաւոր տօնախմբութեամբ պատարագ կը մատուցուի ։ Նախ՝ մեծ պահոց մէջ առաջին շաբաթ օրը՝ Թէոդորոսի զինաւորին տօնախմբութեան պատճառաւ ։ Երկրորդ՝ Թադէոսի առաքելոյն և Սանդխտոյ կուսի տօնին ։ Երրորդ՝ Մերկերիոսի զինաւորի տօնին ։ Եկեղեցիին աւագ խորանը կառուցեալ է յանուն սրբոյն Թէոդորոսի, և ձախակողմը առանձին մատրանաձեւ սեղանը յանուն Մերկերիոսի, և աջակողմն ունի պահարան մի և խորան յանուն սրբոյն Կարապետի, և խորան մը ևս արտաքոյ մեծ դրան հարաւային կողմը՝ յանուն Թադէոսի առաքելոյն և Սանդխտոյ կուսին ։

## 65

Իսկ սուրբ Հրեշտակապետի վանքը՝ որուպարիսպը միայն շինել տուաւ Լեւոն Թագաւորը, խիստ հին ժամանակէ 'ի վեր շինուած էր, զոր ոմանք Հեղինէ դշխոյին, այսինքն Աբգարու Թագաւորի տիկնոջ կ'ընծայեն ։ Ու ինչպէս որ Հաննա վարդապետ կը պատմէ և ուրիշ օտարազգի պատմիչք ալ կը վկայեն, այս վանքս Աննայ քահանայապետի տունն էր, ուր որ կենարարն մեր Յիսուս մատնութեան գիշերը քաղաքին աղբիւսաց դռնէն բերելով, դատաւորի դիմացն հանեցին՝ մահուան և անիրաւ վճիռը կտրեցին ։ Այս վանուցս մէջ ծիթենի

ծառ մը կայ, որուն կապեցին զՅիսուս, և 'ի յիշատակ այս սոսկալի և ահեղ չարչարանաց մեծ Թագուհին եկեղեցի շինել տուաւ, գեղեցիկ ձևով ու քարաշէն, մէջ տեղը բարձր և երկու կողմերը ցած, և երեք խորանաւ 'նուիրեալ յանուն սրբոց Հրեշտակապետացն Գաբրիէլի և Միքայէլի։ Ու հիւսիսային արևմտեան անկիւնը պզտիկ մատուռ մը կազմուած է, որ է Քրիստոսի առաջին բանտը, և կից է սուրբ ծառոյն. իսկ եկեղեցին չորս քառանկիւնի սիւներու վըրայ կառուցեալ է։ Հարաւային կողմը աւանդատուն մը կայ, զոր Հայոց՝ ՌՃՀԴ Թուականին Գրիգոր շղթայակիր սուրբ հայրապետն մեծացոյց, և Հռիփսիմէ սուրբ Կուսին անուանը գեղեցիկ սեղան մը շինեց, որ և սուրբ կուսին գագաթէն մաս մ'ալ նոյն սեղանին տակը ամփոփեց։ Ու այս սուրբ հայրապետը սուրբ Հրեշտակապետի վանքն ալ ապխտակացուցանելով՝ համարեա թէ նոյն վանքը վերստին նորոգեց, և շատ պատկերներ նկարել տուաւ, որով եկեղեցին առաւել պայծառացաւ 'ի պարծանս ազգիս Հայոց։ Յիշեալ վանուցս մէջ կը բնակին մինչեւ ցարդ յաշխարհէ հրաժարուած պառաւունք, կամ կոյս մայրապետները, որոնք իրենց հոգեպահիկ կերակուրը սուրբ Յակոբէն կ'ընդունին։ Ու քաղաքի Հայ ժողովուրդները բաց 'ի հանդիսաւոր օրերէն, այս եկեղեցիս կուգան աղօթքի և ժամերգութեան. և երկու դուռ ունի, մէկը կը բացուի Ս. Յակոբայ վանքին մէջ Ճ'ե մայրանոցի կողմէն, իսկ միւսը Հայոց Թաղին մէջ։

# 66

Հայոց երկրորդ Հեթում թագաւորը Եգիպտոսի սուլթանը յաղթելէն զկնի, մեծ փառօք և հանդիսով սուրբ Երուսաղէմ ուխտի եկաւ, ուր տասն և վեց օր մնաց և դարձաւ ՚ի Կիլիկիա։ Հին յիշատակարանաց մէջ գրուած կը գտնենք այսպէս. «Երկրորդ Հեթում արքայն Հայոց, յերկրորդ թագաւորութեան իւրում, ողորմութեամբն Աստուծոյ զկնի յաղթութեան սուլթանին Եգիպտացւոց, եկն ՚ի սուրբ Քաղաքս յուխտ և երկրպագութիւն տնօրինական սուրբ Տեղեաց, և յետ ՚ի սակաւաւուր բազում շինութեան, կառոյց հրաշաւոր սեղան մի ՚ի սուրբ Աստուածածնայ սրբոյ Գերեզմանի յորմն յարեւմտակողմ ՚ի յիշատակ ազգիս Հայոց, և ՚ի հաստատութեան իւրոյ մեծազօր թագաւորութեան։ Յամի Տեառն, 1301, յուլիս 13»։

Նաեւ կը պատմուի՝ թէ այս բարեպաշտ թագաւորը շատ վանորայք շինել տուած է, և իւր բարեպաշտ իշխաններն ալ Երուսաղէմ Հայոց ազգիս շատ բարի յիշատակներ ձգած են. Նշանաւոր է Ս. Յարութեան երկնանման Տաճարին մէջ սուրբ Գերեզմանին արեւմտեան կողմը և կից անոր՝ հրեշտակի վէմին վրայ սեղան մը շինելը, որուն վրայ այժմ փոքր մատուռ մը կայ և Ղպտիները կը պատարագեն։

Օսմանցիք կը տիրեն Երուսաղէմի · պարսից նորոգու-թիւնը · անոր դաւերն ու ելքերը · (1369—1613) :

# 68

Այս դէպքէս իբր հինգ կամ վեց տարի ետքը (1375) Կիլիկիոյ վերջին Թագաւորը Լեւոն Լուսինեան, որ իւր Մարիամ Թագուհիին և Փեննա օրիորդ աղջկանը հետ գերի վարեցան Եգիպտոսի բռնակալէն ՚ի Գահիրէ քաղաքը, եօթը տարիէն ետքը ողորմութեամբն Աստուծոյ գերութենէն ազատելով, սուրբ Երուսաղէմ տնօրինական սուրբ Տեղեաց ուխտի եկան ՚ի շնորհակալութիւն իւրեանց ազատութեանը: Բայց Մարիամ Թագուհին և իւր աղջիկը Փեննա մինչև ցմահ Երուսաղէմ մնացին. իսկ արքայն Լեւոն օգնականութիւն գտանելու համար՝ Հռովմ, Սպանիա, Անգղիա, ու Գաղղիա պտըտած ժամանակ վաթսնամեայ հասակին մէջ ՚ի Փարիզ հիւանդանալով վախճանեցաւ, գերութենէ ազատուելէն 11 տարի ետքը: Իսկ Մարիամ և Փեննա դուստրը 1408 Թըւականին խաղաղութեամբ հանգեան ՚ի Քրիստոս, և Թաղեցան ՚ի գաւթի վանուցն սրբոց Յակովբեանց, ՚ի ներքոյ սեան՝ հանդէպ սուրբ Գէորգայ խորանին:

Այս միջոցներս Երուսաղէմ Եգիպտացւոց իշխանութեան տակն էր, որոնք Եուսուֆ Սալահատտինէն սկսեալ մինչև 1516 Թուականին տիրեցին Երուսաղէմի: Յետ այնորիկ Օսմանցւոց Սուլթան Սէլիմը զօրանալով յաղթեց Ե-

գիպտացւոց տէրութեան, և անոնց ձեռքէն առնելով Երուսաղէմը (1517) շատ բարեկարգութիւններ ըրաւ ։ Իւր մահուանէն ետքը Սիւլէյման իւր որդին յաջորդեց Թագաւորական իշխանութեան, որ Երուսաղէմի պարիսպները շինեց (1538), ինչպէս որ մինչեւ ցայսօր դեռ կեցած են. որուն շրջապատը հինգ մղոն է, և երկու փոքր ու չորս մեծ դռներ ունի ։

Առաջին դուռն է արեւելից կողմը, որուն Բենիամինի դուռ ալ կ'ըսուի, և Արաբացիք Պապըլ-ասպաթ կը կոչեն. այսինքն՝ Դուռ ցեղից. իսկ մեք Աստուածածնայ դուռ կ'ըսեմք երկու պատճառի համար. նախ՝ որ այս դռնէն դուրս ելլելով սուրբ Աստուածածնայ գերեզմանը կ'երթամք, երկրորդ՝ Աստուածածնայ ծնողաց Յովակիմայ և Աննայի տունը համարեա թէ պարըսպին կից է ։ Այս դռնէն ելլելով քարընկէց մի դէպ 'ի հարաւակողմը՝ Ողորմութեան դուռ ըսուած է ։

Երկրորդ դուռն է հիւսիսային կողմը, որ Դամասկոսի դուռ կը կոչուի, և այլազգիները Պապըլ-ամուտ, այսինքն՝ Դուռ սեան կ'անուանեն, վասն զի այն սիւնը՝ որուն վրայ Յիսուսի մահուան վճիռը կարեցին, մերձ է այս դրան ներսի կողմէն, և քաղաքի աւագ դուռն ալ այս է ։

Երրորդ դուռը արեւմտեան կողմն է, որ Հայր Աբրահամու դուռ կը կոչուի. ինչպէս և այլազգիք Պապըլ Խալիլ կ'անուանեն, որ կը նշանակէ Դուռ բարեկամին Աստուծոյ. և այս դուռս բերդին մօտ է, ու տէրունական ուխ-

տաւորները այս դռնէն ներս կը մտնեն Յոպ-պէէն գալով, վասն որոյ և առ հասարակ Յոպ-պէի դուռ կ'անուանի ։

Չորրորդ դուռը հարաւային կողմն է, ո-րուն այլազգիները Պապըլ Տաւուտ կ'ըսեն Սի-օնի մօտ ըլլալուն համար. իսկ մեք Փրկչայ դուռ կը կոչեմք, վասն զի Փրկչայ վանքը մօտ է այս դրան ։ Իսկ երկու փոքր դռներուն մէկը դարձ-եալ հարաւային կողմն է, վերոյիշեալ դռնէն դէպ 'ի արեւելք դիմելով, որուն Դուռ աղ-բիւսաց կ'ըսուի. երբ անօրէն Հրէայք կենա-րարն մեր Քրիստոս բռնեցին, անարգութեան համար այս դռնէն ներս մտցուցին, և Աննա քահանայապետին տունը բերին ։ Իսկ միւս դուռը Դամասկոսի դրան հիւսիսակողմն է, որուն Լատինները Հերովդէսի դուռ կը կոչեն, և հիմայ քարով հիւսուած է ։

Երուսաղէմ միմիայն բերդ մը ունի Սիօն լերան վրայ արեւմտեան կողմէն ամրաշէն և որբաստաշ մեծամեծ քարամբք շինուած, որուն մէջ երկու մեծամեծ բուրգեր կան և ամրա-շէն սենեակներ, նաեւ այլազգեաց աղօթա-նոց մը ։ Կ'ըսուի թէ՝ Դաւիթ մարգարէի պա-լատն էր այս բերդս. ուստի արեւելեան կողմի մեծ բուրգին մէջ պատուհան մը կայ, ուր որ 'ի պատիւ մարգարէին մշտավառ կանթեղ կը վառեն Մահմէտականք, որպէս թէ այն պատու-հանին մէջ նստած՝ տասնաղի քնարը կը զարնէր հանդերձ սաղմոսերգութեամբ ։ Այս բերդիս շրջապատը խրամներ ունի կրկին պարսպաւ ։

## Գրիգոր Պարոնտէր . Եղիազար Կաթողիկոս, և իւր յաջորդը . (1613—1666) :

### 69

Հագարացիք Երուսաղէմի սրբատեղեացն տէրն էին, երբ՝ 1613 Թուականին Գրիգոր Պարոնտէր կոչեցեալ, Պատրիարք նստաւ սրբոց Յակոբեանց Աթոռը : Ասիկայ շինեց սուրբ Ծննդեան վանքը, որ մեծագոյն մասամբ քայքայուած էր . անկէ ի զատ նորոգեց նաեւ սուրբ Փրկիչը, սուրբ Յովհաննէսի մատուռը . սուրբ Յարութեան վերնատունը մեծացուց, և սուրբ Յակոբայ վանուց մէջ շատ թաղեր և շինութիւններ աւելցուց : Այս հայրապետին ժամանակ մեծ շփոթութիւն եղաւ Յունաց և Հայոց մէջ ծռազատկի պատճառաւ, և շատ դրամներ վատնեցան, վասն որոյ սուրբ Յակոբայ վանքը պարտքի տակ մնաց :

### 70

Գրիգոր Պարոնտէրին յաջորդեց Աստուածատուր Գ. որու ժամանակ (1651 Թուականին), սուրբ Էջմիածնայ Փիլիպպոս Կաթողիկոսը Ս. Երուսաղէմ ուխտի գալով, սուրբ Յակոբայ եկեղեցւոյ յատակը գոյնզգոյն քարերով զարդարել տուաւ, և աւագ սեղանը բարձրացուց : 1663 Թուականին Կիլիկիոյ Խաչատուր Կաթողիկոսը դարձեալ Աստուածատուր Պատրիարքի ժամանակը սուրբ Երուսաղէմ ուխտի եկաւ . և այս միջոցներս Անթապցի Եղիազար եպիսկոպոսի ձեռօք սուրբ Յակոբայ վանուց Էջմիածնի

եկեղեցին չինուեցաւ. Նոյնպէս աբեղայից Թաղը և պէճէար ըսուած Թաղը, և Սամաթիոյ սուրբ Գէորգայ վանքը նորոգուեցաւ։

## 71

Աստուածատուր Պատրիարքի օրով Եղիազար եպիսկոպոս հոգաբարձու և փոխանորդ ընտրուելով սուրբ Յակոբայ Աթոռոյն՝ եկաւ Երուսաղէմ, և պարտքերուն Թեթևութեանը շատ օգնեց. սակայն իր փառասիրութեամբը ուզեց Աստուածատրոյ կենդանութեան սուրբ Աթոռոյն տիրել և բոլոր Օսմանեան հողը գրաւուած Հայոց վրայ Կաթողիկոս հաստատուիլ։ Այս խորհուրդը ի գործ դնելու համար Իբերիա գնաց, և Կիլիկիոյ Խաչատուր Կաթողիկոսէն, որոյ հետ կանխաւ խորհրդակցեր էր, Կաթողիկոս ձեռնադրուեցաւ և եկաւ Երուսաղէմ. բայց Աստուածատուր Պատրիարքը զինքը մերժելով՝ այլ և այլ քաղաքներ տարագիր սկսաւ շրջել։ Այս միջոցներս Յոյնք կաշառօք կը յափշտակեն Հապէշից ձեռքէն Հայր Աբրահամու վանքը, և Հայոց ձեռքէն սուրբ Յակոբայ վանքը և խղճալի միաբանները ծոծրակէն բռնած տեղը կը դնեն բնակելու, և մեծ դըռնէն ել և մուտ ընել չեն Թողուր անոնց։ Բայց արդարադատն Աստուած յիշեալ Եղիազար վարդապետին ձեռօք 1659 Թուականին կրկին Հայոց դարձուց Խաչվերացի միջոցները։ Տես ասոր լիակատար պատմութիւնը Հ. Չամչեանի Գ. հատոր, երես 687։

72

Եղիազարի Կաթողիկոս օծուելուն խնդիրը մեծ յուզմունք հանեց ազգին մէջ, և երկպառակութիւններ ծնաւ. որուն հետ սկսաւ հակառակիլ նաև սուրբ Էջմիածնի Յակոբ Կաթուղիկոսը, որ մինչև անգամ այս գործքիս համար Պոլիս և Երուսաղէմ եկաւ։ Եղիազար Կաթուղիկոս արքունի հրամանաւ և հրովարտակաւ Պատրիարք կարգուեցաւ սուրբ Երուսաղէմի, և 1666 թուականին՝ Յիսուսի ծննդեան տօնին մեծ հանդիսիւ սրբալոյս Մ՚իւռոնի օրհնութեան խորհուրդը կատարեց, և Կոստանդինուպօլիս և ուրիշ զանազան քաղաքներ օրհնութեան նամակներ ղրկեց, որուն օրինակը այս տեղս կը դնեմք ՚ի ծանօթութիւն արգոյ ընթերցողաց։

“Եռապատիւ և աստուածամեծար, հրաշապարոյր և սքանչելապայծառ, գերահռչակ և վեհափառ, աստուածակոխ և լուսապատար սուրբ քաղաքն Երուսաղէմ, և ամենայն սուրբ և աստուածահրաշ տնօրինականքն Քրիստոսի Աստուծոյ մերոյ։ Նախ՝ սուրբ Նազարէթն, ուր Գաբրիէլ հրեշտակապետն զաւետիսն ետ սրբոյ կուսին Մարիամու, ուր և յղացաւ զբանն Աստուած։ Գերապատիւ սուրբ Այրն՝ որ ՚ի քաղաքն Բեթղեհեմ, ուր ծնաւ Էմմանուէլն Փրկիչ։ Աստուածընկալ սուրբ Մսուրն, ուր ընծայեցաւ Յիսուս։ Մեղսաքաւիչ սուրբ Յորդանան, ուր մկրտեցաւ Փրկիչն մեր Յիսուս։ Բարձրաբերձ

սուրբ լեառն Թաբօր, ուր պայծառակերպե-
ցաւ Տէրն մեր Քրիստոս: Նախապատուեալ
խորհրդական վերնատունն՝ որ 'ի սուրբ լեառն
Սիօն, ուր լուաց զոտս աշակերտացն Քրիստոս.
և Հոգին սուրբ Աստուած էջ անդ, և լցոյց
զանազան շնորհօք սուրբ զառաքեալսն: Սար-
սափելի սուրբ Գողգոթան, ուր զենաւ անմահ
գառն Աստուծոյ: Կենսատու սուրբ Գերեզ-
մանն, ուր եդաւ աստուածացեալ մարմինն:
Փառաւոր տաճար սուրբ Յարութեանն, որ
պատուելին է ամենայն ազգաց քրիստոնէից:
Ադենաքատակ սուրբ լեառն Ձիթենեաց, ուս-
տի համբարձաւ Տէրն մեր Քրիստոս: Ամենօրհ-
նեալ սուրբ Գերեզմանն, ուր եդաւ մաքուր
մարմին սուրբ կուսին Մարիամու Աստուածած-
նին: Կափարիչ վէմն դրան սրբոյ Գերեզմանի
Տեառն մերոյ, որ կայ 'ի սուրբ Փրկչայ վանսն:
Սրովբէապար եկեղեցի սրբոց Հրեշտակապե-
տացն, ուր բանդարգելաւ Տէրն մեր Քրիստոս:
Առաքելաշնորհ տաճար սուրբ Յակոբ, որ է
Աթոռ Եղբօր Տեառն Յակոբայ: Եւ աստուա-
ծարեալ դամբարան արեամբ մածեալ Գլխադրի
սրբոյն Յակոբայ մեծի առաքելոյն որդւոյն Զե-
բեդեայ, որ կայ 'ի սմա: Եւ այլ միեղէն օրհ-
նեալ անօրինականացն Քրիստոսի Աստուծոյ մե-
րոյ՝ ծառայ և սպասաւոր Եղիազար կաթողիկոս
ամենայն Հայոց, և պատրիարք սրբոյ Երուսա-
ղէմի: Յորմէ ժամանեալ հասցէ աղօթք առա-
քելական, և օրհնութիւն աստուածային 'ի տե-
րաշէն և Քրիստոսախնամ մայրաքաղաքն Կոս-

տանդինուպօլիս, 'ի վերայ ամենայն քրիստոնէից Հայկազնոյ. մանաւանդ 'ի վերայ հարազատ և հոգեւոր սերտ սիրով կապակցեալ որդեկի մերում Տէր Յովհաննէս արք եպիսկոպոսին. և ըստ կարգի քահանայից և ըստ պատուոյ իշխանաց և իշխանապետաց, և Գովլաթաւորացըն. և առաւել եւս 'ի վերայ հաւատարիմ վէքիլաց և մտերիմ գործակալաց սրբոյ Էջմիածնի երկոտասան թուով ընտրեալ մեծարանաց, և 'նոցին հետեւեալ համակամ և միախորհուրդ սիրելեաց մերոց՝ 'ի Տէր խնդալ, ամէն:

"Այն օրհնութիւն աստուածային և խնամք ամենակալ Արարչին, որ էջն և հանգեաւ 'ի վերայ սրբոյ Էջմիածնի, և լցոյց զնոսա եօթնազան շնորհիւ, իջցէ և հանգիցէ 'ի վերայ տանց և բնակութեանց ձերոց: Այլ և սուրբ Նազարէթին՝ որ ծաղիկ Թարգմանի, ծաղկեալ լիջիք դուք հոգւով և մարմնով՝ ամենայն բարեմասնական առաքինութեամբ: Եւ սուրբ Ծնընդեամբն՝ ծնեալ լիջիք վերստին 'ի յոյն կենդանի: Եւ անքանից սուրբ Մարմնի՝ 'ի սեղան Հօրն երկնաւորի բազմեսջիք: Եւ սուրբ Յորդանանաւն՝ լուացեալ լիջիք յամենայն աղտոյ մեղաց: Եւ սուրբ Թաբօրական լերամբն՝ բարձրասջիք յիմանալի լեառն վերին: Եւ սուրբ Վերնատամբն՝ որ 'ի սուրբ Սիօն, վերին Սիօնի և Էջմիածնի ժառանգորդ լիջիք յաւիտեան, ամէն:

"Իսկ 'ի տօնի հրաշափառ ծննդեան և աստուածայայտնութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ զշնորհաբաշխութիւն որքալոյս Մեռոնին,

զոր փութացաք կատարել աստանօր, ոչ այլ ինչ իբրաց կարծեաց վասն, այլ միայն թէ վասն հրաշալի խորհրդոյ։ Քանզի ձիթենի ծառն այն՝ յորում պրկեալ ձաղկեցաւ Տէրն մեր Քրիստոս ՚ի սուրբ Հրեշտակապետի վանսն, ոչ որք լուաւ և ոչ որք ետես յօրէն Աստուածպաշտութեան Տեառն մերոյ մինչեւ ցայսօր, եթէ հանեալ եղեւ ՚ի պտղոյն ձէթ իւղոյ, սակս նուաղութեան պտղոյ ծառոյն։ Իսկ յայսմ ամի՝ այնքան արդիւնացեալ շնորհիւ Տեառն՝ մինչ զի ձգեալ ձէթն ոչ միայն ՚ի նիւթ սրբալոյս Մեռոնի բաւականացաւ, այլ և ՚ի խնդրոյ լատինացն Հռոմայ պապին շնորհ առաքեցաւ. և բազում եւս քան զայնս ՚ի տեղւոջ իւրում պահեալ կայ։ Որոյ շնորհացն և օրհնութեանցն զձեզ ամենեսեան եւս մասնակից արասցէ Քրիստոս Աստուած մեր ծնողովք և համայն ննջեցելովք ձերովք, ամէն։

«Գրեցաւ օրհնութեան գիրս ՚ի սուրբ Երուսաղէմ, ՚ի Թուին Հայոց ՌՃԺԵ. ՚ի յունվար 23»։

---

Եղիազար ընդհանուր Կաթողիկոս յԱթոռէ Ս. Էջմիածնի։ Օրինակ հրովարտակաց կոնդակին զոր երկիցէն առ-նա միաբանս Էջմիածնի. (1681)։

## 73

Երկար միջոց Երուսաղէմի Պատրիարքութեան վրայ թէ Աստուածատուրոյ և թէ խրիմեցի Մարտիրոս վարդապետի հետ վիճելէն և իրարու ձեռքէ իշխանութիւնը խլելէն ու շատ

ծախսեր ընելէն յետոյ, վերջապէս Յակոբ Կաթուղիկոսի վախճանելովը խաղաղեցաւ երկու աթոռն ալ. վասն զի Էջմիածնայ միաբանութիւնը հրաւիրանաց գիր գրելով Երուսաղէմ Եղիազարին, 'ի Սիսայ Աթոռն հրաւիրեցին զինքը իւր հոգեւոր հովուական իշխանութիւնը վարելու ընդհանուր ազգին վրայ. և նոյն հրաւիրանաց թղթին օրինակը ահաւասիկ հոս մէջ կը բերեմք 'ի ծանօթութիւն ընթերցողաց։

"Աստուածպետականին բանական անդաստանաց՝ քրտնաջան մշակիդ Որդւոյ միածնի Յիսուսի Քրիստոսի անճառ արեամբ գնելոցս, բիւրեղափայլ պատկերդ՝ Հոգւոյն Ճշմարտի նմին փառակցի վերստին լուսաւորելոցս՝ արթնական դիտողիդ և սրբոյ Երրորդութեանն հաստչին համայնից, կանխագոյն ընտրեալ հոգեւոր Հովուիդ, ազնուագութ սրբոյ Հօրդ տարակուսեալ որդեացս, և բարձրափայլ Գլխոյդ մեր վեհատելոցս՝ սրբազան Կաթուղիկոսի Տ. Եղիազարու, առաթուր անկեալ և յերկիր մածեալ, տրտմագին դիմօք և վհատեալ սրտիւք, կականաբարձ ձայնիւք և արտասուաթոր աչօք, զոտիւք Տեառնդ փարելով և զերկնաշու գարշապարդ սրբոյ Հօրդ համբուրելով, զՔրիստոսակիր անձնդ ողջունեմք 'ի Տէր։

"Միանգամայն ամենայն Արեւելականացս Հայկական եկեղեցեաց, եպիսկոպոսք, վարդապետք, քահանայք, վանականք, անապատականք և ամենայն ժողովրդականք հաւատացեալք 'ի Քրիստոս։

«Զայս ինչ իրազեկութեան քումդ վեհիմաստ խոհեմութեան յայտ առնեմք, զի ըստ հասարակացն կարգի և ըստ վերնական անհեղագոյն հրամանի, բարձրագահ սրբազան Հայրն մեր Յակոբ Կաթուղիկոս հոգեւոր Տէրն՝ պակասեալ 'ի մէնջ յաւելաւ առ հարս իւր, որպէս յայտ է Վեհիդ մեր, և եթող մեզ անհընարին աղէտս տարակուսանաց. ուստի և մեք մթնապատ և խաւար թանձրամած, զըմբռող անհնարին և յուսահատութիւնս բնաւին զետեղեալ զմեօք՝ մերձ են լքանել։ Իսկ մեր միաբերեալ զբանն Դաւթեան, որ թէպէտ ոչ կարէր մխիթարել. յիշեցաք զԱստուած և ուրախ եղաք, և գոհութիւնս բազում զնմանէ մատուցաք. այլ և այսուիկ յԱստուած ցնծացաք, հոգի առեալ կենդանացաք, զարթուցեալք 'ի քնոյ՝ զՏէր օգնական գտաք, և ճշմարտապէս ծանուցեալ՝ զՏեառնէ դոհացաք. քանզի խրատեաց և 'ի մահ ոչ մատնեաց. վասն զի զայն թէպէտ 'ի մէնջ էառ, այլ սակայն զՎեհդ յառաջագոյն իսկ 'ի նոյն ընտրեաց։ Եւ արդ՝ որովհետեւ դու Հայր մեր՝ ով Հայր պատուական, որովհետեւ Աստուած զայս տնօրինեաց, վասն որոյ առաջի Տեառնդ անկեալ աղաչեմք կողկողագին դիմօք և մեծաւ յուսով. հովուեա՛ զմեզ յանդաստանի կամաց քոց, և առ ջուրս իմաստութեան քո սնո՛ զմեզ, և յաղբերաց աստուածատուր վտակացդ արբո՛ զմեզ. քանզի զամենայն ինչ զոր արար Աստուած՝ բարի է, բայց 'ի ժամանակի իւրում. ահա ժամ և ժամանակ

և օր նմին. ուստի համառօտաբար ասեմք. ահա մարմին և ոսկերք քո եմք: Ի Բեթղէհէմ թագնաբար օծաւ Դաւիթ արքայն, սակայն Աստուած ՚ի թագաւորութիւն բոլորից ազգանց էած զնա. որ զայն ինչ ՚ի հինան յօրինեաց, նոյնպէս և Աստուած զՎեհդ ՚ի սոյն յարդարեալ տնօրինեաց այժմ. զերկուսն սրբոյն Գրիգորի Հօրն մերոյ Լուսաւորչին՝ առ քեզ բարեխօս արկանելով աղաչեմք. զի սուրբ Աթոռըս և զոտեղի նորին նորոգել՝ հայցեմք. և թէպէտ մեղանս ինչ ՚ի ժամանակի առ քեզ յայտնեալ երեւեցան, ըստ անառակին և մեք առ քեզ գոչեմք. մեղաք յերկինս և առաջի քո. վասն որոյ և Տէրդ գթացեալ՝ թողցես մեզ, նըմանելով Տեառնդ քում բարւոյ և ճշմարտի:

« Դարձեալ աղաչեմք ՚ի սուրբ Հօրէդ, զի մի ընդ վայր հարցես զմեզ. այլ խոնարհեալ յաղաչանս ծառայից քոց, եկեալ դիցես զսուրբ պարշապարդ քո ՚ի վերայ մեր գլխոյ, պահելով ՚ի խաղաղութեան զսուրբ Աթոռս զայս. և մանաւանդ զերկուս զսուրբ Աթոռս, որք են ապաւէնք մեր: Թէպէտ յանդգնութիւն իմն երեւի ասելն մեր, այլ ճշմարտութիւն հաւատարիմ ծառայիցդ յայտնեալ երեւի մեր. որպէս արար զերկոսեանն մի, և զմիջնորմն ցանկոյն քակեաց. և որ կայրն մեզ հակառակ, զայն ՚ի միջոյ եբարձ, և արար խաղաղութիւն արեամբ իւրով. ըստ նմին սարասի և զայս ամենայն զքեզ առի: Իսկ արդ՝ զինչ արդեօք արգել լիցի նմանել մեծի Տեառն՝ ծառայիդ մե-

ծի։ Արդ ժամ է խորտակման ազգիս Հայոց, և խանգարումն և լուծումն քրիստոնէական կարգիս յարկածից և 'ի թունից մահաբեր օձին, զոր 'ի ձեռն արբանեկաց նորին յերկուս սուրբ Աթոռս յեղյեղեալ նիւթեցան. ոչ ոք կարող է զայս՝ 'ի բարին և 'ի կեանս փոխարկել, եթէ ոչ Վեհդ պատուական. քանզի և զանուն Տեառնդ զայն յայտնաբանէ։ Վասն որոյ և մեք յուսացեալք, և երդուեալ 'ի յԱստուած Հայր, և 'ի հեղումն արեան Յիսուսի Քրիստոսի. և յօծութիւն ամենասուրբ Հոգւոյն Ճշմարտի, խոնարհեալ համբուրեմք զսուրբ գարշապարդ, և հայցեմք զի խոնարհեսցիս առ մեզ՝ տիրելով մեզ բարձր հրամանաւ և Կաթուղիկոսական իշխանութեամբ, զի վերստին նորոգեսցես և հաստատեսցես զԱթոռս և զկարգս, և մեք լիցուք հպատակ ծառայ սրբազան Վեհիդ մինչեւ 'ի մահ յամենայն իրս. որ ոք անօրինեալ ստուգանեսցէ հրամանաց Վեհիդ և ուրացեալ զայս պատանդակերպ կտակս, նզովս Աստուծոյ և յամենայն հայրապետաց սրբոց ընկալցի, և անլուծանելի բանադրանս և կապանս յերկինս և յերկրի 'ի սուրբ Հօրէդ ընկալցի։ Զայս ինչ աղաչանս մեր, և գթութիւն սուրբ Հօրդ հասարակաց. աղաչեմք, աղաչեմք, դարձեալ աղաչեմք, գթա՛ 'ի մեզ վասն Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

« Ողջ լիցի 'ի գլուխն Քրիստոս, Գլուխդ մեր յամենայն ժամ։ Իսկ մեք ստորագրեալք ծառայք Քրիստոսի և Տեառնդ հոգւով և մարմնով յօժար 'եմք վերոգրելոցս և մահու չափ

հնազանդ, և անդրդուելի ուխտադրութիւնս հաստատեմք, եպիսկոպոսունք, վարդապետք, քահանայք, սարկաւագունք, դպիրք, իշխանք, և առ հասարակ ժողովուրդք, վանահայրք և անապատաւորք, եւայլն։

«Գրեցաւ աղերսանաց գիրս ՚ի սուրբ Մայր Աթոռս Էջմիածին, ՚ի Թուին Հայոց ՌՃԼ. ՚ի Յուլիսի 21»։

---

## Գրիգոր Շղթայակիր և իւր շինարար գործերը։ Օրինակ երկու նուիրակաց առ ժողովուրդը և Կարապետ Կաթողիկոս երկեցին իւրեան. (1713—1749)։

## 74

Ինչպէս Գրիգոր Պարոնտէր երեւելի հանդիսացաւ իւր աթոռաշէն գործքերովը, նոյնպէս և անկէ աւելի նշանաւոր եղաւ ազգին մէջ իւր անուանակիցը Գրիգոր հայրապետ Ամրտօլու վանքի առաջնորդը։ Իրեն համշիրակն էր նոյն վանուց միաբան Յովհաննէս վարդապետը Կոլոտ մականուանեալ, որ նուիրակութեամբ Պօլիս երթալով և ազգին երեւելի Ամիրայք տեսնելով իւր ազգասիրութիւնը և բարեպաշտ ոգին, խորհուրդ ըրին մէջերնին ու Երուսաղէմ խրկեցին զինքը որ երթայ անգամ մը սուրբ Յակոբայ վանուց վիճակը աչքէ անցընէ, և եթէ կարելի է՝ հնարք մը գտնէ անոր. ուր 1713ին գալով ու ականատես ըլլալով այն եղ-

ծումներուն որ տեղի ունեցեր էր երկու Աթո-
ռոց միանալուն պատճառաւը, ետ դառնալուն
ամեն ինչ տեղն 'ի տեղը հասկըցուց Ամիրայից,
ու համոզեց զանոնք որ մինչեւ նորէն չզատուին
երկու Աթոռները, հնար չէ ամենեւին սուրբ
Երուսաղէմայ Աթոռին վիճակը բարւոքել։ Կա-
տարեց ազգը անոր տուած խորհուրդները և
իւր առաջարկութեամբը Գրիգոր վարդապետը
Ամրտօլու՝ Պատրիարք ընտրեց նոյն Աթոռոյն
1717 ին։ Հետեւապէս բերել տալով զինքը,
խրկեցին Երուսաղէմ (1720) որբոց Յակովբ-
եանց Աթոռը բարեկարգելու. որ շատ բարե-
կարգութիւններ ըրաւ, և շատ շինութիւննե-
րով զարդարեց. և սուրբ Յակոբայ վանքին ա-
րեւելեց կողմէն քանի մը տուներ ծախու ա-
նելով վանքը ընդարձակեց, և արեւելեան պա-
րիսպը նոր շինել տալով ապահովցուց միաբա-
նութիւնը։ Արդ՝ ինչ երկարեմ սուրբ Հայրա-
պետիս պատմութիւնը, որ ազատիչ եղաւ սուրբ
Տեղեաց և եկեղեցական գանձուց անօրինաց
ձեռքէն. մանաւանդ երկաթեայ շղթան վիզը
ձգելով՝ ազատեց սուրբ Աթոռս անհամար
պարտքէ, որ անխոհեմ մարդկանց ձեռօք դիզ-
ուած էր վանուցս վրայ։ Այս շղթան վզէն հա-
նելու համար երկու աղերսանաց գրեր եկաւ,
մէկը բոլոր ժողովուրդին. և միւսը Կարապետ
Կաթուղիկոսին կողմէն, որոնց օրինակները չեմք
դանդաղիր հոս դնելու։

# 75

Ես Կարապետ Կաթուղիկոս համակամ և միաբան եմ օրհնեալ իշխանացս Հայոց։

«Ամենապայծառ և զքանչելագործ սուրբ Տեղեացդ անօրինականաց Տեառն մերոյ Քրիստոսի որդւոյն Աստուծոյ, մնխրամած երեսօք յերկիր կցեալ բազում պատկառանօք, գերամաքուր քարանց և հողոյ և որ 'ի դմա կան սրբութեանցդ երկրպագանեմք՝ 'ի Կոստանդինուպօլիս քաղաքիս համագումար միեղինութիւնք, վեց ժողովուրդք կոչեցեալ ծառայք քոյին Սրբութեանդ, այսինքն քահանայք, իշխանք գանձակալք, եկեղեցպանք, և աշխարհականք. և մանաւանդ աստ այժմ 'ի պատրաստի եղեալ վարդապետք և համահաւաք լուսաւորչածին երամք հանդերձ հարբ մերով և որդեկաւ քով և հոգեւոր առաջնորդաւս Յովհաննէս աստուածաբան վարդապետիւս։ Արդ և շնորհազարդ սուրբ Հայրապետդ և գլուխ բարձրալի հայրն մեր բազմավիշտ՝ աջահամբոյր փափաքանօք ողջունելով, զորպիսութիւն ցաւագնեալ ծնողիդ մերոյ լիր 'ի նոյն շնչոյ հարցանեմք, և զօրհնութիւն գերամաքուր աղօթից քոց մեզ յօգնութիւն առժամանել միշտ աղերսեմք և հայցեմք։

«Ծանիցէ քոյին վսեմութիւնդ Հայր սուրբ, զի գիր աստուածամերձ մատանց քոց եհաս առ մեզ անբացիկ, և ըստ հրամանի քոյին Սրբութեանդ բացեալ ընթերցաք 'ի լուր ամենեցունցս, և ծանեաք զոր 'ի նմայն շնորհաշարբանան։ Եւ գրեալ էիր Հայրդ մեր գլխաւորս

ըէն զերեք բանս զայսոսիկ. մէկ՝ թէ իմաստակէ խնդրէ 'ի ձէնջ սուրբ տունս. երկու՝ թէ եղանեմ և յայլ կողմունս գնամ սուրբ տանս աղադաւ, և երեք՝ զուխտաւորսն յորդորեսջիք: Վասն որոյ գրեցաք աճ զոր բարուոքս վարկաք: Գիտէ Հայրդ մեր՝ թէ արեւելեան տան աւերումն ամենայն կողմանց վիշտ և ցաւ տարածեաց. զի ոչ գոյ տեղի յորում գերեաց խղճութիւնն չիցէ երեւեալ: Նգգս պարթեւազանց Հայոց 'ի պատճառս այնց գերեացն, որպէս թէ յերկաթս կան կապեցեալ ամենեքեան՝ որպէս քաջայայտ է քոյին Հայրութեանդ, զոր գրեալ է յերկարութիւն, զի 'ի գրոց և 'ի լրոյ յականջս ամենեցուն հասեալ կայ. Տէր ինքն հատուսցէ Հօրդ մերոյ ճաղթանօք: Եւ սորա այսպէս լինելով՝ աստ դու մեզ Հայր՝ լինիցիս օգնական սրբոյ տանդ յայսպիսի ժամանակի եղանելն քո 'ի շրջագայումն, ոչ բաւական որպէս յայտ իսկ է ամենեցուն իբր սոյզ գիտացեալ իր: Օպքերուք սակ ընդ յարկաւ ձեռով՝ զի ժամանակն դառն է: Նստցի ուրեմն Հայրդ մեր ժամանակ մի եւս մնալով այցելութեանն Աստուծոյ. զի թէ եկեսս, կարծեմք և գիտեմք իսկ՝ որ շահն զվնասն չվճարեր. բարերար է Աստուած 'ի վերայ համբերողաց, ակն կալեալ ողորմութեան նորա՝ չունիմք արմատ բնաւին յուսահատութեան: Զի ոչ յաւիտեան մերժէ Տէր զժողովուրդ իւր զոր յառաջն ծանեաւ: Վասն որոյ յայցելութեանն իւրում այց արասցէ Տէր, և թեթեւացուսցէ 'ի մէնջ թերեւս սակաւ ինչ կամ բնա-

ւթին ըստ իւր անքննելի դատաստանին և զթոյն՝ զնեղութիւն գերեացս . յայնժամ շունչ առ-եալ սակաւ ինչ կամօք և կարողութեամբ նոյն ինքն Աստուծոյ՝ հոգւով և մարմնով տալոց եմք զխնամատարէն ըստ մերս կարեաց և անդր իսկ , զի ըստ մեծութեան Աստուծոյ՝ և զբարերարին գիտեմք լինել ։ Իսկ յորդորումն ուխտաւորաց մի և մի բնաւ լիցի հոգ հոգարկու հոգւոյդ , զի ահա Հայրս մեր և առաջնորդ՝ հոգեկիցն քո և նոյնավիշտ , միշտ 'ի նոյն ջան և 'ի նոյն ազնուութիւն կայ իւրայնովն ամենեքումբք ։ Եւ ոչ միայն նա՝ այլ և ամենայն աստեայքս գիտէ Հայրդ մեր որ անիբաց դնելի ունիմք զհոգ սրբոյ տանդ 'ի սրտէ . աստուծով քարոզեմք ա-մենքս իւրաքանչիւր ըստ կարեաց ։ Եւ մանա-ւանդ իսկ սրբազան վեհս մեր նորապսակ սըր-բազան Կաթողիկոսն՝ որ այժմ իսկ աստ է , յոր-դորէ միշտ զժողովուրդն իւր ։ Եւ ահա յայ-սըմ ամի Աստուծով առատ և ընչաւէտք և տրատէրք են ուխտաւորքն ։ Եւ գիր գնաց յա-մենայն կողմունս թէ՝ շուտով պատրաստք շարժիլ , զի նաւն Աստուծով Աստուածածնի պահուցն երկուշաբթին ելանէ . Տէր է որ հոգայ և մեզ հոգալ տայ ։ Եւ զկնի այսր ամենայնի , ներել ժտելով մեծի սիրոյ համարձակութեան համայն վերոյգրեցեալ ծառայիցս քոց , յուշ առնեմք Հօրդ մերոյ զասել մեծի մարգարէին յորդորա-կան բանին թէ՝ « Բանհանաքդ խօսեցարուք 'ի սիրտ Երուսաղէմի » , և այլն ։

« Ո՛ արդեօք այժմ իմացի յողնաթախիծ

ազով վարանեալ սիրոյն Սաղիմայ, եթէ ոչ սրբոյ Վեհիդ վշտակիր անձն։ Նա որ ահամ քահանայք և աշակերտք նորայս կուսակի ատեն այժմ աստ դառնալք հանդերձ միաբան ժողովրդովք՝ խօսին զափոփանս որ լի եղեր տառապանօք և տրտմութեամբ. և յերկար տաժանեցար 'ի կապանս., և ասեմք՝ բաւական լիցի տառապանդ. և զմեզ տառապեցուցանելդ, ո՛ Ներսապատիւ։ Շատ լիցի քեզ տանջելդ՝ և մեզ համբերել։ Ժամ է այսուհետև հոգածու Հօրդ՝ մխիթարիլ, և մխիթարել։ Սփոփեսցի օրհնեալ սիրտդ Երուսաղէմի, և սփոփեսցէ զբոյր Ջիլս և զոսկերս և զայլ մասունս նորին, որպէս զի սրտիդ բերկրեցելոյ՝ երեսք զուարթք երեւիցուք։ Նոյն՝ այր որ զհովուան գուշակս արար իւրոյ խորհրդոյն, և զաղքատ ձկնորսան քարոզ կենաց, չէ անմարթ թէ՝ և այժմ շրթամբ անարգ յեսանելոյս ասեցէ հոգեւոր գործոյն մշակիդ, թէ որ 'ի կապանս կամայս են՝ էլ, և որ կաս 'ի միջի տրտմութեան տան իմոյ՝ յայանիջիր 'ի լոյս մխիթարութեան։ Ասիցէ թերեւս քոյին Սրբութիւնդ թէ զի՞նչ ասէք, ո՞չ ապաքէն մինչ 'ի վճարել սրբոյ տանս պարտուցն, առ ի յանձն չելանել 'ի կապոյ այսր երկաթոյս։ Յիրաւի ո՛վ Ներսամեծար. բայց երկուս ինչ ունիմք ասել. մի՝ զոր ինչ սրբոյ տանդ խորհէիր 'ի բարութիւն, խորհրդակցութեամբ ծառայիցս քո առնէիր. իսկ այդ կապանացդ կրակութիւն առանց ուրուք գիտելոյ արարեր; զոր կարեմք ասել սիրով՝ թէ չէ՛ պարտ այդպէս լինել. ուստի ասկայն խորհ-

եալ և կատարեալ էիր՝ թողուք զվեհդ 'ի կամս, զի մի դիմակ յուցցուք զմեզ կամաց .քոց ։ Բայց շատ ուրեմն լուեցաք . թէ սակս՝ ձեր ինչ որ լուէք չլուէք . սակայն, թէպէտ պնեղութիւն դու կրես, վնախատինս մեք, որովհետեւ կոչեցեալ է անուն .քո 'ի վերայ մեր . վասն որոյ ունիմք իրաւունս խօսելոյ 'ի մասին յայսմիկ ։ Երկու՝ զի 'ի սկզբանէ անտի յանձն առնլոյ անձին սրբոյդ զայդ խնդիր, եթէ եկեալ արդիւնքդ մինչեւ ցայժմ 'ի սուրբ տունդ, այսինքն թէ լուսաւուց ամանց ազատութիւնքն, և նորեկ յիշատակքն, և մանաւանդ թէ շնորհալի շինուածոյն ծախքն, այսոքիկ ամենեքին թէ պարտուցն տըւեալք լինէին, դիտէ Հայրութիւնդ՝ թէ սուգաւէս վճարեալ լինէին բովանդակքն ։ Համարեա՛ ուրեմն թէ վճարեցան հին պարտքն, և լցան ուխտքն .քո, և վերստին նոր եղեն պարտք մնացեալ.քդ սակս վերոյգրեալ պայծառութեան սրբոյ տանդ շինուածոյ ։ Որպէս ահա՛ գոհութիւն Ս-մենաստանն, յաւելումն և աճումն օր ըստ օրէ՝ չքեղազարդ պայծառութիւն գովելի յարկիդ շնորհիւ Տեառն ։ Իսկ ո՞ գիտէ՝ սակս դարձեալ թերեւս, եւ մինչ զսուրբ տունս ոչ տեսանիցեմ ազատեալ 'ի բնաւից պարտուցն, ոչ հանից զերկալթս, եթէ ոչ՝ մեռայց 'ի սմին ։ Բարւոք է պարծանքդ 'ի մեր նախատինս . զի ցուցանի յայտնապէս թէ .քեզ պարծանս՝ և մեզ մեծ նախատինս անջնջելի կամիս արձանագրել յազգաց յազգս, սակայն թէ՝ սոքա այնք են, որ զՍ-ուաքնորդ մի 'ի ներքոյ երկաթոյ թողեալ՝ նա-

վին սպանելին ։ Դու նահատակ, մեք ապանողք ․
խիստ լաւ ․ բարւոք վարձու արժան առնես զաշ֊
խատողքս ։ Բայց քան լիցի մտածել կամ ասել
քեզ զայդ Հօրդ խոհեմագունի ։ Սան որոյ ահա
տարապարտեցեալ ծառայքս ամենեքեան մեծա֊
ապէրախիւ և յուսով խակ խնդրեմք 'ի քոյին Սրբու֊
թենէդ լսել նուաստիցս աղաչանաց, և հանել
զպարտանաց պատուականիդ 'ի կապանացդ երկա֊
թեայ ։ Ի սէրն Աստուծոյ լինի Հայր սուրբ, զսուրբ
Օքբեթեանն և զսուրբն Յակոբ բարեխօս առ֊
քեզ ունիմք, արա զոր հայցեմքս ․ հերիք նախա֊
տակոծ եղաք այլոց ․ խնայեա զազգին քո անուն ․
լուիցես մեզ՝ և լուիցէ քեզ Տէր, և մեք ծա֊
ռայքս քո ․ զի լողլին լսել իրաւունք են, որպէս
և միւսն ։ Նա մի լիցի ընթեռնլով և եթ ձգի֊
ցես 'ի վայր, զայլ ինչ գրել կամելով պատճառս
առ․ մեզ մի աշխատեցես ունայն ․ անհնար է՝
որ պխուի այս մէկ խնդիրքս մեր 'ի կատարումն
գայ, որպէս և մեք միշտ կամք և եմք ծառայքս
պատրաստական քոյին Հայրութեանդ և մանա֊
ւանդ տեղւոյդ՝ առ 'ի կատարել զոր ինչ հրա֊
մայիցես ։ Սուսի աղաչեմք, աղաչեմք և բիւ֊
րիցս աղաչեմք, զի մի զաղերսանս անտես առ֊
նել ախորժիցիս, զի մի գուցէ և մեզ ծառա֊
յիցս լքումն 'ի ջերմաջերմ յառաջադիմութե֊
նէս լինիցի, և ոչ 'ի մէնջ պատճառեալ ։ Վերջա֊
ցուցանելով զբանս ասեմք, անպատճառ լսելով
մերս աղերսանաց պարտիս 'ի հարկաւորութենէ
որ առ մեզ սիրոյդ՝ հանել զկապանօք իսկոյն 'ի
հատանել աղերսանացս ․ և 'ի վերայ կերակրոյ՝ իբր

պտուղ զմեզ և զսուրբ տաւնդ սկզբելոյդ՝ ընծայել տակաւ մինչ գիտի Ջրախառն լռու պատուիրելոյ աստուածային Պօղոսի։ Այլ եթէ զաղաչանս զայս անտես առնիցես, ծանուցեալ լինիս թէ՝ ՚ի զուր սիրես զմեզ։ Նաւ ուրիշ բանից և պատճառաց ոչ լսեմք՝ թէ և արդար իսկ իցէ։ Եթէ խնկապէս զօգուտ որբոյ տանդ խնկայցես, առ պարապս սակաւ մինչ և բնութեանդ թոյլ, և ոչ յայժ ճնշել ՚ի վեր քան զհնարին։ Օ՛ զխարդն դու խնա որ յայտ իսկ է, և հետամտեսն՝ միաս անձինդ սրբոյ և տանդ սրբոյ, զոր ոչ խնդրէ Տէր, ուստի և ոչ հաճի, այլ և դիմակ զատանի։ Մութլախ՝ կապակցութիւն որ առ մեզ սիրոյդ՝ զայս խնդրես գիտեմք։ Բայց արդ՝ մինչ յայսմ խորհրդի էաք և խոկայաք, լուաք թէ հոգեծինն հարազատ՝ սրբոյ Հօրդ մերոյ մեքէլ Յովհաննէս վարդապետն (1) գալոց է ՚ի մօտ աւուրս ընդ ուխտաւորացն։ Այլ սակաւ մինչ զինի ընկալաք տեղեկամբ՝ զոր լուաքն ունկամբ, այս է զսիրելին քո և զնեցուկն ծերութեանդ բառ քոյին չնորհազարդ գրոյ. յոր հայեցեալ մարմնոյ աչաց ըղձանօք՝ լցաք բերկրանօք և անպատում խնդութեամբ. իբր ստուգիւ զամենաքաղձալի տեսիլ սրբոյ Հօրդ ՚ի նմին իսկ տեսանելով։ Վայելեցաք արդարեւ ՚ի քաղցրածաղիկ ծառոյդ զքաղցրատիպ պտուղն. յինքեան ընդ Հօրդ սրբոյ ունելով զպայծառ վարուցն կերպարան։ Որ և զորհնութիւն ամենապերճեցիկ

(1) Այն է Հաննա վարդապետն պատմագիրը։

սուրբ վկայիւդ, և զաղօթիցն ձեր երանաշնորհ սուրբ Հայրապետիդ հեղեալ 'ի վերայ մեր իբր պղորձանս յորդ գետոյ, զորթոյց անդրէն զկարօտ անձկութեան մերոյ առ տեսիլ երկնահաս տեղեացդ, և գեղոյ դիմաց պատուեալ պատկերի գերամաքուր ծնողիդ: Այս յետ ամկաւուց, որպէս և գրեալ էր սուրբ Հայրդ մեր, ամենայնիւ ըստ նոյն օրինակի կամօք և հաւանութեամբ սիրելի որդւոյ քո և հօր մերոյ դիտողի մեծի Պօլսոյ՝ տեառն Յովհաննու Նորապատակ եպիսկոպոսի, և հաճութեամբ միաբանանդ երիցս երանեալ մեծի սրբազան Հայրապետիս մերոյ Կարապետի Կաթուղիկոսի ընկալաք զպարկեշտ պատիւ Եպիսկոպոսութեան 'ի վերայ գրեցեալ պատուելի սուրբ Հօրէն մերմէ, 'ի սպասաւորութիւն սրբոյ Գահիդ և մեծապայծառ Աթոռոյդ ամենայն Հայոց, հանդերձ երկու հարազատօքն իւրովք, այս է Թովմաս և Յակոբ վարդապետօքն, որոց շնորհաւոր եղիցի սուրբ Հօրդ աղօթիւք: Նասոյց միաբանանդ և սրբազան Մեհիս մերոյ զանպատմելի գանձն աստուածային, զվկայն կեցուցիչ մահուան Յիսուսի, զսուրբ Նշանն Տէրական՝ զընծայեալն 'ի սուրբ Հօրէդ: Զոր ընկալեալ սուրբ Հայրապետիս մերոյ՝ ծանոյց մեզ ամենեցուն, և աղաչեաց իսկ թէ օգնեցէք սրբոյ տանն այնմիկ, և ինքնակամ կապեալ հոխուի նորին սիրելի եղբօրս մերոյ չասլեցի առ է՝ զոր ցանկայն, եկայք մխիթար լիցուք մեծի տրտմութեան նորա: Եւ այսպիսի բանիւք ծանուցումն առնելով ասաց. Ահա

ես քսակէս հազար ղուրուշ խնտատրէ տամ՝ սուրբ տանն դատաստանի, և այնուհետեւ ղայրէթն ձեր է ։ Վասն որոյ և մեր շարժեալ 'ի նախկին և 'ի սոյն փութոյ, և մանաւանդ 'ի ներշնչմանէ հոգւոյն Աստուծոյ․ ընծայեցաք սակաւ ինչ արդիւնս յարդեանց մերոց 'ի թեթեւութիւն պարտուց սրբոյ Տաճարիդ Աստուծոյ, և 'ի լուծումն կապանաց Հօրդ մերոյ յերկար տառապելոյ ։ Որ և ահա այժմ՝ ձեռամբ հարազատի քոյ տեառն Յովհաննէս եպիսկոպոսի և մնհատեսի Կարապետին, հանդերձ միւս մնհատեսիւքն առաքեցաք 'ի սուրբ Աթոռդ խնտատրէ ընդ ամենն հինգ հազար ղուրուշ․ և աղաչեմք յոյժ զի մի 'ի քանակն՝ այլ յորակն հայեսցիս ։ Քանզի յայսմ՝ ամի մէկ փողըն՝ որպէս թէ տասն է համարելի, զգիտորդն ըսեմք, և յայտ է զի գիտեն՝ որ գիտենն, և պատմեն արդեօք սուրբ Հօրդ ։ Այլ որ ինչ մնացուածք պարտուցն մնասցեն, զայն ևս 'ի մեր վերայ խնա․ միայն թէ զայս երկու խնդիրս մեր կատարեսցես, այս է՝ պհանել երկամթոյդ և ըղջուր և եթ ոչ ըմպել՝ այլ գինեաւ ։ Այլ որպէս 'ի վերոյ եդաք, նշան սիրոյ քո առ մեզ և առ սուրբ Հայրապետս մեր և առ բազմաջան որդեակ քո, զայս խնդիրս գիտեմք և ոչ զայլ ինչ․ և մնամք ահաւասիկ լոյս կատարման ։ Այլ ողջ լեր բաւական բազմաց օգնութեամբ բարեշնորհ կեցութեամբ ; ամէն . . . . ։

" Այս ահա մանաւանդ նորագոյն Կարապետ Արքազան Կաթողիկոսն ամենայն Հայոց, սուրբ

հայրս մեր սուտ պղծալ, նա եւս մեծ հարկաւո-րութեամբ խնդրէ զայս. իսկ՝ արդեօք ընդդէմ կալ առաքելական հրամանին եւս: Նոյն նմանք ահաւասիկ գրոյ և լոյ, թէ եղեւ զոր խնդ-րեցաքս. քաւ է դ:

ՌՃՀԵ Օգոստոսի ժդ:

---

# 76

Նշխարք նամակին օրինակք:

"Սրբոյ քաղաքին Աստուծոյ, աստուածակոխ վայրացն, և եւս լուսերամ տաճարի սրբոյ Յա-րութեանն կենարարին մերոյ Ամենասուրբ Գե-րեզմանին երկրպագանեմք: Նոյն և տիրայաջորդ առաքելական Աթոռոյ Աստուածեղբօրն՝ յո-րում և կենսագործ խաչին Քրիստոսի, և ընդ-այլոց սրբութեանցն՝ հետեւակէս անուշահոտ սրբոյ Գլխադրի մեծին Յակոբայ սրբոյ Առաքե-լոյն, ՚ի դուռն անկեալ և շնորհամբ հոգւոյս եր-կրպագութիւն և համբոյր մատուցանեմ. յա-րոյ ամենայնէ զպահպանողական շնորհս ընդու-նել սպասեալ մնամ հաւատով:

" Յիսուսի Քրիստոսի ծառայ Տէր Կարապետ Կաթողիկոս ամենայն Հայոց, և Պատրիարք Վա-ղարշապատու՝ լուսակառոյց և տիրանկար մեծի սրբոյ Աթոռոյն Էջմիածնի. Յորմէ ժամանեալ և ընծայեալ մատուցի միարար սէր սրբութեան և ողջոյն հոգեւորական վերատեսչի և գերա-մեծար հոգեկից եղբօր ՚ի Քրիստոս՝ մեծի Տեառն Գրիգորի, և արժանաւոր Պատրիարքի սրբոյ Երու-

սաղէմի, և արժանաժառանգ հոգեկիր և երանեալ դիտապետի սրբոց տեղեացն Քրիստոսի ։ Առ որոց ընդ թեւօք երջանկութեան սրբազնէից հովանաւորեցեալ բարեբախտիկ անձանց արժանաւորաց՝ եպիսկոպոսաց, վարդապետաց, քահանայից, և աստիճանաւորաց, ճգնողական կրօնաւորաց, գործակալաց, և աղօթաւորաց, և համօրէն 'ի փառս Աստուծոյ հաւաքեցեալ միահտեսի քոց միաբանից՝ ընդ ողջունիս և վերնապարգեւ օրհնութիւնս ընծայեմ, որովք ողջ լերուք ։

« Ընկալայ զսրբատառ նամակ ամենապատուելի Արքայութեանդ՝ հանդերձ երկրպագելի աստուածեան սուրբ Նշանաւն, որով փառաւորեալ եմ՝ ունելով 'ի պարանոցի իմում զանհամեմատ և զանգին գանձն երկնային, (թէ և ոչ իսկ եմ արժանի). ուստի և վասն այդց հետեւեալ ընծայից 'ի քէն առաքելոց (որ ձեռամբ քո և իմս որդեակ Յովհաննէս վարդապետի, և զոտ առաքչիդ լուրոյ ունողի), մեծապէս շնորհակալ եմ հանդերձ լիական գոհութեամբ. չէն կենաս, և չէն կեցցէ միշտ և յաւէտ տէրունեան սուրբ քո Աթոռդ, զոր բարով վայելեսցես ընդ երկայն աւուրս Տեառն, և 'ի պարծանս տառապեալ ազգիս Հայոց, և դարձեալ ողջ լեր ։

« Ընկալեալ եղեւ եւ՝ խնդիր Սրբութեանդ, որ վասն կարգադրութեանց սրբազան կարգի եպիսկոպոսութեան երից որդեկաց մերոց, որոց միթէ հազիւ կամեցայ, և այն 'ի պատիւ լը-

րութեան գրոյ սրբութեան Աւծիրդ, որոյ 'ի մի- ջոցին շնորհեցաք Հոգւոյն Աստուծոյ, զորս բար- ւոք փայլեցուցես և փայլեցուցեն հնազանդօրէն որդիութեամբ, և հեզական պարկեշտութեամբ ծառայելով սուրբ Աթոռոյդ և Տեառնդ իւ- րեանց:

« Աստանօր ըստ կարգի հոգեւոր իրաւանց՝ ժամ է ինձ արդեամբ եւս անսալ բանին, և յառաջ ածել զասացեալն՝ թէ օգնելն եղբայր եղբօր է իբրեւ ամուր պարիսպ, կամեցայ վասն որոյ և թողեալ զիմն՝ կանխեցի նախադրեալ ա- ռաջին գրովն որ 'ի քաղաքէս մեծէ, խնդրեցի 'ի յեղբայրութենէդ հանել զերկաթն սրբոյ պա- րանոցիդ և առաքել առ իս, և չեղէ արժանի այնմ՝ լսելի լինելոյ, և թէ եւ զՏէրունականն ընկալայ: Իսկ արդ՝ կոչեալ իմ զորդեակն քո և զանդրանիկն իմ զՊատրիարք քաղաքիս, հան- դերձ խորհրդական իշխանօք, և հոգւոյն Ա- ստուծոյ խորհեալ խօսեցաք զոր ինչ և խօսե- ցաք, և եղբայրակցութիւն խորհրդոյն յայսմ կայացաւ, մինչ որ և ես ուխտեալ եղէ՝ ոչ ե- լանել 'ի քաղաքէս, մինչեւ հանցի երկաթն 'ի պարանոցէ Աթոռոյդ: Եւ այս բան ոչ միայն 'ի ծածուկ ներխորհրդով, այլ և 'ի յատենուոջ առ ամենեսին եղեւ հռչակել. ուստի ոչ սակաւք յորդորեալ՝ եղեն կամակիցք և օգնակիցք, զոր եթէ ոչ լինէր անթուելի բազմութիւն գերեացն խղճալեաց, և խիտ առ խիտ անմիջոց բազմու- թիւն տրոց ողորմութեանց, որ վասն ազատու- թեանց, լինէր թէ՝ ծախսն նորոգութեան սրբոյ

Յարութեան և այլոցն նորաշինութեան ( որպէս պատմի ), որոց պատճառաւն է պարտուն մնացեալ՝ այն եւս վճարիցի. այլ արդ՝ ոչ միայն անմեղադրելիք՝ քան թէ գովելիք և եւս են օրհնեալ ժողովուրդք քաղաքիս, վասն զի գերեալքն եւս մեր են, և են եղբարք և քորք և գաւնուկ զաւակունք մեր, առանց մերձ ՚ի դուռն կորստեան, քան զխայտառ վճարումն վերատացեալ պարտուց սուրբ Աթոռոյդ: Որով գովութեամբ կարացից ներբողել զողորմութիւն ազգիս մերում որ ՚ի մեծ քաղաքիս. արդարեւ մեծ գովութեան և մեծագոյն օրհնութեանց արժանիք. վասն զի ներքայսմիկ արժանաւորի առատարար ողորմութեանց բաղձաց՝ յաւելին եւս լսել բանից մերոց, և գրեթէ յատամանց խուրեանց հատեալ օգնեցին իւրաքանչիւր էանափք, և բաց ՚ի գանձանակացն՝ այդքան ինչ ՚ի տուրս մատեան վասն անրոյդ հանման, զորոց անուանսն գրեսցէ Տէր ՚ի յիւր մատեան: Նաարդ՝ կատարեալ սիրով առաքել երկրորդ անգամ յաւակցելովս գրեմ հոգեկից Եղբարդ իմոյ որքոյ, և հարազատական անմիջոց սիրով վառահացեալ և յուսով գերակատարելութեան Որբանութեան քում, հարկ ՚ի վերայ եդեալ իւրու հրամայեմ՝ զի ընկալեալ զաւակուանմանեալ օգնութիւնս ՚ի սիրողաց և ՚ի ցաւողաց վասն քո, լաղ եղիցիս մեզ. որպէս և ես գարշեալ վերջին ծերութեամբս, թէպէտ բազում ինչ պատճառ առարկեցի առ ՚ի չմտանել ընդ լծով մեծի առաջնանի զգաստանայս, սակայն և ոչ կա-

մեցայ Նշգիս իմոյ անդուր լինել և զկամս պաշտել, որ եպերելին է։ Պարտի ուրեմն և Սրբութիւն քո անսայթաք այսքանեաց երախտաւորաց, և 'ի գալ օրհնեալ ուխտաւորացս տէրունականաց՝ սիրով ընդունել զաղերս և զխնդիր մեծի քաղաքայնոցս և մեր. և յետ երից աւուրց 'ի մէջ սրբոյն Յակոբայ, և 'ի գոգ սրբոյ Գլխադրին 'ի մէջ և 'ի հանդէս աւուրդ կարօտ եկեալ ուխտաւորացդ յօժարել. և որպէս եւտու հրաման իմ և քո սիրագոյն որդեակ Նորընծայ արհի եպիսկոպոս տէր Յովհաննէս վարդապետին, որ որպէս քոյ է՝ եղիցի և իմս վէքիլ, և իւրեւ ի մասն ձեռամբ բացցէ և հանցէ զերկաթն յերկարատանէ և բազմաշխատ օրհնեալ սուրբ քոյդ պատրանոցէ, և տացէ 'ի ձեռս սիրելի որդեկին մերում՝ վէքիլ օրհնեալ ժողովրդոցս մահտեսի Կարապետին։ Նա իսկոյն անմիջապէս զգեստաւորեալ մատուսցես արժանաւորդ՝ զգոհացողականն պատարագ, յիշելով յաղօթս քո սուրբ զբոլոր ազգս Հայոց. եւս առաւել զերախտաշատ զայս ժողովուրդ մեծի քաղաքիս. ընդ նոսին թէ և յիշեսցես զկարօտս, և զանդրանիկն իմ մեծաջան, այն քո են շնորհ։ Իսկ թէ այլ իմն մտածութեամբ, որպէս թէ տակաւին պարտական, և զխնդիր ուխտաւորաց լինիցիմ ասելով՝ խիղճ ինչ 'ի միտս հարցէ զքեզ, որ ոչ է խիղճ՝ քան թէ կարծիք. փասն զի յաւուրսն յայնոսիկ (որպէս ստուգիւ լուայ), մինչ ուխտեալ եմ՝ թէ որքան էր պարտքն՝ զայն աստուծով վճարեալ եմ և անցեալ. իսկ Ներկայս պարտս յետ

այնք բազում շնորհութեանցն է. Թող զայն որ 'ի վերայ սպառուց որբութեանց ծախեալ են, որ 'ի սուրբ Աթոռն մտեալ, և ոչ ըստ վայր որպէս յեղանակն: Այլ սակայն առ 'ի բժշկել և բառնալ զկարծիսն զայն՝ ահա ձեռնհասք ամենասուրբ Հոգւոյն Աստուծոյ, իբրու Հայրապետական իշխանութեամբ նուաստս Թողութիւն և քաւութիւն եղեցի քեզ յերկինս և յերկրի, և մի համարիցի քեզ 'ի մեղս մնացեալ պարտուցն վերջնոյ, որ այլ է քան զուխտեալն քո, և ուխտն քո կատարեալ է՝ և եղեցի:

"Նու 'ի նմին վայրկենակի տացէ Աստուած ազատութիւն, որպէս յուսամ աղօթիւք քովք, և եւս քոյին սուրբ ձեռօք՝ ամէն, և դարձեալ ողջ լեր:

"Ի զրաւ այսորիկ մեծագունի հարկաւորութեանս՝ ահա մնամ և սպասեմ զի մանաւանդ Կարապետն վայրկենակի առաքեսցէ կամ զերկաթն և կամ զկուղպն միայն, զի տեսեալ համբուրեցից, և դարձեալ այսրէն այդր առ քեզ դարձուցից: Այս թէ յետ այցքանեացս՝ ամլուր լիցին բանք մեր առաջի քո, բարւոք 'ի միտ առ և գիտեա՝ որ ոչ միայն սառելոց են սիրտք սորա Աթոռոյդ և քո, գուցէ և լինիցիս պատճառ արտադանձանակացն բարձմանն, այլ լորն սիրոյ 'ի մէնջ կորելոց, և գրոյքս այս առ քեզ վերջին լինելոց, որ ոչ յուսամ, քանզի սիրով սիրեցի և միաբան եմ քեզ և անզրանկիս իմում հանգերձ օրհնեալ ժողովրդովք քաղաքիս. որպէս և ահա 'ի նշան սիրոյ վերատին նորոգեցաւ

վանքս սրբոյ Ս. Թուայդ, և զարդարեալ. պայծառացաւ, յորս կամ սիրով հանգուցեալ. որ բարով վայելեսցեն միաբանք սրբոյ Ս. Թուայդ։ Մինչ գիրս ցայս վայր եհաս և թիւն էր գրելոց օգոստոս քսան և հինգ, 'ի պահուն յորում իշխանք սեղբայս զՍ. Թոռակալ որդեկիս Մանուել մեծ վարդապետի մէկ քեակ խմասախէ փառն քո համբէքին, խակոյն 'ի վերայ դրամին և գրոյս եկն եհաս Մարտիրոս սարկաւագն, և մասոյց զգիր քոյին Աբբութեանդ, որոյ խնդիրն էր վասն այսր աշխատանաց, որպէս գրեցաւ։ Շնորհք է ուրեմն և նշան համակամ սիրոյ և միաբանութեան, զոր Տէր Յիսուս անքակ և ամուր պահեսցէ 'ի մէջ մեր, և 'ի մէջ երկուց սրբոց Ս. Թոռոց։ Ա 'ի մէնջ ցուցաւ ըստ կարի և առ 'ի քէնն մնաց շուտով առաքմամբ երկաթին։ Ս. յաքան. առ այս բաւ լիցի մեծագունի խոնհեմութեան Աբբութեանդ։

« Գրեցաւ ՌՃՀԵ, օգոստոս իէ, Յուսակրտուր ըստ սրբագունի Կարապետին Դրիստոսի»։

## 77

Գրիգոր հայրապետի կրած նեղութեանց պատմութիւնը իմանալ ուզողը, կրնայ Չամչեան վարդապետի Նշուաղէմայ պատմութեան մէջ կարդալ յերես 147. որ ականատես եղած է ամեն կրածներուն, մանաւանդ թէ փոխանորդութեան պաշտօնին պահանջմամբը նոյն դէպքերուն և գործքերուն մէջ գտնուած է ինքն ալ։

Գրիգոր Շղթայակրի շինել տուած ակղուանքը տակն են ։ Ս. Նշանի անուանեալ խորանը Ս. Յակոբայ եկեղեցւոյն հիւսիսային կողմը՝ Ս. Գրիգորի մատրան վրայ ։ Մեծայայց աւանդատունը, որուն մէջ նոր խորան մը հաստատեց յանուն սուրբ Լուսաւորչին ։ Ի Բեթղեհէմ սուրբ Ծննդեան վանքը նորոգեց. նա և սուրբ Հրեշտակապետի վանքը, և Հախիախմեայ խորանը շինեց նոյն վանուց մէջ ։ Ի Յոպպէ շինեց սուրբ Նիկողայոսի Եկեղեցին ։ Այլ և շատ նորոգութիւններ ըրաւ սուրբ Յակոբեանց հաշուակաւոր եկեղեցւոյն մէջ. և ընդ ամենը խոհեմ կառավարութեամբ 32 տարի Պատրիարքական իշխանութիւնը վարելէն վերջի, խաղաղութեամբ հանգեաւ 'ի Քրիստոս ։

Այս սուրբ հայրապետութեան ժամանակ կրկին անգամ վէճ բացուեցաւ Հայոց և Յունաց մէջ Հայր Աբրահամու վանուց համար, որ Հաբէշներունը ըլլալով՝ իրաւամբ Հայոց կը վերաբերէր, և Յոյնք բռնի յափշտակած էին ։ Նաև ոչ միայն այն, այլ և ճշմարտութիւնը սքօղելով սուրբ Յակոբայ վանքն ալ ուզեցին յափշտակել, որպէս թէ Վրաց ազգին եղած ըլլայ այն տաճարուց, և Հայք բռնի յափշտակած անոնց ձեռքէն. այս խնդիրը շատ դժուարաւ լուծուելէն վերջի, երկու կողմէն ալ շատ սուղի նըստաւ ։

Վախճանեցաւ սուրբ և բազմարդիւն Հայրապետն 1749 ին, և թաղուեցաւ 'ի Ս. Փրկիչ 'ի շարս Պատրիարքաց ։

Յաջորդութիւն Պատրիարքաց ։ Ժամանակագրութիւնք ։
(1749—1865)։

# 78

Նոյն տարին յաջորդեց իրեն Յակոբ պատրիարքը Նալեան, որ Յովհաննու կոլոտի աշակերտն էր և միաբան սուրբ Ս. Թորոսյ, սակայն ինքը ուսման պարապելու համար Պօլիս կը կենար ։ Երեք տարի միայն Պատրիարքական իշխանութիւնը վարեց, և յետ այնորիկ գործը իրեն ծանր գալով, մեծապատուու Շաղուլ ամիրային հետ՝ որ 1752 ին ուխտի եկած էր, կրկին Կոստանդնուպօլիս դարձաւ ։ Ասոր իրեն յաջորդեցին հետզհետէ Թէոդորոս, Կարապետ, Պօղոս, Յովակիմ, Պետրոս՝ որ Յոպպէի մէջ վախճանեցաւ, և ասոր ալ յաջորդեց Թէոդորոս Վանեցի Ճգնաւորեան Հայրապետը ։ Ասոր ժամանակը սուրբ Յարութեան երկնանման Տաճարը այրեցաւ (1808), և Տէրութեան հրամանաւ կրկին շինուեցաւ, նոյնպէս և մեր վերնատունն ալ նորոգուեցաւ. և հնագոյն արքունական հրովարտակները՝ որոնք սուրբ Աստուածածնի գերեզմանին և սուրբ Ծննդեան տեղեացն պատարագ մատուցման համար առնուած էին, վերստին նորոգուեցան ։ Նա և աշտանակները կանթեղները, պատկերները և զարդերը՝ որ անհաւասար էին, ամէն ազգաց միակերպ հաւասարեցուցին ։ Նա ինքը Թէոդորոս վախճանեցաւ 1818 Թուականին՝ անոր տեղը Գաբրիէլ Պատրիարքը յաջորդեց. բայց առժամանակս հան-

գրաւութիւն մը չվայելեց սուրբ Վանուցս անթիւ պարտուցը համար, որու պատճառաւ Աթոռէն ալ հեռացընելով զինքը՝ Իզմիր խրկեցին. և Կոստանդնուպոլսոյ Պօղոս Պատրիարքը իրբեւ կառավարիչ սուրբ Աթոռս գալով, մեծամեծ ջանիւք հազիւ հազ ազատեց վանքը պարտատերաց ձեռքէն։

Պօղոս Պատրիարքի կառավարութեան ժամանակ, 1829 թուոյն նորոգեցան հին հրովարտակները, և վերստին սուրբ Երուսաղէմի վըրայ պատարագ մատուցանել սկսուեցաւ, որուն հրամանագիրը Զաքարիա եպիսկոպոսի ձեռօք առնուեցաւ իր փոխանորդութեան ժամանակ։

1831 թուականին բուն բարեկենդանի ուրբաթ օրը՝ ըստ մեր նախնի սովորութեան՝ Ասորւոց վանքը սուրբ Մարկոսի եկեղեցին գնալով պատարագ մատուցանելու, և ժամարարի զգեստաւորեալ ժամանակին ժողովրդեան ծանրութենէն յեղակարծ իմն վերնատունը փլաւ, բայց Աստուծոյ պաշտպանութեամբը ժողովրդեան վընաս մը չեղաւ։

Նոյն և 1832 թուականին, Յունաց արքաները սուրբ Յարութեան Տաճարին մէջ գրոհ տալով, սուրբ Աստուածածնայ Աւժամթափման տեղւոյն պատկերազարդ կենաց բոլորակ քարը խորտակելով մանրեցին առ նախանձու, որ Կոստանդնուպոլսէն խրկուած էր ՚ի յիշատակ երեսուն և վեց ուխտաւորաց, որոնք ծովամոյզ եղած էին քանի մը ամիս առաջ։ Նոյն 1834 թուականին Զատկի շաբաթ օրը, յետ լուսաւոր-

եալին սուրբ Յարութեան տաճարէն դուրս վերադարձած ժամանակ, մեր և Յունաց երկոտասան հազարի չափ ուխտաւորներէն հարիւր յիսուն անձինք և երկու զօրք ինկան խուռն բազմութեան մէջ, և ճնշատապառ մեռան: Այն թուականին գաղտնաբարոյ արաբացիները կառավարութեան դէմ ապստամբելով՝ Երուսաղէմը պաշարեցին տասն աւուր չափ, և ներսէն ու դուրսէն շատ կռուելէն զկնի, Իպրահիմ փաշային զօրքերը՝ որ սակաւաթիւ էին Երուսաղէմի պաշտպանութեան համար, չկարողանալով դէմ դնել արաբացւոց, Սիոնի բերդին մէջ մանելով քաղաքի դռները գոցեցին. և բարբարոսները քաղաքին հարաւային կողմէն Ջրանցքի ճանապարհէն ներս մտնելով՝ քաղաքին մեծ մասը աւարի տուին. և երկու օրէն յետոյ Իպրահիմ փաշան Յոպպէ եկելով, և շատ զօրքեր կոտորեցընելով ճանապարհին, դարձեալ արիաձեռն զօրքերով եկաւ Երուսաղէմը առաւ բարբարոսաց ձեռքէն, և այս շատ բարեկարգութիւններ բրաւ:

1836 թուականին համահաճութեամբ երկուց սրբազան Պատրիարքաց՝ Գաբրիէլի որ վերստին դարձաւ ’ի Սիոյ Աթոռն իւր և Պօղոսի կառավարչի, սուրբ տեղերը շատ շինութիւններ և պայծառութիւններ ստացան. մանաւանդ սուրբ Յակոբայ եկեղեցւոյ մէջ կանանց վերնատունը շինուեցաւ կրկին խորանաւ, որք են յանուն Ընթրեաց և յանուն Պայծառակերպութեան. և դարձաւ Սիոնի խորանը որ

լուսամուտի կամարին մէջ հաստատուած էր դը-
րան ձախակողմը ։ Նոյն սուրբ Յակոբայ եկեղե-
ցիները սպիտակցան, այսինքն՝ Էջմիածնի,
սուրբ Ստեփաննոսի, և սուրբ Նաւաքերոց. եւս
և սուրբ Հրեշտակապետի եկեղեցին ծեփե-
ցաւ, և շատ սենեակներ շինուեցան ուխտա-
ւորաց համար ։ Նոյն և սուրբ Յակոբայ տապա-
նաը՝ այն հայրապետները հաստատեցին 'ի
պարծանս ազգիս Հայոց ։ Նոյն միջոցիս (1837
Թուոյն) սուրբ Համբարձման լեռը Հայոց վանք
շինուեցաւ, որ շատ ժամանակէ 'ի վեր աւերակ
էր. բայց Յոյնք և Լատինք նախանձելով հա-
կառակ հրովարտակ հանել տուին, և երկու տա-
րիէն եաբը գրոհ տալով կործանեցին և աւերե-
ցին, և այնպէս կը մնայ մինչև ցայսօր ։

1841 Թուականին՝ վերոյիշեալ Զաքարիա ե-
պիսկոպոսը Պատրիարք նստաւ, ինչպէս վերը
ըսինք, որ իւր փոխանորդութեան ժամանակ
պատճառ եղաւ Գերեզմանին վրայ պատարագ
մատուցանելու ։ Հինգ տարի և կէս ամիս միայն
վարեց իշխանութիւնը. և թէպէտ քանի մը
շինութեանց հիմնարկութիւններ ըրաւ, բայց
մահը վրայ հասնելով՝ անոնց լրումը իւր յաջոր-
դին օրովը եղաւ ։

1841 Թուոյն Նդղլոյ եպիսկոպոսը Երու-
սաղէմ սկսաւ շինութիւններ ընել ։

1847 Թուականին՝ Կիրակոս Երուսաղէմացին
նստաւ Պատրիարք, որ իւր նախորդին հիմնար-
կած շինութիւնները լրացընելէն 'ի զատ, սուրբ
Յակոբայ եկեղեցւոյ մէջ գտնուած ամեն խաչ-

կամարներն ալ ոսկեզօծել տուաւ ։ Իւր օրովը նաեւ Ս. Ծննդեան դուռին երկաթեայ դրան հաւասար իրաւունք ձեռք բերաւ Յունաց հետ, եւ բանալի մը եւս ունեցաւ ։

1848 Թուականին Լատինաց առաջին Պատրիարք նստաւ յԵրուսաղէմ Վալերկա անուն եպիսկոպոսը ։

1848 Թուականին ապրիլի ամսուն եւ երկուշաբթի Զատկի մեռելոց օրը երրորդ ժամուն՝ յետ արձակման եկեղեցւոյն, սուրբ Յակոբայ Տաճարի մարած կանթեղները յանկարծ ինքնին լուսով վառեցան, որուն շատ ականատեսներ եղան ; որ եւ երեք ժամէն աւելի տեւեց ։

1850 Թուականին Կիրակոս Պատրիարք յանկարծակի վախճանեցաւ, եւ Զմիւռնացի Յովհաննէս եպիսկոպոսը յաջորդեց անոր տեղը, որ շատ շինութիւններ ըրաւ սուրբ Աթոռոյս մէջ. որոնց մէջ հռչակաւոր է Վեհարանը կամ Պատրիարքարանը, եւ Ժառանգաւորաց դպրոցը ։

1857 Թուոյն Ռուսաց հիւպատոսարան հաստատուեցաւ, եւ առանձին Մետրապօլիտ մը եւս նստաւ Երուսաղէմայ մէջ. որոնք իրենց ուղղութեան հրամանաւն եւ ծախուքը առանձին վանք եւ հիւրանոց շինեցին արտաքոյ Երուսաղէմի ։

1858 Թուականին Հապէշէց Թագաւորի Կէզէրը Երուսաղէմ ուխտի եկաւ, եւ Հայոց վանքէն շատ գոհ եղաւ իրենց աղքատ կրօնաւորները կերակրելուն, եւ իրեն արժանապէս մարդասիրութիւն ցոյց տուելուն համար ։

1859 թուականին, Ռուսաց կայսեր եղբայր Կոստանդին և իւր Թագուհին Երուսաղէմ ուխտի եկան։

1860 թուականին Զմիւռնացի Հոգեւոր Յովհաննէս Պատրիարքը վախճանեցաւ. և քանի մը ամսուր յետոյ աւագ Լուսարար Ռոմթիշանցի Գէորգ եպիսկոպոսն ալ իւր մահկանացուն կնքեց, և Աթոռս մնաց առանց Պատրիարքի և առանց աւագ Լուսարարի։

Այս միջոցիս սուրբ Աթոռոյս կառավարութիւնը ընդհանուր միաբանութեան ձեռքը մնաց, ընդ նախագահութեամբ խոստովանահայր Սրթանէս վարդապետին, որուն տեղապահութեան պաշտօն ալ տրուեցաւ յետոյ Ազգային Վարչութեան կողմէն։

1862 թուականին արժանապատիւ Կարապետ վարդապետը միաբանութեան հաճութեամբը աւագ Լուսարար ընտրեցաւ, և 1863 թուականին Եպիսկոպոսութեան բարձր աստիճանին արժանացաւ։ Այն 1863 թուին Հայոց և Յունաց համաձայնութեամբ՝ սուրբ Աստուածածնայ երկնանման Տաճարի յարկը, և բարձր տանիքը ամրապատեցաւ, որ երկար ժամանակէ 'ի վեր քայքայեալ էր. եւս և պէտք եղած նորոգելիք տեղերը նորոգուեցան։

1864 թուականին Եսայի վարդապետ Թալասցի, օգոստոս 14ին միաբանութեան քուէարկութեամբ և ազգային Կրօնական և Քաղաքական ժողովոց ընտրութեամբ վարդապետութենէ Պատրիարքութեան բարձր աստիճանին կոչ-

չուեցաւ . ուստի ՚ի սեպտեմբեր 10 ին ՚ի Կոստանդնուպօլիս և անտի Էջմիածին երթալով՝ Եպիսկոպոսութեան բարձր աստիճանը առաւ , և դեկտեմբերի 3 ին դարձաւ ՚ի Կոստանդնուպօլիս . և անտեղ փոխուեց բարեկարգութեան, համար ժամանակ մը մնալով՝ 1865 ապրիլ ամսոյ 5 ին Երուսաղէմ եկաւ ։ Յուսանք նորին Սրբազնութենէն որ արդարութիւնը առաջնորդ ունելով իրեն՝ կը սկսի իր Հայրապետական իշխանութեամբը կառավարել զաւուրս Ս. Թոռը , և յառաջադիմութեան շաւղին մէջ դնել զայն ։

Աւարտեցաւ առաջին մասս փոքր ՚ի շատէ պատմելով անցքերուն , փոփոխութիւններուն և տեղեկութիւններուն վրայօք ։ Յետ այսորիկ երկրորդ մասիս մէջ փոքր ՚ի շատէ առ ՚ի ծանօթութիւն տալու ընթերցողաց՝ ասոր տեղերը և վանքերը պիտի նշանակեմք , որոնք Երուսաղէմ քաղաքին մէջը և անոր շրջակայ սահմանները կը գտնուին ։

Բայց նախ արժան կը համարիմ աստ նշանակել մեր նախարարաց անունով շինուած վանքերը , որոց ոմանք յայտնի են և ոմանք անյայտ , և անոնց անունները Հայաստանի Հնախօսութենէն և Մովսէս Կաղանկայտուացիէն , և այլ և այլ պատմիչներէն կ՚առնումք ։



# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Աշխարհագրութիւն մեր նախնիներէն հիմնուած յայտնի և անյայտ աւերակ վանօրէից ։

## 80

Անոնց մէջ առաջինն է Բագայի վանքը Շ. Ի. բանկացուց, որ յետոյ Կնեղաւորաց վանք ալ ան-ուանուած է, արտաքոյ Նշուատղէմի Մոզմօնեան տանձարքին աշտարակին մօտ, որուն այժմ տեղը յայտնի չէ ։

Արծրունեաց վանքը՝ որ յանուն սուրբ Գէ-որգայ կառուցեալ էր, դարձեալ նոյն կողմն է եղեր ; և տեղը այժմ անյայտ է ։

Զարեհունի վանքը դարձեալ արտաքոյ Նշուա-տաղէմին, որուն տեղն ալ անունն ալ մեզ յայտ-նի չէ ։

Սամիկանէից վանքը դարձեալ քաղաքէն դուրս՝ կառուցեալ յանուն սրբոյ Կարապետին, բայց տեղն անյայտ է այժմ ։

Գուգարաց վանքը նոյնպէս արտաքոյ պա-րսպին, որուն անունն ալ տեղն ալ յայտնի չէ ։

Բղեշխի վանքը արտաքոյ պարսպի քաղաքին շինուած մեր սուրբ Փրկչի վանուց մօտ, որուն Բագոս ալ կ՚ըսուի, և այժմ աւերակ է ։

Ակնեաց վանքը որ յանուն սրբոյն Գէորգայ կառուցեալ էր, տեղը անյայտ է . բայց հնախօ-սութիւնը մեզ ծանօթութի կուտայ այս վանուց համար թէ, Ճանճիկները բռնութեք քանդեր են ։

Աշտունեաց վանք սուրբ Հրեշտակապետի վանուց եւեւ, որ ուրկանոց եղած է հիմայ. յառաջագոյն բոլոր ուխտաւորները այս վանուցս մէջ բնակեցուցանելով կը դարմանեին եղեր. որ այժմ դարձեալ ուրկանոցին մօտ է և աւերակ, և է 'ի ձեռս մեր։

Վերջիշեալ վանքին մօտ Դաւթի դրան մերձ էր Արիցավանքը յանուն սուրբ Աստուածածնի, ուր որ այժմ ուրկանոց է դարձեալ 'ի ձեռս մեր։

Ղեւոնդեանց վանուց թէ տեղը և թէ անունը որ կոչին ըլլալը յայտնի չէ այժմ։

Զորորդ Հայոց Արիստի վանքը պարսպէն դուրս արեւելեան կողմն է, որուն տեղը յայտնի չէ։

Անձեւացեաց վանքը յանուն Անանիայ առաքելոյ՝ Բեթղեհեմ քաղաքին մօտ կառուցեալ էր։

Արշակունեաց վանքը Երուսաղէմ քաղաքին մէջ Պրոպատիկէ աւազանին մօտն է, և շատ հաւանական է որ Յովակիմայ և Աննայի տունն ըլլայ, որուն եկեղեցւոյ ձեւերը Հայոց եկեղեցւոյ ձեւն է. բայց այժմ Դաղղիացիք առին այլազգեաց ձեռքէն և նորոգեցին, իսկ տաճարին հին ձեւը պահեցին։

Գաղառնի վանքը, որ յանուն սրբոյն Հռիփսիմեայ և Գայիանեայ կառուցեալ էր. սուրբ Յարութեան դրան մօտ եղած է, որուն տեղը յայտնի չէ։

Ամատունեաց վանքը սուրբ Սիոնի կողմն է։

Կամարականաց վանքը, որ Արշակունեաց վանք ալ կ'ըսուէր, յանուն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, անյայտ է հիմայ։

Սամիկոնէից վանքը՝ որ յանուն սուրբ Կարապետին շինուած էր, դարձեալ Միհոնի կողմն էր։

Գառնեցւոց վանքը, որ Սմբատ Բագրատունին շինեց, տեղն ալ և կողմն ալ անյայտ է։

Սահառունեաց վանքը, որ Քարավանք ալ կ'ըսուէր, Տեառն եղբօր Յուդայ առաքելոյն անուամբ շինուած էր, տաճարի Սրբութիւն սրբութեանց ըսուած աշտարակին կից, որ այժմ Տաճկաց ձեռքն է և աւերակ է։

Պալունեանց վանքը Գալիլեայ լերան կողմն եղած է, ինչպէս նաև Հեստագայ երկու վանքերը․ Ընձեւացեաց վանքը, և Զաղակունեաց վանքը, որ այժմ աւերակ և Տաճկաց ձեռքն է։

Կոստայեցւոց վանքը՝ Ձիթենեաց լերան վրայ, որուն տեղը Կենարարն մեր Յիսուս իր երանութիւնները կարդաց, բայց այժմ աւերակ է, և ի ձեռն այլազգաց։

Վարաժնունեանց վանքը, Սողոմոնի տաճարին կողմերն է, որուն տեղը յայտնի չէ։

Վանանդեայց վանքը, վերոյիշեալ վանքին կողմն է և անյայտ․ նմանապէս և Տայեցւոց վանքը, թէ և նոյն կողմն էր, բայց անյայտ է հիմայ տեղը։

Սոկաց վանքը, Գեթսեմանի ձորին մօտ։

Բաջբերունեաց վանքը, Գալիլեայի լերան կողմը։

Սահառունեաց երկրորդ վանքը, դարձեալ Գալիլեայ լերան վրայ։

Կաղանկայտուաց վանքը, Յովսափաթու ձորին կողմը։

Մաղաղեանց վանքն ալ Գալիլեայ լերան կողմերն էր ըստ հնախօսութեան. բայց այժմ աւերակ է, և ապաստակ 'ի ձեռս այլազգեաց։ Նմանապէս և Կողբայ վանքը, որուն տեղը յայտնի չէ այժմ, թէ և Ձիթենեաց լերան վրայ պիտի ըլլայ։ Ամատունեաց, Մարանդունեաց և Պերճանաց վանքերը, ասոնց ալ ոչ տեղերնին և ոչ որ կողմը ըլլալնին յայտնի է։

Սիւնեաց երկու վանքերը Երուսաղէմի արեւելեան կողմը Ձիթենեաց լերան վրայ էին. երրորդ վանքը Հայր Սաբայի ձորին մէջը, չորրորդ վանքը Յովսափաթու ձորին մէջ. հինգերորդ վանքին տեղը անյայտ է։

Արցախայ վանքը, Երուսաղէմի հարաւակողմն եղած պիտի ըլլայ, բայց տեղը յայտնի չէ։

Պաշտացւոց վանքը զոր Արշակունիք կառուցին յանուն սրբոյն Պետրոսի, այժմ մեզ յայտնի չէ տեղը։

Մամիկոնէից նախարարներէն շինուած չորս մեծամեծ վանքեր ալ կային, որոնք նոյնպէս անծանօթ են, և չորս վանք ալ Աղուանից կային, որոնց համար Մովսէս պատմիչը այսքան կը յիշէ՝ թէ այլազգներու ձեռքն է։

Աղուանք՝ այս չորս վանքերէն 'ի զատ ուրիշ ութ վանք ևս ունէին, որոնց հնգին միայն անունները յայտնի է մեզ Մովսէս Կաղանկայ

տուացքի պատմութիւնէն. և սոնք են. Պանդայ վանքը Չիթեննեաց լերան վրայ արեւելեան կողմը, զոր Աղուանից ազգէն Պանդոռն անունով ծզնաւոր մը շինած է, և Աղուանից քահանայները հոն կը բնակէին։

Պարտաւայ վանքը, որ սուրբ Աստուածածնայ անուամբ կառուցեալ էր, և Դաւթի աշտարակին մօտ էր։

Աղուանկատուացոց վանքը, վերոյիշեալ վանքին կողմն է և Տաճկաց ձեռքն է։

Արձախայ վանքը, ուր սուրբ Աստուածածնայ մազերը ամփոփուած էր, և սուրբ Ստեփաննոսի անուամբ կառուցեալ էր։

Ամարասայ վանքը, որ յանուն սրբոյն Գրիգորի կառուցեալ էր։

Աղուանք այս վանքերէն 'ի զատ ուրիշ վանքեր ալ ունէին Սաւենից վանքերուն մօտ, որ Երուսաղէմի շուկաներուն մէջն էր. որոնց աւերակները այժմ Տաճիկները գրաւած են, և յայտնի չէ մեզ։

Մովսէս Կաղանկատուացին կը գրէ նաեւ թէ Յուստինիանոսի որ և Յուստինիանոսի կայսերութեան ժամանակը Յունաց պատրիարքունք նախանձելով Հայոց և Աղուանից վանօրէից վրայ, որք հարիւրէն աւելի կային, ձեռնադրութիւնը արգիլեցին այս վանքերուն մէջ. ուստի Հայոց նախարարներն և իշխանները վերստին ազատեցին զանոնք Յունաց բռնութեան ձեռքէն. և եօթը կենդինար դրամ հատուցին Յուստինիանոս թագաւորին, որ 70.000 դահեկան կ'ընէ. բայց

յետոյ մերայինք անհոգանալով վերստին երեսի վրայ մնացին վանքերը, և շատերը յափշտակեցան օտարներէն։

---

Ստորագրութիւն սրբոց Տեղեաց և վանօրէից, որոնց աւերակները յայտ կ'երեւին։

# 81

Այս վանքերէն ՚ի դաշտ ուրիշ աւերակ և կամ այլազգիներէն յափշտակեալ վանքեր ալ ունէին Հայք, որոնցմէ մէկն է սուրբ Յակոբայ վանուց հիւսիսային կողմը, Ճանապարհին վրայ հնաշէն քարքարեալ եկեղեցին, որ Թովմայ առաքելոյն տունը կը կոչեն. և հիմայ այլազգիք խուրացուցած են. և 1866 ին նորոգեցին արտաքին պատերը և դուռ մ՚ալ կախեցին, բայց վրան բաց է տակաւին և կիսաշէն կըմնայ։

Խաչերուց վանքը, վերոյիշեալ վանուց հիւսիսակողմն է, որ այժմ պարտէզ է մեր ձեռքը։

Երրորդ՝ սուրբ Յակոբայ վանուց դարձեալ հիւսիսակողմը տակաւ ինչ դէպ յարեւելս է, Նահատակի ըսուած վանքը որ Անգղիացւոց եկեղեցւոյն կից է, և այս վանքիս համար Առուոց ազգին էր կ'ըսեն.

Սուրբ Յարութեան արեւելեան դռնէն ելլելով, և տակաւ ինչ յառաջանալով, հին կաշետան (Թապաքհանէ) մէջ առանձին գործարան մը կայ այլազգաց ձեռքը, որ այժմ բոլորովին աւերակ է, և ժամանակաւ մեծ եկեղեցի մըն էր...

կ'ըսեն յանուն սուրբ առաքելոյն Պետրոսի, և կ'անուանեն թէ նոյն առաքելոյն բանտն էր։

Մուլթ շուկայ ըսուած վաճառանոցէն դէպ 'ի արեւելք սակաւ ինչ յառաջանալով Մատթէոս աւետարանչի տունը կայ որ այլազգաց մզկիթ էր և այժմ դասարան եղած է, և շատ հնաշէն է. հոն գրած է աւետարանը Եբրայեցի լեզուաւ. և այս Աղուանից վանքերէն մէկը կը կարծուի ըլլալ։ Այս վանուցս մերձ է Աբգարու կնոջ Հեղինէի տունը, որ այժմ այլազգեաց ձեռքն է, և իրենց աղքատաց համար ապուր կ'եփուի մէջը։

Հռովմէադաւան Հայոց եկեղեցւոյ համար առած տեղւոյն արեւելեան կողմը աւերակ մը կայ, որուն մէջ երեք խորաններ կը տեսնուին, այն է սուրբ Աստուածածնայ անուանը կառուցեալ վանքը, ուր տեղի համար կ'ըսուի թէ, Յիսուս խաչը ուսը դէպ 'ի Գողգոթայ գացած ժամանակը Մարիամը Մարիամանց հետ գալով այն տեղ նստաւ, մինչեւ որ իւր Միածին որդին բերին աչքին առաջէն անցուցին, ուր տեղ որ սրտէ 'ի սիրտ խօսեցաւ իւր Միածին որդւոյն հետ։ Այս տեղս հիմայ տաճկաց ձեռքն է։

Վերոյիշեալ տեղէն սակաւ ինչ յառաջանալով՝ Պիղատոսի պալատն է, ուր որ ձեռքը լուալով ասաց. “Քաւեալ եմ ես յարենէ արդարոյդ՝ դուք գիտէք”. և ժողովուրդը պատասխանեց՝ թէ “արիւն դորա 'ի վերայ մեր և 'ի վերայ որդւոց մերոց, 'ի խաչ հան զդա”։ Այս տեղ մզկիթ մը կայ, որ առաջ մեծ ու հրա-

չակաւոր վանք է եղեր . և Լատինաց Ատրիգո-միոսը և Պօնիֆակիոս պատմիչները կը գրեն , թէ Պիղատոսի պալատին մէջը հռչակաւոր վանք էր և Պիղատոսի և Յիսուսի պատկերները պատին վրայ նկարուած տեսած են աւերակութեան ժամանակ :

Պիղատոսի պալատին հիւսիսակողմն է Հերովդէսի տունը , որ այժմ աւերակ է : Ու կը գրէ Լատինաց Անեքլիոս պատմիչը , թէ Հերովդէսի տան տեղը մեծ վանք էր , և թէ ինքն ալ ականատես եղած է անոր հին պատկերներուն՝ աւերակութեան ժամանակը , բայց ո՛ր թուոյն ըլլալը յայտնի չէ մեզ :

Յովակիմ Աննայի տան հիւսիսակողմը սակաւ ինչ դէպ յարեւմուտս քաղաքի պարսպին մօտ է Սիմոն փարիսեցւոյն տունը , որ այժմ այլազգի բրուտներ կը բնակին : Այս տեղւոյն համար կը պատմեն՝ թէ Լատինաց Կոթոֆրետոս թագաւորը մեծ ու հռչակաւոր վանք մը շինել տուաւ յատուկ եկեղեցիով՝ որու խորանները ըստ մասնեայ կ'երեւին : Ու այս այն Սիմոն փարիսեցին է , որուն համար կը գրէ Աւետարանիչը . " Աղաչէր զնա ոմն փարիսեցի , զի ճաշ կերիցէ ընդ նմա . և մտեալ 'ի տուն փարիսեցւոյ բազմեցաւ , և կին մի էր 'ի քաղաքին մեղաւոր , բերեալ շիշ մի իւղոյ " և այլն . (Ղուկ . Է . 36 .) Թէպէտ այս փարիսեցւոյն անունն ալ Սիմոն է , բայց Սիմոն բորոտը չէ , որուն տունը Բեթանիա գիւղն է , այս փարիսեցի Սիմոնը երուսաղէմացի հրէից գիտուն րաբբիներուն մէկն էր :

Պեղատոսի պալատին մօտ Ճանապարհի հարաւային կողմը փոքրիկ դուռ մը կայ, որ այլազգեաց տուն է. ներս մտած ժամանակ հնագոյն փոքր եկեղեցի մը կայ գմբէթեայ, որ է Յիսուսի բանտը, բայց ով շինելը յայտնի չէ։

Վերոյիշեալ տունին դիմացն եղած փողոցէն տակաւ ինչ դէպ 'ի հիւսիսակողմը ընթանալով, որուն ձախակողմը անել Ճանապարհ մը կայ, անոր ծայրն է Խուզաբերից վանքը, և գմբէթեայ եկեղեցի մը ունի շատ հնաշէն, որ այժմ այլազգեաց ձեռքն է. և քրիստոնեայ ներս չեն ընդունիր, մանաւանդ տէրունական ուխտաւորք։

Հայոց կործնցուցած վանքերուն մէջ նշանաւոր է նաև Երուսաղէմի արևմտեան կողմը Յովհաննու Ոնունդ ըսուած գիւղին մէջ, որ Լեռնակողմն ալ կ'ըսուի, Եղիսաբէթի տունը, որ առաջ մեծ հռչակաւոր վանք էր. և ըստ Հաննա վարդապետի պատմութեան, 348 տարի առաջ շատ միաբանութիւն եմք ունեցեր այս նշանաւոր վանուցս մէջ. բայց բարբարոս արաբացիներէն սաստիկ նեղութիւններ կրելով՝ չեն կարողացեր հանդուրժել. ուստի թողեր վանքը Երուսաղէմ փախեր են, և արաբացիք գալով նոյն վանքը քանդեր են, որուն մէկ կտորը մինչև ցարդ կը մնայ, բայց Տաճարի տեղը աւերակ է։

Այս վանքէս կէս ժամ հեռի դէպ 'ի արևմտեան հարաւակողմն է սուրբ Յովհաննու Անապատը, որ վիմափոր այր մն է, և այրին տակը աւազան մը կայ, ուրկէ քաղցր և բարեհամ ջուր·

մէջ կը բղխի . և այրին վրայ վանքին տեղն է, յանուն Յովհաննու Կարապետին, և շինուեցան պատերը կ'երևուին տակաւին, բայց որ ազգին ըլլալը յայտնի չէ, սակայն և այնպէս ամէն քրիստոնեայք կ'երթան ուխտ և երկրպագութիւն մատուցանելու սահմանեալ ժամանակին :

---

## Աստուածագրութեան ուխտատեղեաց և պատմական տեղեաց որոնց մինչև ցարդ յայտնի կ'երևին.

### Սիոնի վերնատունը։

## 82

Նորագոյն քաղաքի արտաքին հարաւակողմն է Սիոնի վերնատունը, ուր տեղ նախ հանգեաւ տապանակ ուխտին Դաւթի մարգարէին ձեռօք : Կը պատմեն Լատինաց պատմիչները թէ, այս Սիոնը Մարկոսի տունն է, որ եօթանասուն աշակերտաց մէկն էր, և ըստ այլոց Յովսէփ արեմաթացւոյն տունն է : Հոս խրկեց Յիսուս իւր աշակերտաց մէջէն Պետրոսը և Յովհաննէսը, որոնք գալով զատկական զատը պատրաստեցին : Այս տեղս կատարեց Յիսուս հին օրէնքը, և հաստատեց նոր օրէնքը, և զատկական զատը կերաւ, խոնարհեցաւ աշակերտաց ոտքերին ալ լուաց, և փրկարար խորհուրդը սահմանեց : Այս տեղս զրկեցաւ Յուդայ իսկարիովտացին աշակերտաց դասէն, և այս տեղս հաւաքելով առաքեալները առին զսուրբ Հոգին . և այս Սիոն վերնատան մէջ Թաղուեցան Դաւ-

ւիթ մարգարէն, և իւր որդին Սողոմոնը, և Սողոմոնի մայրը Բերսաբէն ։ Այս վանքը շատ հաջակաւոր էր Լատինաց ձեռքը, և շատ փոփոխութիւններէն զկնի՝ այժմ մահմետականաց ձեռքն է ։

Գամաղիէլի ձորը, Ագարակ բրտին, եւ Ճառները։

# 83

Քսան մղոն կամ եօթը ժամ հեռի Երուսաղէմէն՝ հարաւային կողմն է Գամաղիէլի կոչուած ձորը, ուր տեղ թաղեցին Ս. Ստեփաննոսի մարմինը ըստ պատմութեան Սարկինոսի, և յետոյ փոխեցին 'ի Սիոն, և ուրիշ տեղեր ալ ։ Նոյն ալ հարաւակողմն է Ագարակ բրտի ըսուած տեղը, որուն Ակելդամայ ալ կ՚ըսուի, և Հրեաները իրենց օտարականները հոս կը թաղեն ։ Այս այն տեղն է, զոր Յիսուսը վաճառած սակով գնեցին, որ Յուդայ տուաւ Տաճարին մէջ ձգեց ։ Այս ձորին միւս կողմը Ճառներ կ՚ըսուի, ուր տեղ Հայք քանի որ գերեզմանատուն չունէին՝ մեռելոց դիակները հոն տանելով առատապէս վար մեծ այրին մէջ կը ձգէին, բայց այժմ աւերակ է ։ Իսկ այս տեղէս տակաւ քիչ առ 'ի վայր իջանելով, հոր մատուռ ձեւացած կրկին այր կայ, որոնց մէջ մինչեւ ցարդ պատուոց նշանները կ՚երեւի, այս տեղւոյն համար կը պատմուի թէ, Յիսուսի չարչարանաց գիշերը առաքեալներէն երկերը այս այրին մէջ առանձնացած էին ։ Իսկ Յոյնք կ՚ըսեն թէ Աստուածածին ծածկուած այրն է ։

Աբբա — հորը։

## 84

Նոյն ճառներէն դէպ 'ի ծովին մէջը իջանելով յարեւմտից կողմը խորագոյն ջրհոր մը կայ, այն է Աբբա—հորը, որուն Լատինները հոր Նէեմիայ կ'ըսեն։ Իսրայէլացիք 'ի Բաբելոն գերի գնացած ժամանակնին, քահանաները Տաճարին հուրը բերելով այս հորին խորշերուն մէկուն մէջ ծածուկ թաղեցին. և յետ եօթանասնամեայ գերութեան Նէեմիաս՝ քահանայից որդւոցը միջնորդութեամբ գտաւ, որ թանձրամած ջուր դարձած էր մոխրի մէջ, բայց ողջակէզ մատուցանելու ժամանակ հրամայեց Նէեմիաս որ զայն առնեն փայտերուն վրայ ցանեն, որ արեւը տաքցած ժամանակը հուրը իսկոյն բորբոքելով ողջակէզները այրեց։ Տես (Բ. Մակ. Ա. 19. 21)։

Եսայի մարգարէին սղոցուած տեղը։

## 85

Աբբա—հորէն հիւսիսակողմը դառնալով Ճանապարհին վրայ որմով պատեալ թթենի մը կայ, որուն տակը այլազգները այժմ կ'աղօթեն. այս տեղս սղոցեցաւ Եսայի մարգարէն Մանասէ թագաւորէն, և հոն թաղեցաւ, որ է Սելովամայ աղբիւրին դիմացը, ինչպէս Յայսմաւուրքն ալ կը պատմէ, Մայիս 19։ Կ'ըսուի թէ ատոր մօտ սուրբ Աստուածածնայ անուամբ կառուցեալ վանք մը կար, որուն շինութեան հիմունքը մինչեւ ցայսօր կ'երեւին. բայց յումմէ շինուիլը կամ ո՞ր քրիստոնեայ ազգին ըլլալը մեզ յայտնի չէ։

Սելովամայ աղբիւրը։

## 86

Այս աւերակ վանքիս լերան ստորոտը հիւսիսակողմը գնալով տակաւ ինչ, կը գտնես բուն Սելովամայ աղբիւրը։ Այս Սելովամը Սախաակ երբոր Երուսաղէմը պաշարած էր, և ժողովուրդը շատ կը նեղուէր՝ ջուրի համար՛, Եսայի մարգարէին խնդրանօք Աստուած առաքեց այս յորդահոս ջուրը։ Տես Յայսմաւուրքին՝ Մայիս 19 ին մէջ. և այս աղբիւրին ջուրը մինչեւ ցարդ կը բղխէ. և շատ օգտաւէտ է։ Հոս խրկեց Յիսուս կոյրը, որուն աչաց վրայ կաւ դնելով՝ պատուիրեց որ Սելովամայ աղբիւրը երթայ լուացուի, և երբոր լուացուեցաւ՝ իսկոյն աչքերը լուսաւորեցան. (Յով. Թ. 1. 17)։ Եւ Սելովամայ աղբիւրին վրայով բլուրին գլուխը մեծամեծ շինութեանց աւերակներ կ'երեւին, որոնց համար կ'ըսուի՛ թէ Սողոմոն պալատ շինեց իւր թագուհիներուն համար, և կուռց տաճարներ ալ հոն կանգնեց, զորս Յովսիա թագաւորը կործանեց, և հողերը Բեթէլ լեցնել տուաւ։

Աստուածածնի Ննջման տեղը։

## 87

Սուրբ Սիոնի և մեր Փրկչի վանքին մօտ Յունաց գերեզմանատան չոր պատին մէջ տեղը նըշան դրուած քար մը կայ, ուր տեղի համար կ'ըսեն թէ սուրբ Կուսի տունն էր, և Քրիստոսի համբարձմանէն ետքը տասն և չորս տարի հոն

նստաւ և հոն աւանդեց իւր մաքուր հոգին ։ Եւ այս սուրբ տեղս յառաջագոյն վանք էր, և շատ հաւանական է որ Աղուանից պատմութեան Երիցավանք ըսուած վանքը այս էր՝ Պաւլթի դըրան մօտ և յանուն սուրբ Աստուածածնայ. Նըշան գրուած քարին վրայ խաչի նշաններ կան ։

Հակայից ձորը, Յուդայի գիւղը։

## 88

Երուսաղէմի արևմտեան կողմը Արինէն սակաւ ինչ յառաջանալով՝ Հակայից ձորը կ'իջնըւի, ուր Մովսէսի լրտեսները գալով հսկաներ տեսան. «Տեսաք անդ հսկայս, և էաք յաչս նոցա որպէս մարախ». (Թւոց. ԺԳ. 34)։ Անոր կամուրջէն և ցամաք աղբիւրէն անցնելով և քիչ մը գնալով դէպ 'ի հարաւ, Ճանապարհի ձախակողմը աւերակ գիւղ մը կայ, որուն Յուդայի գիւղ կ'ըսուի. հոս խորհուրդ ըրին քահանայապետները Յիսուսը բռնել տալու համար, և ըսաւ Կայիափա քահանայապետն՝, թէ «Լաւ է մեզ զի այր մի մեռանիցի 'ի վերայ ժողովըրդեանս և մի ամենայն ազգն կորիցէ». (Յովհ. ԺԱ. 50.). և այս գիւղս Յոյնք գնելով՝ այժմ անոնց ձեռքն է ։ Այս տեղէս ուղղակի երթալով Ճանապարհին վրայ հոր մը կայ, ուր մոգերը եկան աստղին առաջնորդութեամբ և նոյն տեղը ծածկուեցաւ աստղը ։ Անկէ քարընկէց մը հեռի աւերակ վանք մը կայ յանուն Ամբակումայ մարգարէին. վասն զի Մարիանոսի պատմութեան մէջ կ'ըսէ, թէ Ամբակում մարգարէն իւր հօր

ձողներուն հաց և թան տարած ժամանակը, այս տեղէս հրեշտակը իւր մազերէն յանկարծ բռնելով Բաբելոն Դանիէլի գբոյն վրայ իջե-ցուց, ու ձեռքի հացն և կերակուրը անոր յանձ-նել տուաւ. և յետոյ դարձեալ իւր տեղը դար-ձուց։

Սուրբ Եղիայի վանքը։

# 89

Այս ճանապարհի ձախակողմը կ'իյնի սուրբ Եղիայի վանքը, որ առաջ Վ բաց էր և հիմայ Յունաց ձեռքն է. Կ'ըսուի թէ Եղիա մարգա-րէն Յեզաբելի ձեռքէն փախած ժամանակ՝ այս տեղը եկաւ նստաւ բեւեկնի ծառին տակը, և քունը տարած ժամանակ հրեշտակն Աստուծոյ հաց և կերակուր բերաւ իրեն, զոր ուտելէն յետոյ քառասուն օր ճանապարհորդութիւն ը-րաւ։

Աշտարակը, Հռաքէլի գերեզմանը։

# 90

Սուրբ Եղիայի վանքէն կէս ժամ հեռու՝ ճա-նապարհին ձախակողմը աւերակ մը կայ, այն է Աշտարակը, ուր որ Յակոբ նահապետ Միջա-գետքէն դարձած ժամանակ իջեւանեցաւ։ Նոյն ձախակողմը Հռաքէլի գերեզմանն է, ուր եր-կունքը բռնելով ծնաւ զԲենիամին, և մեռնե-լով 'ի ծննդեան իւրում՝ թաղեցաւ այս տեղս, որուն շիրմին վրայ Յակոբ նահապետ արձան կանգնեց, և հիմակ ալ գմբեթաւոր շէնք մըն է և Տաճկաց ձեռքն է։ Կը պատմէ Մարկոս՝

Թէ այս տեղս Հեղինէէն չինուած վանք կար, բայց անունը անյայտ է։

Պետաճոշա գիւղը։

# 91

Հռաքէլի գերեզմանէն դէպ 'ի արեւմուտք տասն և հինգ րոպէ հեռաւորութեամբ Պէտաճալայ գիւղն է, ուր տեղ էր Աբիաթարայ քահանային տունը։ Այս տեղ Դաւիթ առաջաւորութեան հացը կերաւ. (Ա Թագ. ԻԱ. 6.)։ Այս գիւղիս բնակիչները քրիստոնեայ են, և ունին փոքրիկ եկեղեցի մը յանուն Նիկողայոսի հայրապետին. և գիւղին ծայրն է Լատինաց նորաշէն վանքն ու ձեմարանը. նոյնպէս Յոյնք ալ ունին եկեղեցի և վանք։

Դաւթի ջրհորը։

# 92

Հռաքէլի գերեզմանէն մինչեւ Դաւթի ջըրհորը տասը րոպէ հեռու բարձրաւանդակ տեղ մի է, ուրկէ կ'երեւի Բեթլեհէմ քաղաքը։ Այս հորի ջրոյն մարգարէաբար ցանկացաւ Դաւիթ խմելու պատերազմին օրը. (Բ Թագ. ԻԳ. 18.)։

Կոզմայի եւ Դամիանոսի եկեղեցին։

# 93

Երուսաղէմի արեւմտեան կողմը և Բեթլէհէմէն գալու ատեն աջակողմը փոքրիկ եկեղեցի մը կայ Յունաց, որու աւերութիւնը Բեթլէհէմցի Յոյնի մը ձեռք է, այն է անարժան բը-

ժողովրդեան Արզրումի և Գումխանոսի։ Տես 'ի Վարս սրբոց, հատոր Ժ. երես 298։ Իսկ ըստ Հայոց պատմութեան, այս տեղս վանք եղած է Յունաց Միքայէլ Թագաւորէն կառուցեալ։

Խաչավանք։

94

Երուսաղէմի Յոպպէի դռնէն ելլելով, երբ քանի րոպէի չափ հեռու դէպ 'ի արեւմուտք երթալով՝ ձորի մը մէջ կը տեսնուի Խաչավանք, որ չորս սեանց վրայ կառուցեալ պայծառ եկեղեցի մը ունի գմբէթեայ։ Այս վանքիս համար կ'ըսուի՝ թէ Յունաց Հերակլ կայսրը Պարսից գերութենէն խաչը ետ դարձուցած ատեն այս տեղ իջեւանեցաւ, և լուսոյ կամար մը տեսաւ խաչին վրայ. ուստի 'ի պատիւ սուրբ խաչին յիշեալ վանքը շինեց և Խաչավանք անուանեց։ Այս վանքս առաջ Վրաց ձեռքն էր, իսկ այժմ Յունաց ձեռքն է. եկեղեցին շատ հին է՝ ինչպէս կը ցուցընէ իւր պատկերները, որ պատերուն ծեփին վրայ նկարուած են ըստ հին սովորութեան։ Հոս է նաև Յոյն միաբանութեան Ժառանգաւորաց դպրոցը, որ քանի մը տարիէ 'ի վեր հաստատեցին։

Յովհաննու Ծնունդ։

95

Խաչավանքէն դէպ 'ի արեւմուտք երկու ժամ հեռու գիւղ մը կայ, որ Յուդայի քաղաք կ'ըսուէր առաջ ըստ Ղուկաս աւետարանչի.

եւ այս քաղաքիս մէջն էր Զաքարիա քահանայապետին տունը, ուր ծնաւ սուրբ Յովհաննէս Կարապետ մկրտիչ Տեառն մերոյ։ Նաեւ այս տեղ վանք մը կայ Լատինաց ձեռքը, որուն եկեղեցին չորս քառանկիւնի սիւներու վրայ կառուցեալ է գմբէթաւոր, եւ աւագ սեղանին աջ կողմը եօթը աստիճան վար Յովհաննու Կարապետի ծննդեան տեղն է, ուր պատարագամատոյց սեղան մը կայ։ Ունի շատ սենեակներ, հիւրանոց, յատկացեալ կրօնաւորներ Ֆրանչիսկեան կարգէն։

Փիլիպպոս աղբիւրը։

96

Փիլիպպոսի աղբիւրը Յովհաննու ծննդեան գիւղէն դէպ հարաւակողմը մէկ ու կէս ժամու չափ ճանապարհ գնալով, փոքրիկ բլրակի մը վըրայ կը տեսնուի, որ անուշահամ ջուր մը ունի։ Երուսաղէմէն մինչեւ այս աղբիւրս, ուր Ներքինին մկրտեցաւ Փիլիպպոս առաքեալէն, երկու ժամու չափ ճանապարհ է. եւ այս աղբիւրիս վըրայ եղած պարտէզը աղբիւրով մէկտեղ հօգեւոյս Զմիւռնացի Յովհաննէս Պատրիարքը 1858 թուականին գնեց Յէլլահներէն, եւ այժմ մեր ձեռքն է։

Սուրբ Փրկչայ վանք։

97

Երուսաղէմի հարաւային դռնէն դուրս ելլելով քառորդ քայլաչափ հեռու սուրբ Փրկչայ վանքն է Հայոց բարձր պարսպով պատած և

երկաթի փոքր դրամք . ունի եկեղեցի մը մէկ խորանով, որու տակն է կամարիչ վէմ մը Յիսուսի գերեզմանին ։ Այն խորանին հարաւային կողմը փոքրիկ մատուռ մը կայ նեղ, որ է երկրորդ բանտն Յիսուսի, և ունի սեղան պատարագամատոյց . աւագ խորանին ետեւի կողմն է պահարանը յատուկ սեղանով . և եկեղեցւոյն բակը դարձեալ պատարագամատոյց սեղան մը կայ սուրբ Չարչարանաց անուամբ ։ Այս վանքս Կայիափայ քահանայապետին տունն էր . ուր տեղ չարչարեցին նախատեցին և բանտարկեցին կենարարն մեր Յիսուս ։ Պետրոս այս տեղս ուրացաւ զՅիսուս երեք անգամ, և իսկոյն հաւը խօսեցաւ . (Ղուկ. ԻԲ. 54) ։ Այս տեղս դարձեալ զղջաց Պետրոս իւր ուրացութեանը վրայ ։ Այն վանքիս մէջ կը թաղուին սուրբ Աթոռոյս հանգուցեալ Պատրիարքները, Լուսարարները, և ուրիշ բազմաշխատ Եպիսկոպոսները ։

1849 Թուականին՝ Կիրակոս սրբազան Պատրիարքը նորոգեց, յատուկ սենեակներ աւելցընելով միաբանից համար ։ Փրկչականուց հիւսիսակողմը ձիթենեաց պարտէզ մը կայ Հայոց, և արեւմտեան կողմը գերեզմանատունն է բոլոր քրիստոնէից, և անոր մէջն է Դաւթի դամբանը ցանկով մը պատած, որուն այցելք կ'իջնեն ։

Հեղեղատի աղբիւրը։

98

Հեղեղատի աղբիւրը՝ Սելովամէն դէպ 'ի հիւսիսակողմը ձորին մէջէն գնալով սակաւ ինչ՝ կամուրջ մը կայ, զոր շղթայակիր Գրիգոր հայրապետն նորոգեց Հայոց ՌՃՀԵ թուականին, որուն արեւելից կողմը Ջրհոր մը կայ և փոքր պարտէզ մը՝ որ Հայոց ձեռքն է. և այս կամուրջին տակը երանելի Յակոբ Տեառնեղբայր Արդար առաքեալը ընդունեց իւր մարտիրոսական պսակը անխիղճ թափչաց ձեռքով իւր գլուխը ջախջախուելով աշտարակէն վար գահավէժ ընելնէն յետոյ, ինչպէս որ Յայմաւուրք կը գրէ դեկտեմբեր 24։

Անգէ ու Զաքարիա մարգարէից գերեզմանները։

99

Վերոյիշեալ կամուրջին վերի կողմը դէպ 'ի Ձիթենեաց լերան դին վիմատաշ քառանկիւնի սրածայր արձան մը կը տեսնուի, որուն մէջ թաղուած են Անգէ ու Զաքարիա մարգարէները. (Բ. Մնաց. 20.)։

Տեառնեղբօր այրը։

100

Վերոյիշեալ արձանին աջակողմը այր մը կայ, որուն գաւիթը երկու քարեայ սեանց վրայ յեցեալ է դէպ 'ի արեւմուտք, և այրին լուսամուտները կամուրջին կը նային։ Այս այրիս մէջ

առանձնացաւ. Տեառնեղբայր առաքեալը Յա-կոբ՝ Յիսուսի չարչարանաց գիշերը, և երդուաւ ոչ ուտել և ոչ ըմպել մինչեւ Յիսուսի յարու-թիւնը տեսնէ։ Ու կը պատմէ Յայսմաւուրք Դեկտեմբեր 25 ին՝ թէ յետ յարութեան, Յի-սուս հաց և սեղան բերաւ այս այրին մէջ և մխիթարեց իւր եղբայրը ըսելով. "Կեր եղբայր զհացս, զի որդին մարդոյ յարեաւ ՚ի մեռելոց"։ Բայց այս սուրբ տեղս այժմ աւերակ է, և փարախ ոչխարաց։

Աբիսողոմայ արձանը։

## 101

Վերոյեալ կամուրջին արեւելեան կողմը քա-ռանկիւնի վիմատաշ լուսամուտով գմբէթի ձեւ-արձան մը կայ, որուն գլուխը սիւնաձեւ միա-հատոր քար մի է, և կ՚ըսուի թէ Աբիսողո-մայ դրոշեալ ձեռքը դրուած էր այս արձանին վրայ. և մանաւանդ Աբիսողոմ զաւակ չունե-նալուն համար՝ ՚ի յիշատակ անուան իւրոյ այս արձանը կանգնեց, որ իւր անունը չմոռցուի. (Բ. Թագ. ԺԸ. 18)։

Յովսափաթու գերեզմանը։

## 102

Աբիսողոմայ արձանին աջակողմեան անկիւնը արեւելից կողմը վիմափոր մեծ այր մը կայ, ո-րուն դուռը շատ գեղեցիկ արուեստիւ քան-դակուած էր, բայց 1854 Թուականին Հրէա-ները այս այրին դուռը մեծամեծ քարերով գո-

ցեցին, և վերջին հաւասար պատերով դուռը անհետ ըլլին որ մարդ ներս չմտնէ. այս այրին մէջն է Յովասափաթ Թագաւորին գերեզմանը. և այս գերեզմանիս համար է որ ձորին անունն ալ Յովասափաթու ձոր կը կոչուի, որ առաջ Կեդրոնի ձոր կ'ըսուէր։

Հայր Սաբայի վանքը։

## 103

Դէպ 'ի Աբբայ հոր դառնալով ձորամիջաւ և անկէ դէպ 'ի հարաւ երեք ժամու ճանապարհ է Հայր Սաբայի վանքը. և ճանապարհին վրայ սուրբ Թէոդորոսի անունով վանք մը կայ՝ որ աւերակ է։ Այս տեղէս անցնելով կ'երթայ ձորոյն այն կողմը լերան մէջ՝ ուր տեղ վանք մը կայ և վանքին տակը այր մը, որուն մէջ աղբիւր մը կայ բարեհամ, և վանքն է մեծադիր քարաշէն, և երկու բուրգեր ունի, և ութը եկեղեցի, առաջին եկեղեցին է Սաբայի, երկրորդ եկեղեցին յանուն սրբոց Քառասնից մանկանց, երրորդը՝ սրբոյն Յովհաննու Կարապետին, չորրորդը՝ յանուն սրբոյն Գէորգայ, հինգերորդը՝ սրբոյն Յովհաննու Ոսկեբերանին, վեցերորդը՝ սրբոյն Նիկողայոսի, եօթներորդը՝ Յովհաննու Դամասկացւոյն, ութերորդը՝ սրբոց Առաքելոց, որ Հայոց նախարարներէն շինուած է, բայց այժմ բոլորովին քանդուած է։ Այն Հայր Սաբայի ըսուած վանքը՝ նախ Սաբայէն շինուեցաւ, երկրորդ՝ Կիւռ Մանուէլէն նորոգեցաւ ամուր պարիսպներով. և շատ ալ սենեակներ ունի, նա և

սեղանատուն, եւայլն ։ Նորեմն Սրբացիք շատ կրօնաւորներ նահատակեր են այս տեղս ։

Յովհան Դամասկացին՝ որ Յունաց երեւելի վարդապետներէն մէկն էր, այս տեղս մնալով, քանի մը գրեանք յօրինեց և յարութեան երգերը խօսեցաւ ։ Կը պատմուի թէ այս վանքս առաջ Սռֆաց էր, բայց այժմ Յունաց միաբանները կը բնակին. շէնքը շատ փառաւոր է, և արտաքոյ վանուցս հարաւակողմը գմբէթ մը կայ, որուն տակն է սրբոյն Սաբայի գերեզմանը, որ 531 Թուականին վախճանած է ։ Նոյն լուսինաց Սկիթոփոլոս պատմիչը կը գրէ, թէ սուլթան Սէլիմ Երուսաղէմի տիրած ժամանակ, իւր կառավարիչներէն մէկը Երուսաղէմ խրկեց իբր այցելութիւն մը ընելու. բայց նոյն այցելուն որ անգութ մարդ մը էր, Հայր Սաբայի կրօնաւորներէն հազարի չափ թրէ անցուց, որոնք իրեն տեսութեան եկած էին, և միայն քանի հոգի ապրեցնելով անոնցմէ՝ իրենց տեղը խրկեց ։ Վերոյիշեալ պատմիչը կը յաւելու, թէ նոյն անգութ իշխանին ներկայանալով ինքն ալ, կոտորածին պատճառը հարցուց. որուն պատասխանեց իշխանը, թէ այսչափ քրիստոնէին մէկտեղ բնակիլը աղէկ չէ մեր տէրութեան, ուստի պէտք է նուազեցընել ։ Նոյն Մարինոս պատմիչն ալ առաջին գրքին ութերորդ գլխոյն մէջ կը հաստատէ վերոյիշեալ վանուց բազմաթիւ կրօնաւոր ունենալը. և Յովհան Դամասկացւոյն ժամանակը կ՚ըսէ, նոյն վանքին մէջ հազարէն աւելի կրօնաւորներ կը բնակէին ։

Ագրիպպայ ագարակը։

# 104

Երուսաղէմայ հիւսիսային կողմը տակաւ ինչ հեռանալով բարձր վէմ մը կայ, և անոր տակը տուն մի, և աջակողմը այր մը որ վիմափոր է, և ձախակողմը քանի մը Տաճկաց գերեզմանատուններ կան. այս տեղս շրջապատեալ է պարսպաւ, ուր կը նստի տէվրիշ մը. և այրին ճանապարհին վրայ թզենիներ կան որոնց տակը ննջեց վաթսուն և ութ տարի Երեմիա մարգարէին աշակերտն Աբդեմելէքը, և այս է Ագարակն Ագրիպպայ ըսուածը, ինչպէս Յայսմաւուրն ալ կը պատմէ 'ի մայիսի մէկ։ Բաբելոնի գերութեան ժամանակ, կ'ըսէ, խրկեց զինքը մարգարէն որ թուզ բերէ հիւանդաց համար. ան ալ կթոց մը թուզ քաղելով դրաւ գլխուն տակը, որ քիչ մը քնանայ. և այս քունը վաթսուն և ութ տարի քշեց. երբ արթնցաւ աշխարհք փոխուած գտաւ, բայց թուզերը դեռ դալար էին։

Թագաւորաց գերեզմանք։

# 105

Վերոյիշեալ տեղէն տակաւ ինչ դէպ 'ի հիւսիսակողմը երթալով, վիմափոր այր մը կայ, որուն դուռը ճարտար արուեստիւ քանդակուած է. և այս է Թագաւորաց գերեզմանը, որուն մէջ բազմաթիւ փոքրիկ խորշեր կան քարափոր, որոնք են գերեզմանք իւրաքանչիւր Թագաւորաց։

# 106

Երուսաղէմէն մինչեւ Չամիլջէ գիւղը՝ ուր հնագոյն աւերակ եկեղեցի մը կայ, 3 ժամ է. և անկէ մինչեւ Սիւքար 7 ժամ, որ ընդ ամենը տասը ժամ կ՚ընէ։ Այս Սիւքարի ճանապարհին վրայ աղբիւր մը կայ, որուն համար կը դրէ Յովհաննէս աւետարանիչը թէ՝ «Եւ Յիսուս վաստակեալ ՚ի ճանապարհէն, նստաւ ՚ի վերայ աղբերն, և էր ժամ իբրեւ վեցերորդ, և անդ էր ջրհորն։ Գայ կին մի Սամարացի հանել ջուր, և Յիսուս խնդրեաց ՚ի նմանէ ջուր, և խոստացաւ տալ նմա զջուրն կենդանի. և կինն խնդրէ զի մի երբէք ծարաւիցի ՚ի յաւիտեան» եւայլն։

Այս տեղէս մինչև Իսրայէլացւոց արքայանիստ քաղաքն Սամարիա երկու ժամ է. և այս Սամարիա քաղաքիս մէջ Հայք եկեղեցի մը ունէին, որ այժմ այլազգեաց ձեռքն է. և այս տեղէս կէս ժամ հեռու է Սեբաստիա գիւղը, ուրտեղ է Յովհաննու Մկրտչի բանտը, և ըստ ոմանց գերեզմանը, որ ՚ի Մակերոնդ նահատակեցին։ Կայ հոս ուրիշ եկեղեցի մ՚ալ, բայց այժմ աւերակ է։ Այս տեղս է նաեւ Եղիսէի և Աբդիու մարգարէից գերեզմանները՝ ըստ Հերոնիմոսի վկայութեան։ Այս կողմերս է դարձեալ Սիւքէմը, ուր ամփոփեցին Յակոբայ որդւոյն ողջախոհ Յովսէփայ ոսկորները։

Նայինի քաղաքը։

## 107

Սամարիայէն մինչեւ Նայինի քաղաքը՝ որ հիմա Նէնին կը կոչուի, վեց ժամ է։ Այս քաղաքիս դրանը առաջը յարոյց Քրիստոս ՚ի մեռելութենէ այրի կնկան միամօր որդին. (Ղուկ. ԺԱ. 15.)։

Թափօրական լեռը։

## 108

Թափօրական լեռը Գալիլեայի դաշտին մէջ Կանայ գիւղին մօտ է, Նազարէթ քաղաքէն երեք ու կէս ժամու չափ հեռաւորութեամբ, որ բոլորակ բարձրաւանդակ ծաղկաւէտ լեռ մի է, և այս լերան վրայ պայծառակերպեցաւ Քրիստոս Տէրն մեր ՚ի տես երից սրբազան Առաքելոց. եւս և Մովսէսի և Եղիայի ներկայութեամբ հաստատուեցաւ նորա Աստուածութիւնը՝ կենդանեաց և մեռելոց։ Այս լերանս վրայ երեք եկեղեցի կային, որոնց հիմերը մինչեւ ցայսօր կ'երեւին, և այժմ եւս Ռուսաց ազգը եկեղեցի և բնակութիւն կը շինէ։ Նոյն այս դաշտին մէջ փոքր բլուր մը կայ, որ Նշանելի լեռ կը կոչուի. այս այն լեռն է՝ ուր Քրիստոս տէրն մեր գիշեր մը աղօթեց, և առաւօտեան աշակերտները կոչելով երկոտասան առաքեալները ընտրեց. (Ղուկ. Զ. 19.)։ Այս լերան արեւելեան կողմը աւերակ եկեղեցի մը կայ, և Յակոբ նահապետի Յովսէփ որդւոյն նետուած ջա-

մեծ հորն ալ այս տեղ է, ուրկէ հանելով իւր եղբայրները՝ Մադիանացւոց վաճառեցին. (Ծն. ԼԶ. 22, 24.)։

Նազարէթ քաղաքը, Տիբերիա, եւ Բեթսայիդա։

## 109

Նային քաղաքէն մինչեւ Նազարէթ 6 ժամ է, ուր Գաբրիէլ հրեշտակապետն սուրբ Կուսին աւետիս տուաւ. (Ղուկ. Ա. 26)։ Այս տեղ է Աստուածահայր Յովսեփայ տունը, որ փառաւոր վանք մի է Լատինաց ձեռքը. այս տեղս է եւ այն աղբիւրը, ուր սուրբ Կոյսն աւետիս ընկալաւ 'ի հրեշտակապետէն. դարձեալ հոս է այն տունը՝ ուր տեղ Փրկիչն մեր Եսայի մարգարէին գիրքը կարդաց. (Ղուկ. Դ. 17)։ Այս տեղս է Արտեւան լերինը, ուր կենարարն մեր Յիսուս գահավէժ ընելու համար հանեցին. (Ղուկ. Դ. 26)։ Եւ այս տեղւոյս մերձ է Կանա Գալիլեայ կոչուած տեղը, ուր Քրիստոս Տէրն մեր հարսանիք հրաւիրուելով՝ հոն ջուրը գինիի փոխեց, որ հրաշից սկիզբը եղաւ. (Յովհ. Բ. 11)։ Այս կողմերս է Տիբերական ծովը, ուր Յիսուս փրկիչն մեր տեսաւ Պետրոսը, եւ անոր եղբայրն Անդրէասը. եւ Զեբեդեայի որդիքը Յակոբոսը եւ Յովհաննէսը, որոնք ձուկ կ'որսային, եւ իրենց գործերը ձգելով Յիսուսի ետեւէն գնացին. (Մատթ. Դ. 18. 22)։ Այս քաղաքս Հերովդէս շինեց 'ի պատիւ Տիբերեայ կայսեր։ Մօտ է այս քաղաքիս Բեթսայիդան, որ Պետրոսի, Անդրէասի, Փիլիպպոսի եւ Թովմայի առաքելոց ծնըն-

դեան քաղաքն է. և այս տեղ հինգ հազար մարդիկ կերակրեց Քրիստոս Տէրն մեր հինգ նկանակաւ և երկու ձկամբք, ուսկից տասն և երկու սակառի չափ ալ փշրանք աւելցաւ. (Ղուկ. Թ. 17)։ Նա եւ յետ յարութեան այս ծովուն եզերքը երևեցաւ Յիսուս Առաքելոց, ուր տեղ ցամաքին վրայ տեսան վառած կրակ և ձուկ մի անոր վրայ, և հաց. (Յովհ. ԻԱ. 9)։

Այս տեղը Յիսուս Պետրոսին երեք անգամ հարցուց, թէ «Սիրե՞ս զիս Սիմոն որդի Յովնանու»։ Նաև այս սահմանաց գաւառներուն մէջ Յիսուս շատ ախտացեալ մարդիկ բժշկեց։ Հոս մօտ է նաեւ Կափառնաումը, ուր բնակեցաւ Տէրն մեր, և բժշկեց անդամալոյծն և հարիւրապետին ծառայն և Սիմոնի զոքանչը, և Յայրոս իշխանին դուստրը յարոյց. հոս ամփոփուեցաւ կ'ըսուի նաեւ Յովհաննու Ոսկերչի գլուխը, և առ ժամանակ մի մնաց։

կարմեղոս լեռը։

## 110

Կարմեղոս լեռը Աքեային դիմացն է, ուր Եղիա Բահաղու մարգարէները ժողվեց, և Կիսոնի հեղեղատը իջոյց զիրենք ու կոտորեց։ Այս լերանս գլուխը աղօթեց մարգարէն, և առատ անձրեւ եկաւ. (Գ. Թագ. ԺԸ. 19.). ուր տեղ հիմայ Լատինք վանք մը ունին, և միաբանք Կարմելիտեանք կ'անուանին։

# III

Պէրութ որ Վերիտոն և Բիւրիտոն ալ կ'ըսուի, Փիւնիկեցւոց քաղաք է, և Երուսաղէմէն ցամաքաւ յիսուն և վեց ժամ հեռի է. ուր վանք մը ունիմք, որուն մէջ Ս. Նշան անուամբ եկեղեցի մը շինուեցաւ 1851 թուականին՝ ՚ի Պատրիարքութեան Տեառն Զմիւռնացի Յովհաննէս սրբազան արքեպիսկոպոսի. զոր ինքը գնեց վանքին տեղը ՚ի յիշատակ ազգիս Հայոց։

Երուսաղէմէն ութօրեայ ճանապարհ հեռի հիւսիսակողմը կ'իյնայ Դամասկոս քաղաքը, որ ըստ Սինկայէլի Ասորւոց պատմութեան՝ Սարիքաս Հիւթացին շինուեցաւ՝ Աբրահամու ծընանելէն քանի տարի առաջ։ Դամասկոսին մօտ Թապեայ գիւղ մը կայ, որուն համար կ'ըսուի թէ Աբէլի գերեզմանը հոն է, և Սարինոսի պատմութեան համեմատ՝ այս տեղ Դշխոյն Հեղինէ մեծ եկեղեցի մը շինած է։ Դամասկոսի մէջ է նաև Անանիա առաքելոյն տունը, որ այժմ վանք է ՚ի ձեռս Լատինաց. և նոյն Առաքելոյն գերեզմանը այս քաղաքիս մէջն է, և տաճկաց ձեռքը։ Եւ մեք ևս ունիմք Դամասկոսի մէջ Ս. Սարգսի անուամբ վանք մը, որ ունի յատուկ վարժարան, առաջնորդարան, հոգետուն և բազմաթիւ սենեակներ։ Բայց 1860 թուականին այլազգի բընակիչք մեծ աղմուկ մը հանելով այս երեւելի քաղաքիս մէջ, այրեցին բոլոր քրիստոնէից տուները, որոնց մէջ գտնուեցան նաև և ամէն քրիս-

տունէից վանքերը և եկեղեցիները, որոնք հրոյ ճարակ եղան. և շատ քրիստոնեայներ 'ի սուր սուսերի մաշելով, հարթ և հաւասար ըրին քրիստոնէից թաղերը. բայց կրաստուտէքը զանիրաւան յուղղութիւն ածելով Քրիստոսազօր բազկաւ վերստին շինել տուին այլազգեաց՝ արքունական գանձէն: Նոյնպէս այս հռչակաւոր երեւելի քաղաքիս 1860 թուականին պատահած աղետալի կոտորածն ու հրկիզութիւնը, արժան էր մի լաւ միջէ պարագայներով նկարագրել և ծանօթացունել համայն ազգիս լրութեան, մանաւանդ յետագայից առ 'ի զգուշութիւն, բայց պատմութեան կարգէն չխոտորելու համար, աւելի մանրախոյզ տեղեկագոյն գրչի մը կը յանձնեմ այս աղէտալի դէպքերը նկարագրել, որ յիրաւի անզգայ սրտերն անգամ 'ի կարեկցութիւն և յողբ կը շարժէ:

Սուրբ Ստեփաննոսի քարկոծման տեղը:

## 112

Երուսաղէմի արեւելեան կամ Ս. Աստուածածնի դռնէն ելլելով՝ և տակաւ ինչ զառ 'ի վայր իջանելով՝ ճանապարհի անկիւնը իբրեւ վառաքան ձեւացած քար մը կայ, որուն վրայ քարկոծեցին սուրբն Ստեփաննոս նախավկայն Քրիստոսի. (Գործ. Է. 55): Նոյ կը պատմեն թէ այս տեղս առաջ եկեղեցի՜ կար, բայց այժմ միայն ուխտատեղի է:

# 113

Ա. Աստեփաննոսի քարկոծման տեղէն յարեւելս տակաւ ինչ յառաջանալով ճանապարհին հիւսիսակողմն է Ս. Աստուածածնայ ամենափառաւոր Տաճարը, որ ունի երկբացիկ երկաթեայ դուռ եւ 48 աստիճանաւ կ'իջանէ մինչեւ եկեղեցւոյն ատեանը, որ խաչաձեւ շինուած է Հեղինէ Թագուհիէն։ Վերոյիշեալ երկաթեայ դռնէն ներս մտած ժամանակ քարով հիւսուած դռներ կ'երեւին, ուսկից առջի ժամանակները իւրաքանչիւր ազգ իւր առանձին վանքը կ'ելլէր. վասն զի այս տուրք Տաճարիս վրայ մեծամեծ վանքեր կային կուսանաց։ Բայց վերջի ժամանակները այլ ազգեր քանդելով, նոյն քարերով Սողոմոնի Տաճարը շիներ են. իսկ հիմայ նոյն վանքերուն տեղերը ձիթենեաց պարտէզներ են, միայն Տաճարը փառաւոր մնացած է, ուր տեղ է սրբուհւոյ Կուսին գերեզմանը։ Վերոյիշեալ 48 աստիճաններուն կէսը իջած ժամանակ, երկու կողմէն կամարներ կան, որոնց արեւելեան կողմը՝ որ Յունաց է, Յովակիմ Աննայի գերեզմաններն են. իսկ արեւմտեան կողմի կամարը՝ որ Հայոց ազգին է, Հայր Յովսէփի գերեզմանն է։ Նոյն կողմը դարձեալ աստիճաններուն հատած տեղը սենեակ մը ունիմք իբր աւանդատուն, եւ հանդէպ նորա է Յունաց սեղանը, որ նախ Վրաց էր. եւ մեր սենեկին հիւսիսային կողմէն դէպ արեւմուտք կամար մը եւ պատարագամա-

այց սեղան մը կայ, զոր նորոգեցինք 1863 թըւականին, և այժմ Պապիկը մեր հրամանաւը կը պատարագեն չորեքշաբթի և ուրբաթ օրերը. Եւս և սեղանին ետեւի կողմը հոր կայ որ մեր ազգինն է. և կամարին կից սենեակ մը եւս ունիմք, որուն դուռը այժմ քարով հիւսուած է առ նախանձու օտար ազգաց։ Իսկ հիւսիսակողմը սենեակ մը կայ Յունաց, և արեւելեան կողմը սենեկին մօտ՝ է սեղան 'ի ձեռս Յունաց, որ նախ Հապէշից էր։ Արեւելեան կամարի տակը երթալով կամարի հարաւային որմը Յունաց է, իսկ հիւսիսային որմը Հայոց՝ համդերձ պատկերօք և զարդուք։ Այս կամարին տակն է ամենասուրբ կուսին գերեզմանը. երկու դուռ ունի, արեւմտեան կողմի դուռը Յունաց է, իսկ հիւսիսայինը Հայոց. և սուրբ գերեզմանին վրայ եղած կանթեղները, մոմակալները, զարդերը և սփռոցները, հաւասար թուով Հայոց և Յունաց են՝ առանց իրարմէ աւելի կամ պակաս զարդ մը ունենալու։ Սուրբ գերեզմանին վրայ ամեն օր սուրբ պատարագ կը մատուցանեն երկու ազգ, այսինքն Հայք և Յոյնք։ Գերեզմանին արեւմտեան դրան կից եղած սեղանը Հայոց է, ուր պատարագ կ'ըլլայ. ասիկայ Հայոց երկրորդ Հեթում թագաւորէն կառուցեալ է, ինչպէս որ նոյն երանելւոյն յիշատակը յիշատակարանաց մէջ արձանագրեալ կը գտնեմք։ Սուրբ գերեզմանին հիւսիսային դըրան դիմաց կամարին տակը սեղան մը կայ պատարագամատոյց, որուն վրայ Ասորիք կը պա-

տարագէն . գերեզմանին ետեւի կողմը արեւելեան կամարին տակը Յոյնք ալ ունին իրենց յատուկ պատարագամատոյց սեղան :

Առաքելոց նշման տեղը։

**114**

Այս սուրբ Տաճարէս դուրս ձախակողմը երկաթեայ դուռ մը կայ, ուսկէ ներս մտնելով կը գտնես եկեղեցի մի Լատինաց, որ երեք խորան ունի, և ամեն օր Լատին կրօնաւորք կը պատարագեն :

Քրիստոսի ըմբռնման տեղը։

**115**

Նոյն Տաճարէն դուրս դէպ 'ի արեւելք Ձիթենեաց լերան ճանապարհին աջակողմը պարտէզ մը կայ Լատինաց ձեռքը՝ շրջապատեալ պարսպաւ, որուն մէջ քանի մը հնագոյն ձիթենիի ծառեր կան, որոնց աւանդութեամբ ողջունի ծառեր կ'ըսուին : Պարտէզին կից հարաւակողմը տակաւ ինչ յառաջանալով անել ճանապարհին գլուխը, քարամայրերու կոյտ մը կայ, որոնց մէկ քանիին վրայ խաչի նշաններ նկարուած են, այն է Քրիստոսի ըմբռնման տեղը եւ պարտէզը՝ ուր որ կ'աղօթէր առ Հայր ըսելով. « Հայր, անցո՛ զբաժակս զայս յինէն . բայց ոչ իմ կամք, այլ քոյդ եղիցի . (Ղուկ. ԻԲ. 24.) : Այս տեղս Յուդան զինուորներով Յիսուսի վրան գալով բռնել տուաւ զինքը : Այս տեղս դարձեալ

Պետրոս առաքեալ քահանայապետին ծառայ Մաղքոսին ականջը կտրեց, որ բժշկապետն Յիսուս վերստին տեղը դարձունելով առողջացոյց։ Հոս չար Հրէաները Յիսուսի ձայնը լսելով գետինը զարնուեցան։ Կան որոյ պէտք է քրիստոնէից երկիւղածութեամբ և ջերմեռանդութեամբ երկրպագանել այս սրբազան տեղը, ուր այսչափ անօրէնութիւնք և հրաշք գործեցան։ Յիշեալ տեղէս յիսուն ոտնաչափ դէպ 'ի վեր քար մը կայ, որուն վրայ ննջեցին սրբազան առաքեալք, այսինքն Պետրոս, Յակովբոս և Յովհաննէս, զոր Յիսուս երեք անգամ եկաւ արթնցուց զիրենք. այս տեղս ալ ուխտատեղի է և կը պատուի ամեն քրիստոնեայ ազգերէն։

Դարձեալ վեր ելլելով ուղիղ ճանապարհին վրայ և քիչ մը դէպ 'ի արեւելք շեղելով, պարտիզէ պատին տակովը քար մը կայ, որուն վրայ բազմեցաւ Յիսուս երբ Զիթենեաց լեռնէն աւանակաւ Երուսաղէմ Տաճարն եկաւ. և այս տեղս մերձեցան Յիսուսի քով Աբգար Թագաւորին դեսպանները և առաքելոց հետ տեսութիւն ըրին. և յԵրուսաղէմ Գամաղիէլի տունը նստած ժամանակ Աբգարու գիրը ներկայացուցին Յիսուսի Տեառն մերոյ, որուն պատասխանը Թովմաս առաքելոյն ձեռօք գրել տալով հանդերձ սուրբ երեսաց դաստառակովը, նոյն բարեպաշտ Թագաւորին խրկեց ըստ պատմութեան խորենացւոյն և այլոց օտար պատմչաց։

Սուրբ Աստուածածնայ ազօթած տեղը։

## 116

Վերջիշեալ Յիսուսի բազմած տեղէն դէպ ՚ի հիւսիս՝ սակաւ ինչ հեռի քար մը կայ գետինը թաղուած, որուն շրջապատը Յոյնք 1860 թուականին քարամբ պարսպեցին. այս քարիս վրայ Ս. Կոյսն կ՚աղօթէր սուրբ Ստեփաննոսի քարկոծման ժամանակը, և ուխտատեղի է ամենայն հաւատացելոց։

Քրիստոսի արտասուած տեղը զոր աւետարանիչը կը յիշէ։

## 117

Վերջիշեալ տեղէն քարընկէց մը հեռու՝ աջ կողմէն վեր ելլելով բուրգ մը կայ, ուր տեղ Յիսուս արտասուեց երբ Երուսաղէմ՝ եկած ժամանակ քաղաքը տեսաւ ու լացաւ. "Եթէ գիտէիր դու գոնէ յաւուրս յայսմիկ զխաղաղութիւն քո," և այլն. (Ղուկ. ԺԹ. 41)։ Հին ժամանակ այս տեղս վանք կար, բայց այժմ ձիթենեաց պահպանութեան համար այլ ազգի պահապաններ կը բնակին. և այս վանքը՝ ըստ հնախօսութեան Հայաստանի, Վարաժնունեաց նախարարներէն շինուած էր։

Յանդիման տաճարին։

## 118

Երկու քարընկէց հեռաւորութեամբ ճանապարհ է վերջիշեալ վանուց. և այս վանուցս քայքայեալ պարիսպները և խորանի տեղերը

յայտնի կ՚երեւին ցարդ եւս. և Յիսուս այս վանքիս տեղը նստելով, և Պետրոս, Յակոբոս, և Յովհաննէս մօտենալով իրեն՝ հարցուցին Տաճարին գեղեցիկ քարերուն և շինութեանը համար. որոնց պատասխանեց Քրիստոս, թէ "Տեսանէք զայդ ամենայն, ամէն ասեմ ձեզ ոչ մնասցէ քար ՚ի քարի վերայ, որ ոչ քակտեսցի," և այլն. (Մար. ԺԳ. 3): Կը գրէ Մարկոս պատմիչը, թէ երբ որ Յուլիանոս հրաման ըրաւ Հրէից որ Տաճարը շինեն, շինելու ժամանակ յանկարծ կրակ ելլելով այրեց նիւթերը և շինողները, եւս և արեան խաչի ձեւեր տեսնուեցաւ եկեղեցական անօթներուն վրայ. ուստի այնպէս քայքայեալ մնաց մինչեւ Օմէր Խաթթապի ժամանակը, որ Երուսաղէմը առաւ և ձեռնարկութիւն ըրաւ Տաճարը շինելու իւր ազգին համար. բայց ցերեկը կը շինէին, գիշերը կը քանդուէր: Երբ որ Օմէր Հրէաները կանչելով քանդման պատճառը հարցուց, պատասխանեցին թէ. "Չիթենեաց լեռը յանդիման Տաճարին ըրուած աղբը քրիստոնէից վանքին գմբէթին վրայ խաչ կայ կանգնեցուցած, այն խաչէն է որ այս շինութիւնը կ՚աւրուի": Հաւատալով Օմէր անոնց խօսքին և բարկանալով բոլոր վանքը քանդել տուաւ, և է աւերակ մինչեւ ցարդ:

### Տերունական աղօթքը սորվեցուցած տեղը:

## 119

Յանդիման Տաճարէն սակաւ ինչ դէպ ՚ի վեր. տափարակ տեղ մը կայ, ուր տեղ սորվեցուց

Յիսուս Առաքեալներուն աղօթելու կերպը, որ է Հայր մերը։ Եւ Համբարձման օրը Կենարարն մեր այս տեղս խորխոխ մեղու և ձկան մասը կերաւ, ուր աշակերտաց ներկայ էին. ՚ի յիշատակ որոյ փառաւոր վանք մը կար առաջին ժամանակը, բայց հիմայ աւերակ է, և միայն կամարները ու տեղերը կ՚երեւին։ Եւ այս վանքիս մօտ քարէ սիւնի կտոր մը կայ, որու վրայ օրհնեց Յիսուս իւր աշակերտները և մեկնեցաւ անոնցմէ։

Համբարձման լեռը։

## 120

Վերոյիշեալ վանքէն սակաւ ինչ դառ. ՚ի վեր ելլելով, լերան գլուխը Քրիստոսի համբարձման տեղն է։ Այս սուրբ տեղս նախ՝ մեծ և հռչակաւոր վանք կար Ս. Յարութեան տաճարին ձեւովը շինուած. բայց 614 Թուականին Պարսից Խոսրով Թագաւորը երբ որ Երուսաղէմը առաւ, այս սուրբ վանքն ալ աւերեց, և յետոյ անորիկ 1187 Թուականին՝ Եգիպտոսի սուլթան Եուսուֆ Սալահատտինը Լատինաց ձեռքէն Երուսաղէմը առնելով, և քանի մը սուրբ տեղերը քանդելէն յետոյ՝ աւերակ վանքերն ալ իրեն սեփհականեց, որոնց մէկն էր այս սուրբ Համբարձման վանքը։ Բայց յետոյ վերջին ժամանակները, քրիստոնեայք միանալով ազատեցին այս սուրբ տեղը Արաբացւոց ձեռքէն. և Յիսուսի ձախ ոտից քարին վրայ, ուսկէ որ համբարձաւ, փոքր մատուռ մը շինուեցաւ որ կայ

մինչեւ ցայսօր . և տարին երկու օր իւրաքանչիւր
քրիստոնէից ազգեր հոն երթալով պատարագ
կը մատուցանեն իրենց առանձին սեփական սե-
ղաններուն վրայ, որոնք շինուած են այն աւե-
րակ մեծ վանքին տեղը, որ այժմ առանց ծած-
կոյթի գաւիթ է։

Այս ալ արժան կը համարիմ ծանուցանել.
որ 1834 Թուականին, մեծ շարժ ըլլալով խախ-
տեցաւ նոյն փոքրիկ մատրան գմբէթը, որ է 'ի
վերայ ոտնատեղւոյն Քրիստոսի, և Լատինք
կամեցան նորոգել. բայց Հայք և Յոյնք հա-
ճութիւն չտալով՝ ուզեցին որ իւրաքանչիւր
ազգ իւր սեփական տեղը շինէ, և Երուսաղէմի
դատաւորը հրաման ընելով ըսաւ. « Ով որ հը-
րովարտակ ունի՝ պէտք է այն ազգը շինէ ». և
բաց 'ի Հայոց ազգէն՝ միւս ազգաց քով չըլլա-
լուեցաւ հրովարտակ. ուստի Հայք նոյն հը-
նագոյն հրովարտակը նորոգելով 1837 Թուակա-
նին՝ շինեցին սուրբ Համբարձման գաւթին դը-
րան հիւսիսային կողմը քանի մը սենեակներ
տախտակամած առաստաղներով, և արեւելեան
կողմը պատարագամատոյց սեղանով մատուռ մը
կանգնեցին, ուր ամէն օր կը կատարուէր Փըր-
կարար խորհուրդը սուրբ պատարագին՝ հան-
դերձ ժամերգութեամբք։ Բայց դժբաղդաբար
երկար ժամանակ չվայելեցին այս երջանկութիւ-
նը, վասն զի Յոյնք և Լատինք նախանձով լը-
ցեալ, մահմետականաց մատնեցին, թէ այս
տեղը մզկիթ էր և քրիստոնեայք մասն չունէին.
ուստի 1839 Թուականին յունիսի 10 ին, յերու-

կարծում պահու գրոհ տալով այլազգիք և Հրէայք, և որ սարսափելին է՝ նոյն իսկ քրիստոնեայք, կործանելով հիմնայատակ ըրին Հայոց փառաւոր շինութիւնը, և ամենեւին նշան մը չթողին։ Յիրաւի արտասուաց արժանի է այս գործս ոչ թէ միայն սուրբ տեղւոյն կորուստը, այլ եւ քրիստոնէից կոյր նախանձն ու մախանքը, որ այլակրօնից անգամ ծանր է այսպիսի եղեռն ոճրագործութիւն մը, որ Հայոց եկեղեցւոյն գործեցին։ Ինչ և իցէ, Տէր տայէ զգաստութիւն այնպիսի չարագրգիռ ոգւոց, որ չսիրաւորեն իրենց եղբայրները և չմահացուցանեն իրենց հոգիները գաղտնական կիրքերէն յաղթըւելով, այսինքն ատելութենէն։ Նաև արտաքոյ այս գաւիթին՝ աջակողմը մզկիթ մը կայ ներքնատընով, որուն տակն է գերեզման Նոտրոքացի պաշտպանող Գեղեքեայ կուսին, որ հինգերորդ դարուն փոքր Թէոդոսի ժամանակ փոխեցաւ 'ի Տէր։ Տես 'ի Վարս սրբոց հատոր ԺԲ. երես 295։

Գալիլեա։

121

Համբարձումէն հինգ րոպէ գետ 'ի հիւսիսակողմն է Գալիլեան, ուր ժամադիր եղաւ Յիսուս աշակերտաց, և յարութենէն ետքն ալ այն տեղ երեւցաւ իրենց. (Մատ. ԺԸ. 16, 20)։ Այս սուրբ տեղս նախ եկեղեցի էր, բայց անօրէն բարբարոսները կործանեցին, և այժմ դարձեալ ուխտատեղի է։

### Բրաբիոն բուսած տեղը

## 122

*Համբարձման լերան և Գալիլեայի մէջտեղը արևելեան կողմը աւերակ վանք մը կայ, ուր Գաբրիէլ հրեշտակապետն սուրբ Կուսին երևնալով ըսաւ. «Ուրախ լեր բերկրեալդ 'ի կանայս, ահա կոչէ զքեզ Արարիչն և որդին միածին»: Եւ այս ըսելով՝ բրաբիոնեայ պսակ մը տուաւ անոր. ուստի տեղւոյն անունն ալ Բրաբիոն կ'անուանի մինչև ցայսօր: Յայսմաւուր, օգոստոս* 15:

### Բեթանիա եւ Ղազարու գերեզմանը

## 123

*Բեթանիա գիւղը Համբարձման լերան արևելեան կողմն է քսան րոպէի չափ հեռաւորութեամբ: Այս գիւղը մտած ժամանակ ճանապարհէն դուրս ձախակողմը աւերակ դուռ մը կայ, որ Սիմոն բորոտի տունն է, ուր Յիսուս օծաւ 'ի Մարիամայ անուշ իւղով. (Մատ. ԻԶ.* 6.)*: Եւ Ղազարու գերեզմանը՝ ուրկէ յարոյց զնա կենարարն Յիսուս, հասարակ ճանապարհին վրայ է աւերակ ամրոցին աջակողմը: Հոս կենարարն Յիսուս արտասուեց իւր մեռեալ բարեկամին վրայ և աղաղակեաց բարձր ձայնիւ. «Ղազարէ, արի եկ արտաքս»: և յարեաւ չորեքօրեայ մեռեալն», ևայլն. (Յովհ. ԺԱ.* 43.)*: Քսան և հինգ աստիճան վար իջքը այր մըն է խոր և մթին, և անտի չորս աստիճա-*

Ջանէ 'ի կամարակապ այրն, ուրկէ Տէրն մեր կոչեց զՂազար ։

Մարինոս կը պատմէ թէ, այս գերեզմանիս ձախակողմն աւերակ ամրոց մը կայ, զոր Գիւղգան Նշբուաղէմի լատինաց երրորդ թագաւորը շինելով մէջը զօրք դրաւ, որ նոյն տեղի եղած հռչակաւոր Կուսանաց վանքը պաշտպանեն ։ Բեթանիայէն դէպ 'ի հիւսիսային արեւելեան կողմը տասն և հինգ րոպէ հեռի ժայռ մը կայ տապանի նման բոլորակ և կարմրագոյն, որուն վրայ նստած էր երբ Ղազարու քոյրը Մարթան գալով ոտքն ինկաւ անոր ըսելով. «Տէր, եթէ աստ լեալ էիր, եղբայրն իմ չէր մեռեալ»։ Որուն պատասխանեց Յիսուս թէ, «Եթէ հաւատաս՝ տեսցես զփառս Աստուծոյ»։

Սամփսոնի աղբիւրը ։

## 124

Բեթանիա գիւղէն տասն և հինգ րոպէի չափ հեռի դէպ 'ի հիւսիսային արեւելակողմը ձորին մէջն է Սամփսոնի աղբիւրը, որուն Ծնօտի աղբիւր ալ կ'ըսուի, որովհետեւ Սամփսոն իշոյ ծնօտիւ հազար այլազգի մեռցունելէն զկնի ծարաւած ժամանակը առ Աստուած աղաղակեց, և Աստուած իշոյ ծնօտէն ջուր բղխեցոյց՝ և Սամփսոն խմեց. ուստի այն ջուրը մինչեւ ցայսօր նոյն տեղէն կը բղխէ, և կը կոչուի Սամփսոնի աղբիւր. (Դատ. ԺԵ. 15. 19)։

Բեթփագէ։

## 125

Բեթանիայի հարաւակողմը աւերակ գիւղ մը կայ որ Բեթփագէ կը կոչուի․ այս գիւղէս բերին առաքեալք էշն և յաւանակը, որու վրայ նստաւ Յիսուս, և Երուսաղէմ եկաւ․ (Մտթ․ ԻԱ․ 1։ Ղուկ․ ԺԹ․ 50)։

Երիքով։

## 126

Երուսաղէմէն մինչեւ Երիքով վեց ժամ է, և ընդարձակ դաշտի մը մէջ է, և այժմ փոքրիկ գիւղ մըն է բերդով։ Նաւեայ որդի Յեսուն այս տեղս տեսաւ Տիրոջը հրեշտակը․ և այս քաղաքիս պարիսպները հրաշքով կործանեցան, և Ռախաբն ազատեցաւ այս կործանմանէն, որ օրինակ էր դժոխոց կործանմանը, (Յեսու․ Ե․ 13, 14․)։ Նաև Յիսուս այս քաղաքիս մէջ պատահած ժամանակը, Զաքէոս՝ որ կարճ էր հասակաւ, ժանտաթզենիին վրայ ելլելով տեսաւ զՅիսուս․ և Յիսուս ալ անոր մեծ փափաքը տեսնելով, արժան համարեց անոր տունը իջեւանիլ․ և այս Զաքէոս յետ համբարձման Քրիստոսի, Երուսաղէմի եպիսկոպոս ընտրուեցաւ։ Յիսուս Երիքովի մէջ շատ բժշկութիւններ ըրաւ, մանաւանդ Տիմէի որդի Բարդուղիմէոսը լուսաւորեց․ (Մրկ․ Ժ․ 46․)։

Եղիսէ մարգարէի աղբիւրը ։

## 127

Երիքովի և փորձութեան լերան մէջ տեղն է Եղիսէի աղբիւրը, որուն ջուրը սաստիկ դառն ու աղի էր, և Եղիսէն օրհնեաց զայն և աղօթիւք քաղցրացուց. (Դ. Թագ. Բ. 19.)։ Այս ջուրս էր բժշկարար, որուն վրայ եկեղեցի մ'ալ շինուած էր, բայց այժմ աւերակ է։

փորձութեան լեռը ։

## 128

Երիքովի դիմաց արևմտեան կողմն է Փորձութեան լեռը, ուր Քրիստոս քառասուն օր և քառասուն գիշեր ծոմ պահեց. (Մատ. Դ. Բ). և շատ բարձր է, բայց զատ է փորձութեան լեռը այն տեղէն, ուր պահեց Քրիստոս քառասուն օրը։ Առաջին ժամանակները շատ եկեղեցիներ կային այս լերանս վրայ, բայց այժմ աւերակ են։ Երիքովի արևելեան կողմն է Յովհաննու Մկրտչի վանքը և ուրիշ եկեղեցիներ, որք այժմ անծանօթ են մեզ։

Նաբաւ լեռը՝

## 129

Երիքովի դիմացը արևելեան դին հինգ ժամու չափ հեռի է Նաբաւ լեռը, որ Գաղաաթ կը թարգմանուի. ուր ելաւ Մովսէս և տեսաւ Աւետեաց երկիրը տեսնելով մեռաւ, և այն լերան վրայ թաղուեցաւ. բայց մարգարէին գե-

ընդդէմանը մինչեւ ցարդ մեզ անյայտ է. (Թուոց ԼԳ. 47, և Օրն. ԼԲ. 49.)։

Յորդանան գետը։

## 130

Երիքովէն մինչեւ Յորդանան գետը, ուր տեղ մկրտեցաւ Տէրն մեր, երեք ժամ է. այս գետս հիւսիսէն դէպ 'ի հարաւ կ'երթայ, և մեռեալ ծովուն մէջ կը թափի. (Ծնն. ԺԳ. 10)։

Քարեթ ձորը։

## 131

Յորդանանու միւս կողմն է Քարեթ ձորը, և չորս ժամու չափ հեռի. այս ձորան վրայ Եղիա մարգարէն հրեղէն կառօք երկինք վերացաւ. (Դ Թագ. Բ. 11.)։ Յորդանանու մօտ վանք մը կայ Եղիսէոսի և առաջածանք ալ Յովհաննու. և երկու մղոն հեռի է աղբիւրն՝ զոր քաղցրացոյց Եղիսէոս, և հարաւակողմն ալ Քարիտոնի վանքն է։ Տես յայսմաւուրք ապրիլի 25, և սեպտեմբերի 22։

Մեռեալ ծովը։

## 132

Այս ծովս Ասփալտեայ երկրին արեւելեան կողմն է, որ աստի արեւելից ծով ալ կը կոչուի, (Եզեկիէլ ԽԷ. 18.)։ Այս ծովէս աղնիւ աղ, կուպր և ծծումբ կ'ելլէ, և իւր մէջ կենդանիներ, ձուկեր չունենալուն համար մեռեալ ծով

կը կոչուի, և կենդանի չըլլալուն պատճառը՝ կ'ըսուի թէ միւս ծովերէն աւելի ջրին սաստիկ դառնութիւնն է։ Այս ծովուն հարաւակողմն է Սոդոմացւոց երկիրները, զոր Աստուած պատժեց, և միայն Ղովտն իւր ընտանեօք ազատեց հրեշտակաց առաջնորդութեամբը. բայց կինն Ղովտայ հրեշտակաց հրամանին դէմ վարուելով աղի արձան դարձաւ. (Ծննդ. ԺԹ. 26)։

### Քարակ քաղաքը։

## 133

Բեթլէհէմէն տասն և վեց ժամ հեռի Մեռեալ ծովու արեւմտեան կողմը լեռան գլուխը շրջապատեալ պարսպաւ քաղաք մըն է Քարակ բռուածը. և քաղաքէն դուրս արեւմտեան կողմը կէս ժամ հեռի չորեքտասան դարուն բազմաթիւ Հայեր կը բնակէին, ուր կառուցեալ կայ եկեղեցի մը յանուն սուրբ Գէորգայ. և այս տեղւոյս բնակիչներէն տակաւին մէկ երկու Հայ տուն կան, որք այժմ Երուսաղէմ կը բնակին։ Բայց հիմայ քաղաքին բնակիչները Յոյն են, և սուրբ Գէորգայ եկեղեցին ալ տակաւին կը կենայ, որուն դուռը փակեալ է Արաբացւոց կողմէ լինելով։ 1858 Թուականին Երուսաղէմի մէջ ձեռագիր Յայսմաւուր մը գտնուեցաւ, որուն յիշատակարանն էր այսպէս. “Գրեցաւ Յայսմաւուրս 'ի Թուին Հայոց ՉԿԵ, ձեռամբ Վահանայ 'ի Գրագարկ վանս 'ի դուռն Տաճարի սուրբ Աստուածածնի, 'ի Թագաւորութեան մանկահասակ Լեւոնի ար-

քայլ որդւոյ Օշին արքայի, և այլն : Նա Լե-
ւոն Թագաւոր ամենայն Հայոց, ի թուին ՉՀԹ
շնորհեցի գիրքս Քարսկայ Հայոց եկեղեցւոյն,
և այլն : Նոյն կազմեցաւ Յայսմաւուրս ընդօրինակող-
մին վանքը Ս. Յովհաննու Մկրտչի, ձեռամբ
Յովհաննէս արեղայի ի Թիւ Հայոց ՊՂԵ » :

Յոպպէ:

134

Երուսաղէմի արեւմտեան կողմէն ութը ժամ հեռի ծովեզերեայ քաղաք է առանց նաւահանգըստի. նաւով եկող ուղեւորականք ուխտաւորք նախ այս քաղաքս կ'ելլէն, ուր տեղ յատուկ վանք կայ Հայոց և եկեղեցի յանուն Նիկողայոս հայրապետի : Այս տեղն իջաւ նախ Յովնան մարգարէն, որ Տէրոջը երեսէն Թարսիս փախչել կ'ուզէր : Նա այս տեղ կը բնակէր Տաբիթայ բարեպաշտուհին, զոր յարոյց Պետրոս առաքեալն. և այս տեղ տեսաւ Պետրոս երկինքը բացուած և այն կտաւը՝ որուն մէջ թռչնոց, սողնոց, չորքոտանեաց տեսակներ կային : Այս տեղի Հայոց վանքը, նախ Եղիազար Կաթուղիկոսը նորոգեց 1667 Թուականին. երկրորդ Շղթայակիր Գրիգոր հայրապետը. երրորդ՝ Գաբրիէլ Պատրիարքի ժամանակ աւելի ինչ շինութիւն եղաւ : Այն քաղաքիս մէջ կան ուրիշ ազգաց վանքեր ալ, ինչպէս Լատինաց, Յունաց և հռոմէադաւան Յունաց : Հարաւային կողմի ծովեզերքն էր՝ ուր սպանքուցի մեծահաւատ կինը տուրը առաքելոյն Յա-

կոխքայ անդրուխ մարմինը սիւնի մը կապեց, ուր Սպանիա տանել կուզէր ։ Տես Յայսմաւուրք դեկտեմբերի 28 ։

Ռէմշէ։

135

Յոպպէէն 'ի Ռէմլէ երեք ժամ է դէպ յարեւելք, ուր տեղ ունիմք մեծ վանք և եկեղեցի յանուն սրբոյն Գէորգայ, և միաբան տեսուչ վարդապետ մը և քանի մը միաբանք, որոնք կ'ընդունին Յոպպէ ելլող ուխտաւորքը հոն եկած ժամանակ, և մէկ գիշեր հանգստացընելէն յետոյ՝ միւս օրը սուրբ Երուսաղէմ կ'ուղարկեն ։

Լաթրոն գիւղը։

136

Ռէմլէէն դէպ 'ի Երուսաղէմ՝ երեք ժամու ճանապարհ է Լաթրոն գիւղը, ուր հնաշէն քայքայեալ մեծ վանք մը կայ յանուն Մակաբայեցւոց. բայց այժմ այլազգաց ձեռքն է ։ Եւ այս տեղէս երեք ժամու չափ դէպ 'ի արեւելք դիմելով՝ կը տեսնուի Երեմիա մարգարէին Անաթովթ քաղաքը, որ այժմ գիւղ է, և ունի քայքայեալ եկեղեցի մը ։

Արեմաթ գիւղը։

137

Անաթովթէն մէկ ժամ հեռու դէպ 'ի արեւելք բարձրաւանդակ բլրի մը վրան է Արեմաթ, որ Սամուել մարգարէին գիւղն է, և ու-

նի խանդարեալ վանք մը և եկեղեցի, որուն մէջն է Սամուէլի գերեզմանը։

---

Սուրբ Յակոբայ վանքը։

138

Սուրբ Յակոբեանց հրաշալիերս և պայծառաշէն վանքը, որ մեծ Հեղինէ Թագուհիէն սկսեալ մինչև ցայսօր Հայոց ազգին ձեռքն է, որուն մէջ կը բնակին Հայոց Պատրիարքը, եպիսկոպոսունք, վարդապետք, սարկաւագունք, դպիրք, և այլ բազմազգեաց միաբանք․ որոնց թիւը հարիւր յիսունի կը հասնի։ Նաև տէրունական ուխտաւորաց բնակութիւնն ալ այս վանքին մէջն է։ Վասն որոյ երանելի նախնիք բարեպաշտ և աստուածասէր ժողովրդոց տրօքն և ողորմութեամբը 300 էն աւելի սենեակներ շինած են 'ի հանգստութիւն ջերմեռանդ ուխտաւորաց։

Սուրբ Յակոբայ վանքին մէջ գտնուած ուխտատեղիքը և եկեղեցիները։

139

Նախ՝ փառաւոր վանքիս սուրբ եկեղեցւոյ գաւիթը մտած ժամանակ կը տեսնես ահաւոր դատաստանի պատկերը, որ եկեղեցւոյ աւագ դրան վրայ դրուած է․ և սոյն դրան երկու կողմը դարանի ձեւով երկու պատարագամատոյց սեղաններ կան մէկը յանուն սրբոյն Գէորգայ, և միւսը յանուն Նիկողայոսի սքանչե-

բագարծ Հայրապետի, ուր յատկացեալ օրեր պատարագ կը մատուցուի. եւ այս գաւթիս մէջ թաղուած են Լեւոն Թագաւորի Մարիամ Թագուհին, եւ իւր Ռենեա դուստրը. եւս եւ Ներսահամ, Յովհաննէս եւ Դաւիթ պատրիարքները. եւ գաւթին որմերն ալ զանազան հրաշալի պատկերներով զարդարեալ է։ Նաեւ դռնէն 'ի զատ երկրորդ դուռ մ'ալ ունի, որուն Դրախտի դուռ կ'ըսեն, եւ եկեղեցականք այս դռնէն կը մտնեն։ Երրորդ դուռն է սուրբ Էջմիածնայ եկեղեցւոյն, ուսկէ կանայք կը մտնեն։ Էջմիածնայ եկեղեցւոյն մէջէն երկրացիկ դուռ մը կայ, որ սուրբ Յակոբայ եկեղեցին կը հանէ. եւ սոյն եկեղեցւոյս հարաւակողմը աստիճաններ կան, ուրկէ կանանց վերնատունը կ'ելլուի. եւ աստիճաններուն կողքին դէպ 'ի արեւելք Սինէական սեղանն է, որուն տակը երեք քարինք կան, որոնց մին Սինէական լեռնէն, մին Յորդանանէն, եւ միւսը Թաբօրական լեռնէն բերուած են։ Նաեւ այս եկեղեցին ունի աւագ սեղան մը յանուն սուրբ Էջմիածնի, ուր Տապանակի տօնին եւ այլ մէկ քանի յատկացեալ օրեր պատարագ կը մատուցուի։ Եւս եւ կանանց վերնատունը, որ սուրբ Յակոբայ աւագ խորանին վրայ կը նայի, ունի երկու սեղան պատարագամատոյց, մին յանուն Պայծառակերպութեան եւ միւսն Ընթրեաց։ Վերնատան հիւսիսային դռնէն դուրս ելլելով, սանիքը փոքր մատուռ մը կայ եւ սեղան պատարագամատոյց յանուն սրբազան Առաքելոց։ Նա

այս մատրան հարաւային դռնէն ելլելով և սա-
կաւ ինչ յարեւելակողմը՝ սուրբ Նշանի խորան
կայ, որ սուրբ Յակոբայ եկեղեցւոյն մէջ կը
նայի, և ունի փոքր սեղան պատարագամատոյց։
Այն խորանէն յարեւմուտս կայ նեղ սանդու-
ղէն վար իջնելով սուրբ Յակոբայ եկեղեցւոյն
մէջ կ'իջնէ, ուր հիւսիսային պատին կից է սուրբ
գերեզմանը Մակարայ հայրապետին, ուր տեղ
կայ սեղան և պատարագ կը մատուցուի Մակա-
րայ Ճգնաւորի տօնին, և Գիւտի Նշխարաց Լու-
սաւորչի տօնին օրը։ Հոս կը նայի նաեւ սրբոց
խոստովանահայրը, որ կը խոստովանեցնէ եկող
մարդիկ. Եւ այս մատրան մօտ է բաժակարարու-
սրբոյն Յակոբայ առաքելոյն գլխուն ամփոփ-
ուած տեղը, որ փոքրիկ բայց գեղեցկաշէն մա-
տուռ մըն է հանդերձ պատարագամատոյց սե-
ղանով, և երեւելի ուխտատեղի է ընդհանուր
քրիստոնէից, և անգին գանձ յԱստուծոյ Հայոց
ազգին պարգեւեալ. որուն վրայ ամէն շաբաթ
օր պատարագ կը մատուցուի։ Այս սուրբ Գող-
գոթայի արեւմտեան դրան քովը դարձեալ դուռ
մը կայ, որ սուրբ Մինաս եկեղեցւոյ մէջ կը
բացուի, ուր երեք պատարագամատոյց սեղան-
ներ կան. մէկն յանուն սրբոյն Մինասայ, մին
յանուն սրբոյն Սարգսի, և միւսը յանուն սր-
բոց Յարութեան. Թէպէտ և այս սուրբ Յարու-
թեան սեղանին վրայ պատարագ չըլլար. և սուրբ
Ս.Թորոս եկեղեցականն անօթները այս սուրբ
Մինասայ ներքի պահարանը կը պահուին. ուս-
տի այս դռան մէջէն բաց չըլլար ուխտաւորաց՝

բաց ՚ի յատկացեալ օրերէն ։ Սուրբ Կիլառդի մատրան դրանը քով դէպ յարեւելս պատին վրայ տէրունական պատկերը կայ , որուն առաջը որդւոց Որոտման տօնախմբութեան եւ յարութեան երկրորդ օրը շարժական սեղան կը կազմուի գեղեցիկ զարդարեալ ։ Եւ սոյն պատկերին կից սուրբ Ստեփաննոս եկեղեցւոյ դուռըն է , որուն միւս դուռն ալ մոմխանայքն առջեւ կը բացուի . Եւ այս եկեղեցիս ունի երեք պատարագամատոյց սեղան , եւ մկրտութեան աւազան . սեղաններուն մին յանուն սրբոյն Ստեփաննոսի է , որուն տօնախմբութեան օրը հանդիսիւ պատարագ կը մատուցուի . մին յանուն Լուսաւորչին , եւ միւսն է աւագան Կիւրղի հայրապետին , որուն մէջ Երեւման խաչին ժամանակը բազմաթիւ հաւատացեալք մկրտեց . եւ նոյն հայրապետին տօնախմբութեան օրը այս տեղ պատարագ կը մատուցուի ։ Ասոր կից է սուրբ Աթանասու խուցատունը . Նոյն դրանէն դարձեալ սուրբ Յակոբայ եկեղեցին մտնելով հին աջակողմեան դասին սեանը քով կը գտանես Տեառնեղբօր արդար առաքելոյն փառաւոր աթոռը Կաթողիկէին եւ անոր կից սրբազան Պատրիարքին աթոռը ։

Սուրբ եկեղեցւոյս աւագ սեղանի տակ ամփոփուած է ըստ աւանդութեան Տեառնեղբօր արդար առաքելոյն սուրբ մարմինը . եւ այս սեղանս շատ զարմանալի է եւ հրաշալի . գեղեցկութեան մասին անհամեմատ . ատեանը բոլոր գոյնզգոյն քարերով զարդարուած է , եւ առ-

տերը մարդաչափ բարձրութեամբ յախճապակեալ. ուսկէ 'ի վեր կը սեանութիւն կարդաւ Հին Պատրիարքաց և սուրբ վարդապետաց պատկերները, և անոնց վրայի կարգը Քրիստոսի բոլոր անօրինակին և ուրիշ խորհրդաւոր ընտիր պատկերներով զարդարուած է։ Աւագ խորանին երկու կողմի խորաններն են մին յանուն սուրբ Աստուածածնի, և միւսը յանուն սուրբ Կարապետի. և այս երկու դասերու երկու կամարաց վրայ կան դարձեալ երկու պատարագամատոյց սեղաններ, յանուն Պետրոսի և Պօղոսի գլխաւոր առաքելոց, որ կ'ելլուի Հաւատային պատւին մէջէն յատուկ աստիճանով։

Այս հրաշալի եկեղեցիս, որ կառուցեալ է յանուն երկու Համանուն Առաքելոց, չորս հաստատուն սիւներու վրայ հաստատեալ է կամարակապ և գմբէթաւոր և գեղեցիկ զարդերով զարդարեալ. և ինչպէս պատերը՝ նմանապէս և սիւները երկու կարգ զանազան սրբոց պատկերներով և ոսկեզօծ շրջանակներով զարդարուած են։

Բաց 'ի սուրբ Յակոբայ մայր եկեղեցիէն, կայ ուրիշ եկեղեցի մ'ալ նոյն վանքին մէջ սուրբ Թէոդորոսի անուամբ, որուն վրայով փոքր 'ի շատէ վերը պատմեցինք. (տես յօդ. 64)։ Այս եկեղեցւոյս հիւսիսակողման սանդուխքին վրայ փոքրիկ մատուռ մ'ալ կայ սուրբ Հոգի անուամբ կառուցեալ, որ պատարագամատոյց սեղան մի ունի, և երբեմն պատարագ կը մատուցուի։

Սուրբ Յարութեան Տաճարը.

## 140

Սուրբ Յակոբայ վանքէն դուրս ելլելով և դէպ 'ի հիւսիս ուղղակի դիմելով մինչեւ վաճառանոցի գլուխը և անկէ արեւելք դառնալով զառ 'ի վայր, և ձախ կողմը առաջին փողոցը մտնելով դէպ 'ի հիւսիսակողմն սուղ ինչ յառաջանալով երկաթեայ դուռ մը կայ, որ Յունաց մանաւոր վանքերէն մէկն է՝ յանուն Յովհաննու Կարապետին։ Անոր առջեւէն անցնելով ու շիտակ երթալով փողոցին վրայ կամարներ կը տեսնուին, որոնց վրայ է Յունաց մեծ վանքը ու իրենց Պատրիարքարանը. նոյն կամարին բերանը աջ դին փողոց մը կայ, որ Սուրբ Յարութեան փոքր դուռը կը հանէ, ուսկից ներս մտնելով նոյն երկնանման Տաճարին գաւիթն է. որուն հարաւակողմը փոքր վանք մը կայ, ուր Սուրբ Աստուածածնայ Յունաց տեսուչը կը բնակի քանի մը միաբանօք. և կը պատմուի՝ թէ այս տեղ հին ժամանակ մահապարտաց բանտ էր. Դշխոյն Հեղինէն ալ՝ Հրէից ծեր Յուդայ Կիւրեղը հոս բանտարկեց, մինչեւ որ կենսատու Խաչին տեղը ցոյց տուաւ իրեն, և ինքն ալ հաւատալով 'ի Քրիստոս մարտիրոսական մահուան արժանացաւ։

Սուրբ Յարութեան գաւիթին մէջ եղած տեղերը։

## 141

Յարեւելից կողմէն Հայր Աբրահամու վան-

քին է՝ զոր Հայոց ձեռքէն յափշտակեցին Յոյնք Աստուածատուր պատրիարքի ժամանակ, և մինչեւ ցայսօր իրենց ձեռքն է. որ երկու եկեղեցի ունի, մեկը Գողգոթային մօտ է, որու համար կ'աւանդեն թէ Հայր Աբրահամ իւր Իսահակ որդին այն տեղ պիտի զոհեր, և Գողգոթայի անդլուղն նայած ժամանակ խոյը Սաբեկայ ծառուէն կախեալ տեսաւ, զոր փոխանակ Իսահակայ զոհ մատոյց Աստուծոյ. վասն որոյ և եկեղեցին Հայր Աբրահամու անուամբ նուիրուած է: Իսկ միւս եկեղեցին է յանուն սրբազան Առաքելոց: Յիշեալ վանքին ներքեւը փոքրիկ եկեղեցի մ'ալ կայ յանուն Յովհաննու աւետարանչին. ուր որ 'ի ժամ խաչելութեանն Քրիստոսի կայնած էր սուրբ Աւետարանիչը հանդերձ սուրբ Աստուածածնիւ, ինչպէս որ կը վկայէ Աւետարանիչը ըսելով. «Ահա դու, ահա որդին քո»: Եւ այս եկեղեցիս երեք խորան ունի. աւագ խորանն է յանուն Յովհաննու աւետարանչի, աջակողմինը յանուն չարչարանաց և կապանաց Քրիստոսի, որովհետեւ Յիսուսի կապած սիւնէն մասմը կայ այն սեղանին մէջ արծաթով պատեալ, և այս սիւնը Կայիափայ քահանայապետին տունէն բերուած է. և ձախակողմեան սեղանն է կառուցեալ յանուն Աբրահամու և Իսահակայ: Այս եկեղեցիս Հայոց ազգին ձեռքն է:

Սուրբ Յովհաննու եկեղեցւոյն աջակողմը դուռ մը կայ, որ Իսխուսոյ եկեղեցին է՝ յանուն Միքայէլի հրեշտակապետին. և նոյն եկեղեցւոյն անկիւնէն վեր ելլելով տանիք ինչ, դարձեալ

ուրիշ եկեղեցի մը կայ Հռաքէլից, յանուն չորից կենդանեաց կամ քառակերպեան. և առկախինչ դարձեալ դէպ 'ի վեր երթալով կ'ելլայ մեր սուրբ Լուսաւորիչ եկեղեցւոյն Գիւտ խաչի տանիքը, որ սուրբ Յարութեան տաճարին մէջն է. որուն տանիքը և կաթուղիկէն Գրիգոր Շղթայակիր հայրապետը նորոգեց Հայոց ՌԿԷ. թըւականին, և այս տանիքիս արևմտեան հարաւակողմը տան և վեց ոտնեայ բարձրացեալ վանք մը կայ, ուր տեղ կը բնակին Հռաքէլից աղքատ կրօնաւորները, որք 'ի սուրբ Յակոբայ վանքէն կ'ընդունին իրենց հոգեպահիկն ալ։ Դարձեալ յետ դառնալով սուրբ Յարութեան դաւիթը՝ կից սուրբ Գողգոթային հարաւակողմը փոքրիկ մատուռ մը կայ յանուն սուրբ Նատուածածնի, որ նախ Հռաքէլից էր. և ժամանակ մը ևս մեր ձեռքը մնաց, բայց հիմա Յունաց քաղաքացի ժողովրդոց ձեռքն է։ Այն եկեղեցւոյս վրայ դարձեալ եկեղեցի մը կայ Լատինաց ձեռքը, յանուն սգաւոր Աստուածածնի, որուն լուսամուտը Տաճարին տեղւոյն վրայ կը նայի։

Սուրբ Յարութեան դաւթին արևմտեան կողմը Յունաց սուրբ Յակոբ անուամբ եկեղեցին է՝ դարձեալ քաղաքացի ժողովրդոց յատկացեալ. և երեք զատ եկեղեցիներ են, մին յանուն սուրբ Յակոբայ առաքելոյն, որ Վ բաց սուրբ Յակոբ ալ կ'ըսուի Յունաց մէջ. ոմանք կ'ըսեն՝ թէ Տեառնեղբօր Յակոբայ արդար առաքելոյն մարմինը հոն թաղուած է, բայց

Մարթինոս Լութերոսի պատմիչը անոնց ստութիւնը ցուցնելու համար կ՚ըսէ երրորդ գրքին մէջ ԽԹ գլուխը թէ, «Թէպէտ կ՚ըսեն ոմանք, թէ Տեառն եղբայր՝ որ է առաջին Եպիսկոպոսապետն Երուսաղէմի, մերձ սուրբ Յարութեան Յունաց սուրբ Յակոբայ եկեղեցին նստեալ առաջին Պատրիարք, բայց չէ հաւանական, վասն զի առաքեալները իրենց աղքատութեան համեմատ՝ Սիոն լերան վրայ կը նստէին. ուր որ նոյն Արդարոյն տունն էր՝, և հոն եղաւ նորին եպիսկոպոսութիւնն և եպիսկոպոսարանն։ Երկրորդ եկեղեցին է յանուն Քառասուն մանկանց, և երրորդը յանուն Մարիամ Մագդաղենացւոյն։ Այս վանքիս մէջէն յատուկ դուռ ունին Յոյնք որ իրենց սուրբ Կոստանդինոս կոչուած մեծ վանքը կ՚երթան, ուր տեղ է նաեւ իրենց Պատրիարքարանը, և սուրբ Յարութեան զանգակատունը։ Յիշեալ վանքին ալ ունին պատ եկեղեցի մը սուրբ Յարութեան կից, որուն պատուհանները սուրբ Յարութեան տաճարին մէջ կը նային. և կ՚ըսուի թէ այս եկեղեցին նախ Վրաց ազգինն էր։

Սուրբ Յարութեան մէջ գտնուած ուխտատեղիները։

142

Սուրբ Յարութեան երկնանման տաճարին մէջ կան շատ սուրբ Տեղիք. նախ՝ սուրբ դրունէն ներս մտած ժամանակ դիմացն է Քրիստոսի ամենափառաւոր և հրաշալի Պատանքապատեղին, որուն վրայ Յովսէփ Արեմաթացին և Նիկոդէ-

մնա պատմեցին սուրբ կուսով Քրիստոս Տէրն մեր. և այս փառաւոր տեղւոյս վրայ ութը մըշտավառ կանթեղ կան, որոնց չորսը Յունաց է, երկուքը Հայոց, մին Լատինաց, և մին Ղփտւոց. և երկու կողմերը երկաթեայ աշտանակներ կան, որոնց վեցը խիստ մեծ են, և վեցը միջակ. երկու մեծ և երկու փոքրը Հայոցն է, նմանապէս Լատինք և Յոյնք ունին երկու մեծ և երկու փոքր. և այս Պատանատեղւոյն դիմացը Յունաց տաճարին հիման տակը Խաչակիր Թագաւորաց գերեզմանքն են, որ առաջ դուրսն էին, ու Տաճարին այրելէն ետքը (1808) երբ Յոյնք հրաման առին շինելու, իրենց տաճարը ընդարձակելով՝ յիշեալ գերեզմանները ներս առին ու պատին տակը մնացին։

Երկրորդ ուխտատեղին՝ է՝ Պատանատեղէն դէպ արեւմուտք քիչ մը յառաջանալով՝ ահա կողմեան պատին կից Իւղաբեր կանանց սեղանը որ Հայոց ձեռքն է։ Կանայք՝ որ Յիսուսի մարմինը օծանելու եկան և կը խորհէին՝ թէ ով թաւալեցուցէ մեզ վէմն, այս սուրբ սեղանոյս տեղը կայնած էին։

Երրորդ ուխտատեղին է այս սուրբ սեղանոյս հարաւակողմը, մեր տեսչին սենեկին առջեւն եղած սուրբ Աստուածածնայ ուժաթափման տեղը, որուն շրջապատը երկաթեայ ճաղով պահպանուած է՝ վրան մեծ ջահ մը կախուած հանդերձ կանթեղներով, որոնց մէկը մշտավառ է 'ի պատիւ սուրբ տեղւոյն։ Այս սուրբ տեղւոյս համար կը գրէ Շնորհալի հայրն

մեր ըսելով. “ Ցօղէր արտօսր ցաւագին, մայր Տեառն որ կայր մերձ առ խաչին ”. որովհետեւ այս տեղ Գողգոթայի դիմացն է, և յատուկ Հայոց ազգին ձեռքն է: Յիշեալ տեղւոյն հարաւային կողմն է սուրբ Յարութեան Տաճարին Հայոց տեսչին սենեակը, որուն առջեւէն անցնելով և սանդուղէն վեր ելլելով սենեակ մը կայ նոյն տեսչին սենեկին վրայ, որ հիւրանոց է ջերմեռանդ ուխտաւորաց. նոյն սանդուղէն դէպ 'ի հարաւ շարունակելով՝ մեր վերնատան եկեղեցին կ'ելլուի, որուն աւագ խորանին կ'ըսուի երկրորդ Գողգոթայ, Գողգոթայի դիմացը ըլլալուն համար. այս խորանին հիւսիսակողմը սենեակ մը կայ, ուր տեղւոյն լուսարարը կը բնակի. աւագ սեղանի ետեւը երեք պատուհան կան, որոնք Պատանատեղւոյն և Գողգոթայի վրայ կը նային. և կամարին հարաւային կողմը դարձեալ զատ եկեղեցի է, և ունի սեղան պատարագամատոյց յանուն սուրբ Աստուածածնի, ուր երաշխաւոր եղաւ սուրբ Աստուածածին առ միածին որդին իւր, և եթող եգիպտացի Մարիամին մեղքերը: Տես Յայսմաւուրք և Հաննայի պատմութիւնք:

Այս սուրբ սեղանին ետեւը դուռ մը կայ, որ փոքր սենեակի մը մէջ կը բացուի, և նոյն սենեկէն քանի մը աստիճանաւ վեր սեղանատունը կ'ելլուի, որ ունի փառաւոր մեծ պատուհան մը սուրբ Յարութեան գաւթին վրայ և ուրիշ պատուհան մը սուրբ Պատանատեղւոյն վրայ: Այն վերնատան եկեղեցին փոքր ըլլալով՝ 1639 թուա-

կանխէն Գրիգոր Պարոնտէր սուրբ հայրապետը՝ Լատինաց միաբանութենէն երեք կամար առնելով ընդարձակեց. և այս երեք կամարին փոխարէն՝ սուրբ Պարոնտէր մեր երկու կանթեղներէն մէկը և անոնց արդի երգեհոնին տակի սենեակը տուաւ: Դարձեալ շղթայակիր սուրբ Հայրապետը մեր վիճակը նորոգած ժամանակը քառանկիւնի սիւնը, որ վերնատան աւագ խորանին դիմացն էր՝ վերցուց. և 1808 Թուականին այրելէն ետքը Վանեցի Թէոդորոս պատրիարքը մեր սեփական տեղը բստ հին դրութեան վերստին նորոգեց, զոր Յոյնք յունական ձեւով շինած էին. բայց վերնատան տակը երեք սիւներուն միջոցի ներքնատունը, որ հրդեհէն առաջ Հապէշներէն մեզ անցած և փոքրիկ մատուռ մի էր մեր ձեռքը, Յոյնք յափշտակեցին, որ այժմ անոնց լուսարարի խուցն է, և ուխտաւորաց բնակարան:

Չորրորդ ուխտատեղին է Յովսէփ Արիմաթացւոյն եկեղեցին, որ երկու դուռ ունի, և նոյն սրբոյն գերեզմանն ալ հոն է, թէ և մեռնելէն ետքը հոն չթաղուեցաւ, բայց անոր անուանքը կը յիշուի: Իսկ եկեղեցին է յանուն սուրբ Աստուածածնի, և ունի սեղան պատարագամատոյց, ուր Հայք և Ասորիք անխտիր կը պատարագեն: Այս եկեղեցւոյս վրան մեծ սենեակ մը կայ, ուր մեր պաշտօնատար ժամարարները կը բնակին հանդերձ սարկաւագօք. բայց ծաղկազարդին և յարութեան շաբաթ և կիւրակէ օրերը Ասորւոց կուտանք, իրենց օրինաւոր տեղ մը չունենալնուն համար:

Հինգերորդ ուխտատեղին է Ղփտւոց մատուռը, որ Յովսէփ Արիմաթացւոյն գրան առաջին է, կենսատու սուրբ Գերեզմանին արեւմտեան կողմէն կցուած, որուն պատարագամատոյց սեղանը սնարից հրեշտակի վիմին վրայ կառուցեալ է, ուր Ղփտիները կը պատարագեն։ Կը պատմեն, թէ այս սեղանը Բ. Հեթում թագաւորը շինեց առանց ծածկութի. բայց յետ ժամանակաց մեր նախնիքը Ղփտոց տուին, եւ անոր փոխարէն Եգիպտոսի մէջ եկեղեցի մը առին իրենցմէ Հայ ժողովրդոց համար։

Վեցերորդ ուխտատեղին է Պարտէզը, ուր յարութենէն ետքը երեւեցաւ Կենարարն Յիսուս Մարիամ Մագդաղենացւոյն։ Այս տեղւոյս վրայ՝ որ Պարտէզ կ՚ըսուի ըստ Աւետարանի, երկու մշտավառ կանթեղ կախուած են, որոնց մին մերն է, եւ միւսը Լատինաց տուած է Պարոնտէր ինչպէս վերը ըսինք. եւ հանդէպ սուրբ տեղւոյս արեւելեան կողմը պատարագամատոյց սեղան կայ Լատինաց ձեռքը յանուն Մարիամու Մագդաղենացւոյ. եւ անոր հիւսիսակողմն է Լատինաց եկեղեցին, որ երեք խորան ունի, մին Չարչարանաց, ուր ամփոփեալ կայ Կայիափայի տունէն բերուած սեան մէկ մասը, որուն ըզՔրիստոս կապեցին, եւ որուն մէկ կտորն ալ մեր սուրբ Յովհաննու եկեղեցւոյն մէջն է ըսինք. իսկ միջին խորանն է յանուն սուրբ Աստուածածնի. եւ աջակողմեանը յանուն սրբոյ Խաչին. եւ սեղանին մօտ դուռ մը կայ, ուրկէ իւրեանց յատուկ վանքը կ՚երթուի, ուր կը բնակին սուրբ

Յարութեան մէջ եղող իրենց միաբանները ։

Եօթներորդ ուխտատեղին է Յիսուսի չորրորդ բանտը, որ Յունաց ձեռքն է ։ Յայտնի է որ Յիսուսի առաջին բանտը Աննա քահանայապետի տունն էր, որ է սուրբ Հրեշտակապետաց վանքը. երկրորդը Կայիափայի, այն է Փրկչավանքը, որոնք երկուքն ալ մեր ձեռքն են. երրորդն է Պիղատոսի պալատին մէջ, որ Տաճկաց ձեռքն է. և չորրորդը՝ այս սուրբ Յարութեան Տաճարիս մէջի յիշեալ սուրբ տեղը, ուր շատ քիչ միջոց մնաց Յիսուս մինչեւ որ խաչելութեան գործիքները պատրաստուեցան ։ Այս սուրբ տեղը ժամանակաւ Հաբէշից ձեռքն էր, բայց այժմ Յունաց է. և մերձ այս սուրբ տեղւոյս է սեղան Յունաց՝ յանուն Ղունկիանոսի, որ նոյնպէս Հաբէշից ձեռքն էր առաջ ։

Իններորդ ուխտատեղին է, Յիսուսի Տեառն մերոյ հանդերձ բաժանման սեղանը, որ Հայոց ազգին ձեռքն է ։ Հոս Քրիստոսի խաչելութենէն չորս զինուորներ հանդերձները բերելով, բաժանեցին իրենց մէջ, և անկար պատմուճանին վրան ալ վիճակ ձգեցին ։

Տասներորդ ուխտատեղին, այս սուրբ տեղէս արեւելեան կողմը դառնալով, քարէ աստիճաններէն Լուսաւորչայ եկեղեցին կ'իջանեմք, որ Հայոց ազգինն է և չորս սիւներու վրայ շինուած է, և ունի կաթուղիկէ մեծ պայծառ լուսամուտներով, և երկու խորան. մին յանուն սրբոյ խաչին, և միւսը յանուն Դեմասայ աջակողմեան աւազակին ։ Բայց վերջի ժամանակը

սուրբ Աթոռոյս հայրապետաց նորոգելով, խաչի սեղանին անունը սուրբ Լուսաւորչի փոխեցին, և Գեսմասայն՝ սուրբ Կարապետի, որոյ մասունքէն մաս մը ամփոփեալ կայ նոյն սեղանին տակը ։ Ու եկեղեցւոյս ձախակողմը պատուհան մը կայ, ուր երեք կանթեղք կը վառին. այն պատուհանին մէջ նստած էր կ՚ըսեն դշխոյն Հեղինէ, և շատ գանձեր ցրուելով կենսատու խաչին թաղուած տեղւոյն աղբիւսները փորել կուտար, ուսկէ գտնուեցաւ անգին գանձն փրկչական, որ երեք հարիւր տարւոյ չափ նոյն աղբիւսներուն տակը մնացած էր ։ Ատոր համար այս տեղւոյս կ՚ըսուի Գիւտ խաչ, և է ուխտատեղի ամենայն հաւատացելոց ։ Հոս Լատինք սեղան մի ունին պատարագամատոյց, որուն վրայ շատ ժամանակ չէ Հեղինէի արձանը կանգնեցին. գիրկը խաչ մը բռնած ։

Մետասաներորդ ուխտատեղին է Փուշ պսակը, որ Յունաց ձեռքն է. որոյ սեղանին տակը ամփոփեալ է ձագանաց սիւնին մէկ մասը, որուն վրայ Փրկիչն մեր նստեցունելով՝ կարմիր քղամիդ հագցուցին, և աստուածային գլուխը փշեայ պսակ դնելով՝ և եղէգը աջ ձեռքը տալով կը ծաղրէին ։ Ու այս սիւնս Պիղատոսի պալատէն եկած է. և յիշեալ Փուշ պսակի սեղանը նախ Հապէշից ձեռքն էր ։

Երկոտասաներորդ ուխտատեղին է սուրբ Գողգոթայն, ուր տարածեցաւ և խաչեցաւ կենդանատուն ամենեցուն. և այս սուրբ տեղս երկու մաս բաժնուած է. մէկին է բուն խաչե-

լուԹեան տեղը, ուր կանգնեցուցին Յիսուսի խաչափայտը, և է սեղան պատարագամատոյց չորս կճեայ պատուական սեանց վրայ հիմնեալ. Հարաւակողմն է պատատեալ վէմը, և սուրբ տեղւոյս վրայ կանգնեալ է ահարկու պատկեր խաչելուԹեանն Քրիստոսի, և երկու կողմէն կրկին պատկերներ սուրբ Աստուածածնի, և Յովհաննու աւետարանչի: Ասկէ դուռ մը կայ որ Յունաց եկեղեցին կ'իջնէ. և ասոնք ամենքն ալ այժմ Յունաց ձեռքն են: Իսկ երկրորդ մասն է տապանման տեղը, որ խաչելուԹեան տեղւոյն կից և անոր հարաւակողմն է. ունի սեղան պատարագամատոյց, որուն առաջն է Տապանման տեղը, ուր որ կենարարն մեր գետինը խաչին վրայ տարածելով պրկեցին. և այս տեղւոյս հիւսիսակողմը դարձեալ կայ փոքրիկ սեղան պատարագամատոյց: Այս տապանման տեղը Լատինաց ձեռքն է:

Այս սուրբ ԳողգոԹայն ամբողջ, ինչպէս որ առաջին հատորին մէջ յիշեցինք, ըստ պատմուԹեան Հաննայի, Հայր Միքայէլի Չամչեան և ԱգաԹանգեղոսի, շինուԹեան սկիզբէն Հայոց ազգին էր՝ համահաճուԹեամբ սրբազան հայրապետացն Երուսաղեմի և Լուսաւորչի, և բարեպաշտ Թագաւորացն Կոստանդիանոսի և Տրդատայ. մանաւանդ Երուսաղեմ սուրբ հայրապետն, ինչպէս գրուած է 'ի գիրս դաշանց 419, 420 երեսը, և 'ի Հայոց պատմուԹեան Ա. հատոր 650 երես. « Պարգեւեցի, կ'ըսէ, Նորապատակ ՊարԹեւիս մերոյ (այսինքն Տրդ-

գորի Լուսաւորչին) յիշատակ ազգաց յազգս յԵ-րուսաղէմ քաղաքի իջեւանք Հայոց աղօթակա-նաց զվկայարան սրբոյն Յակոբայ եղբօրն Յով-հաննու . . . պատրաստեցի և տեղի պատարա-գի 'ի Յարութեան մեծի եկեղեցւոյն զԳողգո-թայ խաչելութեան տեղին և զնարից կա-պոյն, և զմիջի կանթեղն մշտավառ, որ երեք կանթեղք են 'ի վերայ Գերեզմանին Քրիստոսի յիշատակ Լատինացւոց, Հայոց և Հելլենաց-ւոց »:

Յետ ժամանակաց 1434 ին, ինչպէս սուրբ Աթոռոյս Մարտիրոս պատրիարքի յիշատակա-րանէն և ուրիշ արձանագրութիւններէն առ-նելով ծանօթութիւն կուտայ մեզի սուրբ Գող-գոթայի յափշտակութեանը վրայ ըսելով յերես 187 . 225 . 227 . « Եգիպտացի ոմն փաշաւական Պալիպի անուն, գնաց 'ի Մըրաց տունն յաղագս փաշաւականութեան . և էր սա բարեկամ՝ սուլ-թանին Եգիպտոսի Մէլէք Աշրէֆայ, որ անկէր Երուսաղէմայ. և մինչ վերադարձեալ փաշաւականն գնաց 'ի Մըրաց տունն, Մըրաց խանն Իւվանէ անուն՝ խնդրեալ զառաջակայութիւն փաշաւա-կանին առ սուլթանն Եգիպտոսի, բազում շը-ռայլութեամբ և կաշառօք աղերսեաց, զի միջնորդ լիցի առ սուլթանն առնուլ զսուրբ Գողգոթայն 'ի Հայոց և տալ Մըրաց, և խոս-տացաւ տալ ամ՝ յամէ 'ի Մըրաց տունէն քան աղջէկունս յաղագէ իւրմէ ընծայ Սուլթանին: Սմին իրի և հաւանեցոյց զՊալիպի փաշաւա-կանն, 'ի ձեռն բազում կաշառաց հաւանեցու-

ցանել զսուլթանն. ուստի բազում աղախնովք և ընծայիւք դարձաւ Ալէքսիոս, և ծանոյց սուլթանին զաղերս Կլրաց խանին, թէ այսքան ընծայ և վրացի ծառայս յղեաց և ամ յամէ յղելոց է. և այսպիսի խարդախութեամբ էառ զսուրբ տեղին զԳողգոթայն ՚ի ձեռաց Հայոց և ետ Կլրաց: Իսկ Մարտիրոս պատրիարքն Երուսաղէմի, էջ Ալէքսիոս առ Մելէք Էշրէֆ և էառ կրկին զԳողգոթայն. բայց նոյն վաճառականն վերստին շրջեաց զմիտս սուլթանին և ետ Կլրաց. և դարձեալ էջ Ալէքսիոս Մարտիրոս պատրիարքն, և էառ զսուրբ տեղին մինչեւ ցհինգ ամ. և յետ վերստին դրդմանն առէ սուլթանն ցՀայրապետն մեր. «Կլրաց խանն ինձ քսան աղախին ծառայս յղէ, թող զընծայս, ուստի չէ հնար տալ քեզ զԳողգոթայն. այլ երթ և ընտրեա քեզ տեղի մի ՚ի մէջ սուրբ Յարութեան, և ես փառաւորեցից քեզ իբրեւ սեպհական միւլք, և ոչ ոք յայլոց ազգաց կարիցէ ներհակել քեզ»: Եւ Մարտիրոս հայրապետն եկեալ ընտրեաց զայժմեան վերնատունն մեր, որ ասի թէ է տեղի թագաւորաց, և դրամօք գնեաց զայն և արար եկեղեցի, և անուանեաց երկրորդ Գողգոթայ: Բայց յետ քսան և հինգ ամաց բնաջինջ եղեն Կլրացիք Երուսաղէմէ, և Յոյնք տիրեցին ամենայն վանորէից նոցա և Գողգոթային, և յետոյ Լատինք բռնութեամբ զկէսն Գողգոթայի այսինքն զտարածման տեղին առին ՚ի ձեռաց Յունաց »:

Երեքտասաներորդ ուխտատեղին, սուրբ Գողգոթայէն իջանելով, և Պատանատեղէն անցնելով և կամարի տակէն ու սիւներու մէջէն անցնելով, Քրիստոսի Տեառն մերոյ երկրպագելի և պաշտելի Գերեզմանն է արձանապատ գմբէթով Տաճարին մէջ տեղը, որ երկու մասի բաժնուած է։ Առաջին մասն է արեւելեան կողմը սուրբ Գերեզմանին, քառակուսի ձեւով և դուռը դէպ 'ի արեւելք Յունաց աշխարհաժողովական եկեղեցւոյն դիմացն է և սորա մէջտեղը մարմարեայ սիւնաձեւ և կէս մարդաչափ բարձրութեամբ քար մի կայ, որ հրեշտակին կայնած տեղն է. մեր ազգը կենդանի Գերեզմանին վրայ պատարագ մատուցած ժամանակը՝ վերաբերման ատենին սկիհը անոր վրան կը դնէ։ Եւ արտաքոյ դրան երկու կողմէն բազմոցներ կան, որոց շրջապատը երկոտասան աշտանակներ կան, որոց վեցը խիստ մեծ են, և վեցը միջակ. և այս աշտանակաց երկու մեծ և երկու փոքրը Հայոցն է. նմանապէս երկու մեծ և երկու փոքրը Յունաց է, և նոյն թուով դարձեալ Լատինաց։ Եւ սոյն դրան ճակատը երեք ազգաց երեք պատկերներ և երեք ալ մշտավառ կանթեղներ կան. առաջինը՝ որ անմիջապէս դրան վրայ է հանդերձ կանթեղով, Հայոցն է. միջինը Յունաց և վերջինը Լատինաց։ Բայց հանդիսաւոր օրերուն սահման չկայ. որչափ ուզէ իւրաքանչիւր ազգ իւր սահմանը կը զարդարէ և կը պայծառացունէ։ Եւ այն երկրպագելի դրան ներսի կողմէն, յանուանից հրեշտակին վէ-

մին վրայօք տասն և հինգ մշտավառ կանթեղ-
ներ կան, որոնց չորսը մերն է, մէկը Ղփտւոց,
հինգը Յունաց և հինգը Լատինաց։ Երկու
կողմէն փոքրիկ լուսամուտներ ունի, ուրկէ
յարութեան Ճրագալոյցի ժամանակ, ըստ սո-
վորութեան Հայաստանեայց եկեղեցւոյ լուսա-
ւորեալի լոյսը վառելով, դուրսի գտնուող ժողո-
վրրդեան կը հաղորդեն, և ոչ թէ Գերեզմա-
նէն լոյս կը բղխի՝ ինչպէս ոմանք կարծել կ'ու-
զեն։ Այս Քրիստոսի կենսատու գերեզմանը ես
հաւատոյ աչօք միշտ լոյս բղխելը կը հաւատամ,
և կ'երկրպագեմ անտեսին Աստուծոյ՝ որ միշտ
անմեկնելի է այն սուրբ տեղէն. բայց Ճրագա-
լոյցի ժամանակ լոյս կը բղխի ըսելը՝ ժողովրդոց
անմտութիւն է, և հաւատոյ թերութիւն։
Այս, Ճշմարիտ լոյսն Քրիստոս 'ի ժամանակի
յարութեան ինքնազօր կարողութեամբ բղխե-
ցաւ այն գերեզմանէս, և եղեւ լուսատու ա-
մենայն հոգւոց հաւատացելոց. և ո՛չ թէ միայն
անոնց՝ որոնք Ճրագալոյցի ժամանակ նոյն սուրբ
տեղը ներկայ կը գտնուին։ Ահա այս միտք է
Հայաստանեայց եկեղեցւոյ լուսաւորեալն՝ զոր
կը կատարեմք. և թէ՝ Աւետարանն մեր Յի-
սուս այն միջոցին յառնելով սուրբ Գերեզմա-
նէն, փրկութեան արժանի հոգիք, որոնք ան-
լոյս դժոխոց խաւար բանտին մէջը փակուած
կային, զանոնք իւր յարութեան շնորհիւը խա-
ւար դժոխքէն արքայութեան լուսոյն մէջ փո-
խարկեց. ուր կը զուարճանան անմահ խնդու-
թեամբ »: Արդ՝ դառնամք մեր պատմութիւնը

շարունակելու․ Նոյն սուրբ Գերեզմանի դուռը ոչ սակաւ խոնարհագոյն է վերին դռնէն, և դարձեալ առ արեւելքն կը նայի․ ուրկէ ներս մտած ժամանակ երկրպագելի Գերեզմանն է, որուն վրայ 43 մշտավառ կանթեղ կան, որոնց 13ը Հայոցն է, 13ը Լատինաց և 13ը Գրէաւոց։ Նոյնպէս և երեք յարութեան պատկեր կայ հիւսիսային որմը․ յանուոց՝ արծաթեայ շրջանակովը Հայոցն է, միջինը՝ որ մարմարեայ քարին վրայ փորագրեալ է՝ Յունացն է, և մնարեց կողմինը Լատինաց․ և այս պատկերաց առջեւը իւրաքանչիւր ազգ վեց մոմակալ և չորս ծաղկաման ունին․ և սուրբ Գերեզմանին գմբէթն ալ երկոտասան սեանց վրայ հաստատուած է․ և շատ զարդեր և կանթեղներ կան հաւասար իւրաքանչիւր ազգաց, որոնք ըստ պատշաճի աւուր կը վառուին․ բայց վերին առձրձապատ գմբէթը քանի կամարներու վրայ շինուած է։ Իւր Յունաց եկեղեցին հանդէպ Գերեզմանին է արեւելեան կողմը և ութ կամարներու վրայ կառուցեալ է այն եկեղեցւոյ գմբէթը, և եկեղեցին չորս դուռ ունի․ մին արեւմտահայեաց՝ Գերեզմանին վրայ, երկրորդը հիւսիսակողմը՝ բանտին վրայ կը նայի․ իսկ միւս երկուքն հարաւակողմը, որոնց մին ճանապարհին վրայ կը նայի, և միւսը սուրբ Գողգոթայ կ՚ելլէ։ Ահա ասոնք են սուրբ Յարութեան երկնանման Տաճարին մէջ գտնուած սուրբ տեղիքը։

Այս հրաշալի և ամենափառաւոր եկեղեցին

Նախ բարեպաշտ եւ աստուածասէր Աբգարու կին Հեղինէէն նշանակուեցաւ շինելու փոքր փոքր մասունքներով. երկրորդ՝ Կոստանդիանոս Թագաւորէն եւ իւր բարեպաշտ Հեղինեայ մօրմէն. եւ այս փառաւոր շինութիւնը Պարսից Խոսրով Թագաւորը 615 Թուականին աւերեց, իսկ Քրիստոնեայք 638 Թուականին դարձեալ նորոգեցին: Բայց 673 Թուականին Եգիպտոսի Պուէմ խալիֆան ալ աւրել տուաւ. դարձեալ նորոգեցին Քրիստոնեայք սակաւ միջոցի մէջ: Եւ դարձեալ Հաքէմ իշխանն ալ 1009 Թուականին Հըրէից Թախանձանօքը եկաւ սուրբ Յարութեան տաճարը աւրեց, ինչպէս որ Լատինաց Պուատէղեմար կը գրէ: Եւ Թէպէտ սոյն իշխանը աւրեց սուրբ Յարութեան տաճարը, բայց 1031 Թուականին իւր մօրը հրամանաւը, վերստին շինեցին Քրիստոնեայք սոյն գերահրաշ Տաճարը, եւ ասոր համար Պարոնիոս պատմիչն ալ կը վկայէ: Այլ եւ Մարինոսի պատմութեան համեմատ 1235 Թուականին վերստին նորոգեցաւ կենսատու Գերեզմանն Քրիստոսի եւ երկնանման տաճարը. եւ Պոնիֆաշիոս որ գործոյն գլուխ էր, Գերեզմանը քանդելով վար կ'իջնայ այրին մէջ որ է բուն գերեզմանը, եւ հոն երկու հրեշտակներ նկարուած տեսած է, որոնք խիստ հնութեան պատճառաւ իսկոյն հող դարձած են. եւ փարշամակով պատեալ տախտակ մը տեսած է, որուն վրայ եղծուած գիրը այսչափ միայն կարդացուեր է. "Յիշատակ Հեղինէի . . . . . . զէ [illegible]՝ այլ յ[illegible], ա[illegible] . . . [illegible]

նորս դդ. և միւսները եղծուած ըլլալով չեն կրցած կարդալ։ Նաև սոյն պատմիչը ծանօթութիւն կուտայ թէ, իրենց տաճարին մէջի Քրիստոսի կապանաց սիւնը Թովմայի տունէն եկած է, որ Հայոց ձեռքն էր, և ինքն ալ ականատես է եղեր ատեն նոյն վանուց մէջ ըլլալուն։ Նաև այս փառաւոր տաճարը առաջ շատ գեղեցիկ ձեւեր ունեցեր է, և հիանալի բազմաթիւ դըռներ. բայց պատմութեանց մէջ չանցնելուն համար, ամէնն ալ հիմայ մեզ անծանօթ են, թէ և մէկ քանի դռները դեռևս կ'երևին. բայց քարամբ հիւսեալ են. և հիմայ մէկ դուռ միայն ունիմք երեք ազգքս, ուրկէ ել և մուտ կ'ընեմք։ Այս երկնանման տաճարիս մէջ երեք ազգաց պաշտօնատար միաբանութիւնք կան, այսինքն՝ Հայոց, Յունաց և Լատինաց, և մի լուսարար Ղփտւոց, որք անխափան իւրաքանչիւր ծիսից և արարողութեանց համեմատ՝ ամէն օր ըստ սովորութեան ժամերգութիւնք և սուրբ Պատարագի խորհուրդը կը կատարեն կենդանատու Գերեզմանին վրայ՝ 'ի փառս Արարչին և 'ի քաւութիւն ամենայն հաւատացելոց։

---

## 143

Այս սուրբ Տաճարիս արևելեան գաւթի դռնէն ելլելով սակաւ ինչ դէպ ի արևելք և հիւսիս գնալով վաճառանոցին քառակուսի ճանապարհին վրայ սիւն մը կայ կայնեցուցած, որ հիմայ շէնքին մէջն է, այս սիւնիս վրայ դրին

Յիսուսի Տեառն մերոյ մահուան վճիռը, և այն տախտակը՝ որուն վրայ գրուած էր երեք լեզուաւ "Յիսուս Նազովրեցի Թագաւոր Հրէից". (Յովհ. ԺԹ. 19.)։ Եւ սոյն տեղւոյս հիւսիսակողմը ճանապարհին վրայ կամարներ կան, որոնց վրայ շատ տուներ շինուած է. այս տեղերս նստած էին կանայք, որոնք Յիսուսի վրայ կու լային. բայց Յիսուս անոնց դառնալով ըսաւ. "Դստերք Երուսաղէմի, մի լայք 'ի վերայ իմ, այլ լացէք 'ի վերայ անձանց ձերոց և որդւոց . . . զի եթէ ընդ փայտ դալար զայս առնեն, ընդ չորն զի՞նչ լինիցի"։ (Ղուկ. ԻԳ. 28, 31.)։ Եւ սոյն տեղւոյս արեւելեան կողմէն երկրորդ կամարին աջակողմը նորակերտ տուն մը կայ, որ նախ հացի փուռ էր, ուր ձգեցին Հրեայք Վերոնիկա կինը՝ ըստ Մարկնոսի պատմութեան, և կ'ըսէ թէ այս այն տեղատես կինն է որ Յիսուսէն բժշկեցաւ. և այն կնոջ տունը հոս լինելով՝ կենարարն մեր Յիսուս ծանրադոյն խաչը ուսը անցնելու ժամանակ, այս բարեպաշտ կինը անոր քրտունքները տեսնելով՝ վարշամակը երկնցուց իրեն, որ իւր քրտունքը սրբած ժամանակ աստուածային երեսին պատուական պատկերը նկարուեցաւ նոյն վարշամակին վրայ. ուստի Հրեայք այս հրաշքը տեսածնուն պէս նոյն կինը հացին փուռը ձգելով այրեցին։ Այս տեղէն ուղղակի վար իջնելով, պողոտային գլուխը և սակաւ ինչ հիւսիսակողմը պալատ մը կայ, զոր հռովմէական Հայք ալադգաց ձեռքէն դրամով գնեցին

եկեղեցի շինելու համար․ և սոյն եկեղեցւոյս դուրսի կողմէն երկու սեան կտոր կայ ընկողմանեալ․ որոնց համար կը պատմուի՝ թէ խաչափայտը Յիսուսի ուսէն առնելով՝ սոյն սեան վրայ դրին․ ուր տեղ հանդիպեցաւ Սիմոն կիւրենացին, և բռնելով զինքը խաչը ուսը տուին որ տանի․ (Մարկ․ ԺԵ․ 21․)։ Այս տեղւոյս դիմացը հիւսիսակողմը Նէմցէի նորաշէն հիւպատոսարանն է, և ունի վայելչագեղ եկեղեցի մի, և սեղան պատարագամատոյց և քանի մի աւստրիացի կարգաւորք։

### Փուշ պսակի եկեղեցին։

## 144

Արտաքոյ դրանն Պիղատոսի, և անոր կամարին խարսխին կից է փուշպսակի եկեղեցին։ Այս սուրբ տեղս աւերակ էր առաջ և 1838 Թուականին Լատինք առին և եկեղեցի շինեցին յանուն փուշպսակի և ձաղանաց։ Յետոյ նոյն տեղւոյն արեւմտեան կողմէն ալ աւերակ տեղեր առնելով, 1861 Թուականին փառաւոր ամբաշէն կուսանաց վանք մ'ալ շինեցին։

### Յովակիմայ եւ Աննայի տունը, ուր ծնաւ կոյսն Մարիամ Աստուածածին։

## 145

Պրոպատիկէ աւազանին և քաղաքի արեւելեան դրան մօտ փառաւոր վանք մի է Յովակիմայ և Աննայի տունը, զոր Հայոց Արշակունի նախարարները շինեցին․ յետոյ Խաչա-

կրած ժամանակ Լատինաց ձեռքն անցաւ, և կուսանաց վանք ըլլին։ Իսկ 1187 Թուականին Եուսուֆ Սալահատտին Երուսաղէմն առած ժամանակ յափշտակեց սոյն վանքն ալ Լատինաց ձեռքէն, և իւր ազգին վարժարան շինեց։ Բայց 1857 Թուականին Լատինները իբրեւ իրենց սեպհական ստացուած՝ խնդրեցին այլազգիներէն, և մինչեւ 1862 Թուականին հազիւ կարողացան իրաւանց տէր լինել, և սկսեցին նոյն հռչակաւոր վանքը նորոգել և պայծառացուցանել՝ ի փառս Աննային և ՚ի պարծանս հաւատացելոց։

Բեդհեզդայ։

## 146

Այս վանքիս հարաւային կողմն է Բեդհեզդան, այն է հինգ սրահը, որուն մէջ կ'իջնէին ախտացեալք, հիւանդք, կաղեր, կոյրեր, գօսացեալներ և անդամալոյծներ, որոնք լի յուսով կը սպասէին նոյն Պրոպատիկէ աւազանին ջրոյն յուզմանը. վասն զի Տիրոջ հրեշտակը կ'իջնէր աւազանին ջուրը կը յուզէր՝ կ'ըսէ սուրբ աւետարանը. և ով որ նախ զինքը նոյն ջրին մէջ ձգէր յուզուած ժամանակը, կատարեալ բժշկութիւն կը գտնէր։ Այս տեղ կը սպասէր նաեւ երեսուն և ութամեայ անդամալոյծը, որ ջուրը յուզուած ժամանակ մէջը մտնէ. բայց իրեն օգնական մը չունէր որ ժամը հասնելուն զինքը հոն իջեցընէ, մինչեւ որ ինքն ալ՝ բժշկապետ Յիսուսին խոստովանեցաւ ըսելով,

«Տէր, ո՛չ զոք ունիմ . . . մինչ ես դանդաղիմ այլ ոք յառաջ քան զիս իջանէ և բժշկի»։ Եւ այլն. Եւ բարերարն ազգի մարդկան Յիսուս, գթալով անոր Թշուառ վիճակին վրայ՝ առողջացոյց ու ըսաւ. «Արի առ զմահիճս քո և երթ ՚ի տուն քո»։ (Յովհ. Ե. 8.)։ Եւ այս աւազանս Սողոմոն շինեց կից յորմն Տաճարին, որուն եկեղեցական անօթներուն լուացման և զոհերուն ջուրերը սոյն աւազանին մէջ հաւաքուելով, և Աստուծոյ հրամանաւը հրեշտակին յուզմամբը ախտացեալները բժշկութիւն կը գտնէին. բայց երբոր եկեղեցական անօթները և զոհերը վերցան, սոյն աւազանը Թէ և նոյն խորութիւնը ունի, բայց նոյն հրաշքը և նոյն ջուրը չունի, և պարտէզ է այժմ. այլ և հինգ սրահից երկուքը միայն մնացած է արեւմտեան կողմէն, որոնք քաղաքին աղբիւններովը համարեա Թէ լեցուած են անտէրունչ մնալուն համար։

Սողոմոնեան Տաճարը։

# 147

Այն Պրոպատիկէ աւազանին կից, և շատ ընդարձակ տեղ մի է և փառաւոր, որուն մէջ երկու մեծամեծ տաճարներ կան. մինն Սրբութիւն սրբութեանց ըսուած տեղւոյն վրայ, միւսը բուն Տաճարը։ Սրբութիւն սրբութեանց ըսուած Տաճարը, որուն պարագաները Սախրէթ-ուլլահ կ՚անուանեն, ութ անկիւնի ձեւ ունի, և չորս քառակուսի սիւներու վրայ շինուած է.

և գմբէթը ութ սիւներու վրայ հաստատուած , և անոր որմերը ներսէն և դրսէն գոյնզգոյն քարերով զարդարեալ . և չորս դուռ ունի չորս կողմէն ։ Հին ժամանակ այս Տաճարիս մէջ դրուած էր Տապանակ ուխտին , անոր համար Սրբութիւն սրբութեանց կ'անուանէր ։ Իսկ միւս Տաճարը՝ որուն մեք քրիստոնեայքս Սրբութիւն սրբութեանց կ'անուանեմք , այլազգիները Հարէմ-Իշ-շէրիֆ կ'ըսեն . ան ալ չորս դուռ ունի դէպ 'ի արեւելք , երկուքը դէպ 'ի արեւմուտք , և երկուքը դէպ 'ի հիւսիս ։ Նոյն աստ մէջ քար մը կայ , որուն համար կ'ըսուի թէ Յիսուսի աջ ոտից տակի քարն է , որուն վրայէն համբարձաւ Երկնարարն մեր . և սոյն քարը չորս կանգուն երկայնութիւն և չորս կանգուն լայնութիւն ունի ։ Նոյնս և Գեթսեմանի ձորին կողմէն տան ձեւով գմբէթաւոր խորագոյն տաճար մ'ալ կայ , 'և անոր մէջը օրօրոցի ձեւ քար մը , որուն այլազգիները Իսա-պէշիկի կ'ըսեն , այսինքն Քրիստոսի օրօրոցը ։ Այն Տաճարին արեւելեան դուռը՝ ուրկէ Փրկիչն մեր ներս մտաւ քառասնօրեայ գալստեան օրը , նոյն տեղւոյն մօտ եանեւի կողմը երկու սեանց վրայ հնաշէն երկու սեննակներ կան . և սոյն սեննակներուն աջակողմը դէպ 'ի հիւսիս քարընկէց մը հեռի գեղեցկաշէն գմբէթ մը , ուր հին ժամանակ Սողոմոնի աթոռը դրուած էր , որ զկնի աղօթից , գալով նոյն աթոռին վրայ կը բազմէր ։ Իրաւի այս Տաճարս պարծանք է ամենայն աստուածապաշտից , ինչպէս որ վերը ըսուեցաւ , տեղը սուրբ

էր և Տապանակ ուխտին սուրբ՝ որուն մէջը
կը բնակէր. բայց բարձաւ սոյն տաճարին փա-
ռաւորութիւնը այն ժամանակ՝ երբ որ Քաղդէ-
ները Երուսաղէմը գերեցին, և Երեմիա մար-
գարէն Տապանակ ուխտին տարաւ Սինայ և Նաբ-
բայ լերանց մէջ անտառախիտ տեղ մը այրի մը
մէջ պահեց Տաճարին վրանին հետ, և քարայ-
րին դուռը ինքնիրեն գոցուելով անյայտ մնաց
մարդիկներէն մինչեւ յայսօր ժամանակի ։

Տաճարին գաւիթի դռները ։

## 148

Տաճարին գաւիթը տասն և չորս դուռ ունի ։

Առաջինն է արեւելեան դուռը, որ Ողոր-
մութեան դուռ ալ կ'անուանի, որ հիմայ քա-
րով և կրով հիւսուած է ։

Երկրորդը հարաւային կողմը. Սրբութիւն
սրբութեանց ըսուած տաճարին մօտ ։

Երրորդը վերոյիշեալ դրան կիցն է աջ կող-
մէն. և ասոր համար կ'ըսուի թէ, Տաճկաց ա-
րէնադիրը երբոր Երուսաղէմ եկաւ, իւր կառքը
այն տեղը կապեց, ուստի մեծ յարգութեամբ
կը համբուրեն և կը պատուեն այլազգիք այս
դուռը ։

Չորրորդ դուռը դատարանին մէջն է ։

Հինգերորդը դարձեալ դատարանի դուռն է ։

Վեցերորդն է, անոր աջ կողմէն Թագիայի
դուռը ։

Եօթներորդն՝ չէջայ կոչուած բաղնիքին ե-
տեւը կը բացուի, որուն Լուացարանի դուռ-
ալ կ'ըսուի ։

Ութներորդը՝ Գեղեցիկ ըսուած դուռն է, որ չէֆայ բաղնիքին դրան մօտ է, և տասն աստիճանաւ կ'իջնէ Տաճարի գաւիթը։

Իններորդը մեծ դուռը, որ արեւմտեան կողմն է, և այլազգական բառով ըլղո-փէրի կը կոչուի։

Տասներորդն երկաթի մեծ դուռն է։

Մետասաներորդը Պիղատոսի պալատին քով եղած դուռն է, որուն քով գմբէթ մ'ալ կայ։

Երկոտասաներորդ՝ մեծ դուռը հիւսիսային Պիղատոսի պալատի ետեւէն կամարին տակն է։

Երեքտասաներորդ մեծ դուռը՝ վերինին ալ կողմը, Սիմոն փարիսեցւոյն շուկայի փողոցի դիմացն է։

Չորեքտասաներորդ դուռը՝ Պրոպատիկէ աւազանին քովն է, որուն հին ժամանակ Տաճարին պատարագցու ոչխարները անկէ անցունելով Հօտից դուռ ալ կ'ըսուէր, իսկ հիմայ ոմանք Աստուածածնի դուռ ալ կ'ըսեն։

Մարկոս աւետարանչի տունը

# 149

Սիոն լերան վրայ սուրբ Յակոբայ վանքին ետեւի արեւելեան կողմէն դէպ 'ի հիւսիս քիչ մը գնալով և անկէ արեւելք դառնալով երկաթեայ դուռ մը կ'երեւայ, այն է Մարկոս աւետարանչի տունը, որուն մէջ ժողոված էին Պետրոս բանտին մէջ եղած ժամանակը՝ սուրբ կոյսն Մարիամ, Յակոբ Տեառնեղբայր և ուրիշները. որոնք Պետրոսի ազատութեան համար

ատէպ կ'աղօթէին . և յանկարծակի Պետրոս ազատուեալ բանտէն սոյն տեղն եկաւ ։ Վանքէն դուրս կամարին տակը քարէ սիւնի մաս մը կայ , այն է երկաթեայ դրան նշանը , ուսկէ յանկարծակի ներս մտաւ՝ դուռը ինքնիրեն անոր առաջը բացուելով, ինչպէս որ Գործք առաքելոցին մէջ կը պատմուի, (Գործ. ԺԲ. 2. 17.)։ Եւ սոյն վանքս քրիստոնեայ թագաւորները շինեցին յանուն սուրբ Աստուածածնի , և այժմ Ասորւոց ազգին ձեռքն է ։ Եւ այս վանքին աւագ խորանին վրայ սուրբ Աստուածածնի պատկերը կայ դրըուած , որուն համար Ասորիք կ'ըսեն թէ Մարկոս աւետարանիչը՝ որ Յովհաննէս ալ կ'ըսուէր , իւր ձեռամբը նկարած է , որ շատ հիանալի է ։

Սոյն վանքս Հայոց ՌՃՀՁ թուականին Գրիգոր Շղթայակիր սուրբ հայրապետն մեր նորոգեց , և եկեղեցին սպիտակցոյց . և փրկչի 1831 թուականին կրկին նորոգեալ սպիտակցաւ Հայոց ձեռօք ։

Յունաց սուրբ Գէորգայ վանքը։

## 150

Սուրբ Յակոբայ արեւելեան կողմէն Հայոց թաղին մէջն է սուրբ Գէորգայ անուամբ վանքը , որ Յունաց ձեռքն է և ունի փոքր եկեղեցի մի և քանի մի սենեակներ ։ Եւ սոյն վանքիս մօտ է մեր սուրբ Հրեշտակապետի վանքը , ուր տեղ աշխարհէն հրաժարեալ հաւատաւոր կանայք և կուսանք կը բնակին , իրենց հոգեւորականն սուրբ Յակոբայ վանքէն ընդունելով ։

Յունաց սուրբ Աստուածածնի վանքը։

# 151

Սուրբ Յարութեան տաճարէն դէպ 'ի արեւմուտք յառաջանալով ուր Պ վտուոց իջեւան մը կայ, որուն դիմացն է Յունաց սուրբ Աստուածածնի անուամբ վանքը, որ ունի փոքր եկեղեցի մի եւ քանի մի փոքր սենեակներ, ուր տեղ կը բնակին Յունաց մայրապետները։

Լատինաց պատրիարքարանը։

# 152

Քաղաքիս Յաֆայի կոչուած դռնէն ներս մըտած ժամանակ սակաւ ինչ դէպ արեւելք ուղղակի գնալով եւ վաճառատանց գլուխը հասնելով, եւ 'ի հիւսիս սակաւ ինչ յառաջանալով՝ կը գտնես Լատինաց պատրիարքարանի դուռը, որ վերոյիշեալ վաճառատուններուն վրայ շինուած է. ունի փոքրիկ եկեղեցի եւ սենեակներ, որ 1850 Թուականին շինուեցան։

Հռովմէական Յունաց վանքը։

# 153

Լատինաց պատրիարքարանէն սակաւ ինչ դէպ 'ի հիւսիս յառաջանալով՝ արեւմտակողմը մեծ դուռ մը կայ, այն ինք է Յոյն Հռովմէադաւանաց վանքը, զոր 1847 Թուականին 'ի հիմանց նորոգ շինեցին. եւ ունի եկեղեցի մը երեք խորանաւ յանուն սուրբ Աստուածածնի, եւ քանիէն աւելի սենեակներ։

Խփուաց սուրբ Գէորգայ վանքը։

154

Վերոյիշեալ վանուց կից է սրբոյն Գէորգայ վանքը, որոյ եկեղեցին չորս քառանկիւնի սեանց վրայ հիմնեալ է, բայց տաճարը խիստ ցած է, և ունի երեք խորան։ Հոս է սուրբ Գէորգայ մասունքին մէկ կտորը։ Իսկ մեք ըստ մեր նախնեաց սովորութեան սուրբ Գէորգայ տօնին, այն է Վարագայ խաչի պահոց ուրբաթ երեկոյին սոյն սուրբ եկեղեցիս գնալով նախատօնակ կը կատարեմք, և շաբաթ օրը վնիի ժամերգութեան սուրբ Պատարագի փրկարար խորհուրդը եւս սոյն եկեղեցւոյս մէջ կը կատարեմք՝ 'ի փրկութիւն ամենայն հաւատացելոց։

Լատիհաց մեծ վանքը։

155

Քաղաքիս արեւմտեան պարսպին մօտ է Լատիհաց մեծ վանքը, որ ունի կաթուղիկէիւ եկեղեցի յանուն սուրբ Աստուածածնի, եւ տասն և մէկ խորան, որոց երեքը դէպ 'ի արեւելքն է հանդերձ աւագ խորանաւ, և չորսը՝ չորս սեանց առաջը, և չորսն առ հարաւ և առ հիւսիս. և եկեղեցին է կամարակապ չորս քառակուսի սիւներու վրայ, բայց շատ ցած ու անշուք է։ Վանքին մէջ կան շատ սենեակներ, յատուկ թաղ կարգաւորաց, նաև դեղարան և հիւանդանոց, և արտաքոյ վանուցս հիւրանոց աւելի քան յիսուն սենեակով։ Իսկ հանդէպ այս վա-

նուցս արեւմտեան կողմը 1861 Թուականէն ըսկեալ շինութիւն մը եւս շինեցին, զոր պատրիարքարան պիտի ըսեմ, որ վայելուչ իսկ է, վասն շքեղ փառաւորութեան և տեղւոյն յարմարութեան ։

Պրուսաց վանքը։

156

Լատինաց վանքին հիւսիսակողմն է Պրուսաց վանքը․ որ հին եկեղեցի մը ունի յանուն Միքայէլի հրեշտակապետի, և ունի վաթսունի չափ սենեակ, և յանդիման սորա է եպիսկոպոսարանն, և այլն։ Բայց ազգն Պրուսաց 1860 Թըուականին Երուսաղէմ քաղաքէն դուրս սկսեց մեծ հոյակապ վանք մը շինել բժշկարանաւ, ձեմարանաւ, եպիսկոպոսարանաւ և հիւպատոսարանաւ, որ շատ ընդարձակ է և փառաւոր ։

Բեթղեհէմ քաղաքը։

157

Երուսաղէմէն առ հարաւակողմը մէկ ու կէս ժամու չափ ճանապարհորդելով, Բեթղեհէմ քաղաքը կը հասնիմք․ և այս քաղաքիս ծայրն է Յիսուսի Տեառն մերոյ ծննդեան տեղը, որ երեք ազգաց հոյակապ վանքերուն մէջն է, և ամէն օր պատարագաւ և ժամերգութեամբ կը պաշտուի սուրբ տեղերը։ Յոյնք և Հայք Քըրիստոսի Տեառն մերոյ ծննդեան սուրբ Տեղւոյն վրայ կը պատարագեն․ իսկ Լատինք սուրբ Մըսրին վրայ, որ հանդէպ ծննդեան տեղւոյն է, ուր

որ մանկացեալն Յիսուս խանձարրովք պատեալ եդաւ ։ Այն փառաւոր ծննդեան այրին մէջ իւրաքանչիւր ազգ կանթեղներ և մոմեր ունին. և արտաքոյ այրին հիւսիսակողմի դասը մեր յատուկ եկեղեցին է, ուր երկու պատարագամատոյց սեղաններ կան. և սոյն եկեղեցւոյս մէջ կը կատարեմք ժամերգութեան կարգն, և ապա սուրբ Պատարագը ծննդեան տեղւոյն վրայ կը մատուցանեմք ։ Դարձեալ մեր եկեղեցւոյն մէջ դուռ մը ունին Լատինք, ուրկէ գալով սուրբ Այրը կ'իջնեն և պատարագ կը մատուցանեն ։ Եկեղեցւոյ հարաւակողմի դասը Յունաց ձեռքըն է, որ շատ ընդարձակ է, և ունի դուռ ուրկէ սուրբ տեղը կ'իջնեն. և դարձեալ ունի յատուկ դուռ ուրկէ իրենց մասնաւոր վանքը կ'երթան ։ Այս երկու դասերը և ատեանը որ հիմայ Յունաց ձեռքն է, բաժնուած է ժողովրդեան կայնած սրահէն, որ իբրև գաւիթ կը ծառայէ, և քառասուն սիւներու վրայ ամրացեալ է. և երեք դուռ ունի, որոց մէկէն դարձեալ Յունաց վանքը կ'երթայ, միւսը Լատինաց, իսկ երրորդն՝ որ արեւմտակողմն է՝ մեծ փայտեայ չէնք մըն է և փոքր գաւթի մէջ կ'ելլէ, ուրկէ որ կրկին դրամբ մեր վանքը կ'ելլեմք, որ սուրբ ծննդեան արեւմտակողմն է ։ Եւ վերոյիշեալ մեծ տախտակեայ դրան վրայ գրուած է յիշատակարան այսպէս. «Ի թիւ Հայոց ՌՀՁ կազմեցաւ դուռս սուրբ Աստուածածնի, ձեռամբ Տէր Աբրահամի և Տէր Առաքելոյ, 'ի թագաւորութեան Հեթմայ Կատանդէի, և այլն »։

Իսկ մեր յատուկ վանքը եւս ունի եկեղեցի երեք խորանաւ. աւագ խորանն է յանուն սուրբ Աստուածածնի, աջակողմեանը յանուն սուրբ Յակոբայ, ձախակողմեանը՝ յանուն սուրբ Ստեփաննոսի. և աջակողմեան մատրան մէջ դարձեալ պատարագամատոյց սեղան մի կայ, յանուն Յովակիմայ և Աննայի : Այս եկեղեցիս նորոգեց 1620 Թուականին Գրիգոր Պարոնտէր Հայրապետն, եւս և Գրիգոր Շղթայակիր Հայրապետն 1726 Թուականին, որ բացաւ վանուց տակի եղած հնաշէն եկեղեցին ալ, և շինեց երեք սեղան պատարագամատոյց յանուն սուրբ Երրորդութեան, որ այժմ է իբր սեղանատուն և երբեմն դասարան լինի Բեթղէհէմի Հայ տղայոց : Դարձեալ սոյն վանքս ունի առանձին պատրիարքարան և փառաւոր սենեակներ միաբանից և ուխտաւորաց համար. և ունիմք այս վանուցս յատուկ պաշտօնեայ եկեղեցական վարդապետաց սարկաւագ, դպիր, և քրձազգեաց միաբանք. որ միշտ Տիրոջ պաշտօնը փառաւորապէս կը կատարեն 'ի փառս Արարչին և 'ի յիշատակ ազգիս Հայոց :

Սոյն սրբազան տեղեաց կատարեալ տեղեկութիւնք տես 'ի Ստորագրութեան Երուսաղէմի, յերես 111 :

Լատինաց վանքը։

158

Սուրբ Ծննդեան մեծ եկեղեցւոյ հիւսիսային կողմն է Լատինաց վանքը. որուն մէջ խաչաձեւ

եկեղեցի մը կայ կառուցեալ յանուն սրբոյ Կարապետի, և երեք հոյակապ խորաններ ունի. և յատակը մարմարեայ քարամբ յօրինեալ է։ Այն եկեղեցւոյս մէջն է այն այրը, ուր որ ամփոփուած են Բեթղեհեմի մանկանց նշխարները։ Ու և ունի սոյն վանքս միաբան կրօնաւորներ, պաշտօնատարներ, և միաբանից համար յատուկ առանձին սենեակներ, և այլն։

Յունաց վանքը։

## 159

Ծննդեան սուրբ եկեղեցւոյ հարաւակողմն է Յունաց վանքը, որ ունի սուրբ Գէորգայ անուամբ կառուցեալ եկեղեցի մի, նաև շատ սենեակներ, հիւրանոց, ևս և պաշտօնեայ միաբանք, որք ըղմնութեամբ իրենց պաշտօնը կը կատարեն։ Ու սոյն Բեթղեհեմ քաղաքի ժողովուրդը ըստ մեծի մասին քրիստոնեայ են, այսինքն՝ Հայ, Յոյն, և Լատին, բայց սակաւաթիւ այլազգիք ալ կան։

Քառասնից այրը։

## 160

Յունաց վանքին ետեւի կողմը սակաւ հեռաւի այր մը կայ, որուն համար կ'ըսուի աւանդութեամբ, թէ սուրբ Աստուածածին սոյն այրին մէջ քառասունք պահած է. և ոմանք ալ կ'ըսեն, թէ երբոր Հերովդէս Բեթղեհեմի մանկունքները կոտորեց, նոյն միջոցին Յիսուսը սոյն այրին մէջ պահեցին. և է եկեղեցի և ուխտա-

տեղը ամենայն քրիստոնէից ։ 1865 ին Լատինք իրենց սեփականել ուզեցին առանձին. բայց Հայք և Յոյնք, որոնք մի-մեւերեւ ըլլալուն համար հաստատագրեր ունէին, դատ վարելով՝ չյաջողեցին. և հիմակ առաջուան պէս դուռը միշտ բաց է ամեն ազգի ուխտաւորաց։

Հովուաց բացօթեայ տեղը ։

# 161

Արեւելից կողմէն Բեթլեհեմին իբր կէս ժամ հեռաւորութեամբ Հովուաց բացօթեայ տեղն է, ուր հրեշտակէն Յիսուսի ծննդեան աւետիսն ընդունեցին, և փառք 'ի բարձունս ըսին. (Ղուկ. Բ. 8. 20)։ Այս տեղս է ստորերկրեայ եկեղեցի մը յանուն Հրեշտակաց և Հովուաց, որ բաւական խոր է երկրին տակը, ուր բազմաթիւ աստիճաններով կ'իջնեն ուխտաւորք, և է Յունաց ձեռքը։

# ՅՈՐԴՈՐԷԿ

Եթէ Երուսաղէմի մէջ այնչափ սուրբ տեղերը և փրկութեան անմահութեան աղբիւրի ակունքները նոյն սուրբ տեղն է և իւր սահմանները, ուրեմն պէտք է որ միշտ անմոռաց պահեմք սրբազան Տեղեաց յիշատակը. և մեր դիւրազգաց սրտին մէջ անջինջ քանդակենք նոցին սուրբ սէրը. և մեզ քրիստոնէից հաւատացելոցս անհրաժեշտ պարտք համարենք դիտել այն սուրբ քաղաքը յուխտ և յերկրպագութիւն կենսատու սուրբ տեղեաց, զորոց փոքր 'ի շատէ տեղեկութիւն տուինք Քրիստոսատէր ջերմեռանդ հաւատացելոյդ և յուսացելոցդ 'ի տէր:

Սիրելի ընթերցողք, թէպէտ ըստ մեր տըկարիմաց տեսութեան, այն Երուսաղէմ քաղաքին հիմը և հաստատութիւնը Սեմ դրարինք, բայց ըստ հոգևոր իմաստնոց Աստուած հաստատեց այս քաղաքին հիմունքները, ինչպէս որ հոգեպատում մարգարէն կը վկայէ ըսելով. «Աստուած հիմունս էարկ նմա». և տէրունական բանն ալ մեզի ծանօթութիւն կու տայ Երուսաղէմ քաղաքի երկնաւոր թագաւորին լինելոյն համար՝ ըսելով. «Մի երդնուցուք և մի յԵրուսաղէմ, զի քաղաք է մեծի արքային». և Դաւիթ կ'ըսէ դարձեալ. «Մեծ է տէր և օրհնեալ է յոյժ 'ի քաղաք Աստուծոյ մերոյ 'ի լերան սուրբ նորա»:

Ուրեմն պէտք է որ փափաքանօք ելանեմք Տիրոջ քաղաքը և երկրպագանեմք անոր տնօրի-

նախկան սուրբ տեղեաց, որոնք իրեն պատուանդանի տեղերն են, և իսկ կենարար արեան չիթերովը ներկուած: Այս սուրբ վայրս 'ի սկըզբանէ անտի ամեն երկիրներէն շատ հրաշաւոր է և ահարկու, մանաւանդ Արարչապետն ամենայնի իւր կանխատեսութեամբն յառաջ քան զլինելն աշխարհի՝ սոյն Երուսաղէմին մէջ պատրաստած էր իւր միածին Որդւոյն փառաց աթոռը դնել. ուստի Յակոբ նահապետն կանխագուշակեց հրաշալի տեսլեամբ ըսելով. «Տէր է 'ի տեղւոջ յայսմիկ. ահեղ իմն է տեղիս այս: Եւ այս է դուռն երկնից»:

Յիրաւի՛ երկնից դուռն է սուրբ Գողգոթայ, հաւատացեալ եղբարք, որովհետեւ մարդիկ՝ որք 'ի բազում ժամանակաց հետէ Թափառական կը շրջէին երկնից դուռը գտնելու համար, անհնարին եղաւ անոնց գտնել. բայց երբոր կենարարն մեր Յիսուս քառակուսի խաչին վրայ բեւեռեցաւ, իւր աստուածային կողը տիգաւ իբրեւ երկնից դուռը բանալ տուաւ, ուրկէ հաւատացեալները անխափան երկինքը ելելու կը կարողանան, ինչպէս որ իւր անսուտ բերանն ալ կը վկայէ ըսելով. «Ես եմ դուռն»: Պարծեալ հոգեպատում մարգարէն Դաւիթ Սիոն լեռը Աստուծոյ տուն անուանելով կ'ըսէ. «Լեառն ընդ որ հաճեցաւ Աստուած բնակիլ 'ի նմա»: Եթէ Աստուած կը հաճի Սիոն լերան վրայ բնակելու, մենք որ յաւրաժամ անդադար փափագանօք կը տոչորինք զԱստուած տեսնելու, ինչո՞ւ չպիտի գանք Սիոն

լերան վրայ մեր տենչալի փափաքը իւր բնակած տեղերէն առնուլ. քանզի կ՚ըսէ Յիսուս փրկիչն Սիոնի համար. «Այս է հանգիստ իմ յաւիտեանս յաւիտենից, ՚ի սմա բնակեցայց, զի հաճեցայ ընդ սա»: Ուստի Սիոն Աստուծոյ հանգիստն է, ապա քանի՞ առաւել ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ հանգիստ և մխիթարութիւն է անոնց, որք Յիսուսի սիրով վառուած սոյն սուրբ տեղս կը դիմեն յարգական ուխտ և երկրպագութիւն մատուցանելու չարչարանաց սուրբ տեղեաց. և Զաքարիան կը կոչէ ըսելով. «Տէր այսպէս ասէ. դարձայց ՚ի Սիոն և բնակեցայց ՚ի մէջ Երուսաղէմի»:

Ուստի Աստուծոյ քաղաքը ազատ է ամէն մարդ մտնելու, և կը խոստանայ Աստուած ամէն մարդու խնդրուածքը կատարելու, ո՞վ է որ պիտի խորշի Աստուծոյ Թագաւորանիստ քաղաքը երթալէն և իւր ուզածը առնելէն. ըստ այնմ թէ՝ «Խնդրեցէք և տացի ձեզ, և այլն»: Ինչպէս որ թագաւոր մը իւր իշխանութեանը տակը եղած քաղաքներէն աւելի իւր արքայանիստ քաղաքը կը սիրէ, սոյնպէս ալ Արարիչն Աստուած թէպէտ երկինքը ու երկիրը իւր ամենակարող ձեռքն ստեղծեցին, և իւր իշխանութեան աթոռը ամէն հաւատացելոց սրտին մէջ հաստատուած է, բայց և այնպէս իւր ամենատես աչքը և սիրտը միշտ Երուսաղէմին վրայ դարձուներով՝ անոր ազատութիւնը կը կամի. և զայն նախապատիւ կը համարի ամէն քաղաքներէն: Ինչպէս որ Դ. Թագաւորաց մէջ կ՚ըսէ Ես

բուսաղէմի համար, «Աչք իմ և սիրտ իմ անդ եղիցին զամենայն աւուրս». Եւս և «Վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ, վասն իմ և վասն Դաւթի ծառայի իմոյ»: Իսկ Եսայի մարգարէին բերանով կ'ըսէ. «Երուսաղէմ, 'ի վերայ պարսպաց քոց պահապանս կացուցից զօրն և զգիշերն ողջոյն». Աստուծոյ Երուսաղէմը առաւել սիրելոյն յայտնի ապացոյց սա է, որ իւր բոլոր չարչարանաց հանդէսները Երուսաղէմին մէջ կատարեց, որ իւր չարչարանաց արդեամբքը Երուսաղէմի անունը պայծառ մնայ յաւիտեանս յաւիտենից: Իսկ և օրինաց իշխանութիւնը Երուսաղէմին տուաւ, ըստ այնմ. «Օրէնք 'ի Սիոնէ ելցեն, և բան Տեառն յԵրուսաղէմէ»: Ուրեմն սա է շնորհաց աղբիւրը. պէտք է որ անմահական ջուրի կարօտող մարդիկ Երուսաղէմ դիմեն, և ըմպեն գետահետեալ աղբերէն կենսացուցիչ ջուրն անմահութեան, որ կատարումն է գլխաւոր առաքինական բարեգործութեանց հաւատոյ, յուսոյ, և սիրոյ: Տեսէք Դաւիթն որ ունէր չափազանց հարստութիւն, թագաւորութիւն, մարգարէութիւն, և շատ վայելչութիւններ և փառքեր. բայց իւր մի միակ ուրախութիւնը այն ժամանակ կատարեալ լեցեալ կը տեսնէր, երբ որ զինքը Տիրոջը տունը երթալու կը հրաւիրէին. ըստ այնմ թէ՝ «Ուրախ եղէ ես որք ասէին ցիս 'ի տուն Տեառն երթիցուք»: Եթէ Դաւիթ ստուերական օրինաց մէջ Տիրոջ տունը երթալը իրեն կատարեալ ուրախութիւն կը համարէր, ապա մենք շնորհա-

կան և ճշմարիտ օրինաց մէջ ծաղկեալ քրիստոնէայքս որքան պարտաւոր եմք ուրախ լինելու այն ժամանակը՝ երբոր զմեզ երկնաւոր Թագաւորին սուրբ Գերեզմանին , և արիւնամած սուրբ Գողգոթային ուխտ և երկրպագութեան կը հրաւիրեն . որոնք որ անշուշտ մեր յաւիտենական դատապարտութենէն ազատութեան յոյս են , և երկնային լուսեղէն փառաց հանդիսացուցիչ ։ Տովբիթ Երուսաղէմ սիրողները երանելի կ'անուանէ , և խաղաղութեան մէջ ցնծալու յոյս կու տայ ։ Տես նա եւ ինչ կ'ըսէ Աստուած Եսայի մարգարէին բերանովը իւր սուրբ լեռը մոռացողներուն . « Որք մոռացայք զլեառն սրբութեան իմոյ , ես մատնեցից զձեզ 'ի սուր , և ամենեքեանքդ կոտորեսջիք » ։ Եւ Դաւիթ մարգարէն այս բանէն սարսափելով կը խոստանայ երբէք Երուսաղէմը չմոռնալ՝ ըսելով . « Թէ մոռացայց զքեզ Երուսաղէմ , մոռասցի զիս աջ իմ » . և յաջորդ բանիւն ալ իւր ուխտը հաստատելու համար կ'ըսէ . « Կցեսցի լեզու իմ 'ի քիմս իմ՝ թէ ոչ յիշեցից զքեզ ըսկիզբն ուրախութեան իմոյ » ։ Եւ սուրբ Տեղեաց գերազանց օգտակարութիւնը կանխագուշակելով նոյն սուրբ Մարգարէն , զմեզ եւս կը հրաւիրէ ըսելով . « Եկայք ելցուք 'ի լեառն Տեառն և 'ի տուն Աստուծոյ » ։ Եւ Ամոս մարգարէն ալ նոյն մարգարէին բանին չհետեւողներուն , որոնք որ կ'անգոսնեն զԵրուսաղէմը , վայ կը կարդայ . և Զաքարիան անոր բանը հաստատելու համար Երուսաղէմի Թշնամեաց համար

կ՚ըսէ. «Երբ զօրաժողով լինին ՚ի վերայ Երու-
սաղէմի, հալեսցին մարմինք նոցա՝ մինչդեռ կաց-
ցեն ՚ի վերայ ոտից իւրեանց, և ծորեսցին
աչք նոցա ՚ի կապճաց իւրեանց, և լեզուք նո-
ցա հալեսցին ՚ի բերանս իւրեանց»։ Եւ վեր-
ջապէս զԵրուսաղէմ սիրողը, զԱստուած կը սի-
րէ, և զայն ատողն ալ զԱստուած կ՚ատէ։ Ե-
թէ հրեշտակները Երուսաղէմին համար ողոր-
մութիւն կը խնդրեն Աստուծոյ ըսելով. «Մին-
չեւ յե՞րբ ոչ ողորմեսցիս Երուսաղէմի»։ ո՞վ է
որ պիտի հակառակի Երուսաղէմի հետ, և ար-
համարհէ Սրբազան տնօրինական սուրբ տեղե-
րը, որք աներկբայ յոյս են բոլորով սրտիւ հա-
ւատացելոց՝ վերջին Երուսաղէմի արժանաւորս
կացուցանելոյ։ Ուրեմն արեամբ փրկեալ ժողո-
վուրդք, մի մոռանայք ձեր Երախտաւորին ե-
րախտիքը, բարեհաճեցէք գալու և աչաց ար-
տասուաց կաթիլներով լուանալու սուրբ Գող-
գոթայի արեամբ մածեալ քարերը, որք ջերմե-
ռանդ սրտից ջերմ արտասուաց փափագանօք
կը սպասեն։ Թող չմտածէ ջերմ հաւատացեալը
որ իմ Փրկչիս չունիմ արժանաւոր նուէրներ,
որուն ներկայացած ժամանակս առատօրէն տամ
և պարզերես երեւիմ. յիշէ որ Յիսուս գան-
ձանակի հանդէպ կայնած է, և մանրամասնա-
բար կը քննէ, չէ թէ ողորմութեան առաւե-
լութիւնը, այլ ողորմութիւն տուողին սիրտը.
և գիտէ կատարեալ սրտիւ երկու լումայ տը-
ւողն առաւել վարձատրել յաւիտենական փա-
ռաց մէջ քան զայն, որ մեծագործութեան համար

՚ի ցոյցս մարդկան և փառասիրութեան համար Յիսուսի գանձանակը ինչը լեցունել կ՚ուզէ , Յիսուս ձեր հաւատոյ ջերմ սիրոյն կը կարօտի , որով ինքը յերկնից՝ յանարգ բնութեանս խոնարհիլ յանձն առաւ , և սոյն քաղաքիս մէջ մանկացաւ , չարչարեցաւ , խաչեցաւ , թաղեցաւ , յարեաւ , և համբարձաւ , և խոստացաւ որ ճշմարիտ հաւատացեալները յարուցանէ և երկինքը վերածէ , և իւր անմահ փառացը հաղորդ ընէ ։ Ուրկէ կ՚իմացուի մեր ճշմարիտ հաւատացեալ ըլլալնիս , եթէ ոչ նոյն երկնաւոր Յիսուսին շաւղաց հետևող լինելով , և իւր ամենայն տնօրինութեան խորհրդոց՝ որք սոյն քաղաքիս մէջ կատարուեցան հաւատով , և անոր Աստուած և Որդի Աստուծոյ լինելն ճըշմարտապէս դաւանելով , և խաչուողը , թաղուողը , չարչարուողը , և յարութիւն առնողը կատարեալ մարդ և կատարեալ Աստուած անշփոթ միաւորութեամբ դաւանելով , և նոյն սուրբ Տեղեաց երկրպագութեամբ մեր անկեղծ սիրոյ իղձը ցոյց տալով ծածկագիտին Աստուծոյ . և ասոնց ամէնը կատարած ժամանակնիս , ճշմարիտ հետևող կը լինինք Յիսուսի շաւղաց , և իւր խոստումն որ առ մեզ ըրած է , անշուշտ կը կատարէ և զմեզ Հօր Աստուծոյ որդեգիր կ՚ընէ , ինչպէս որ ըրած է ասոնք անթերի կատարողները ։ Ու Դաւիթ մարգարէն իւր այնքան հարստութեան մեծ փարթամութեան մէջ Աստուծոյ շնորհաց տրիտուր մը չկարողանալով գտանել՝ կը տարակուսի ըսելով . « Ո՛ ինչ տայ

արիտուր Տեառն ընդ ամենայնի զոր ետ ինձ »։ Ախրաւի Ախտուսին մէջն ըրած երախտեաց փոխարէնը հատուցանել անկարելի է. բայց ինքը մարդասէր լինելով կը բաւականանայ, իւր մեզի համար կրած չարչարանաց, նախատանաց յիշատակութիւնը չմոռնալով, և անկեղծ հաւատով և սիրով սուրբ տեղերը յարգելով և պատուելով և մանաւանդ իւր անդրանիկ Երուսաղէմ քաղաքը չմոռնալով. վասն զի 'ի ըսկըզբանէ անտի սուրբ է Երուսաղէմ, և յարգութեան արժանաւոր։ Այս սուրբ երկիրս էր որ Աստուածն ամենաբարին ժառանգութիւն տուաւ Աբրահամու և անոր զաւակներուն, երբ որ զինքը իւր հայրենի աշխարհէն Բաբելան, և Բաբելընէն 'ի Խառան, և Խառանէն Երուսաղէմ կանչեց ըսելով. « Ել յերկրէ քումմէ և յազգէ քումմէ, և եկ յերկիրն զոր ցուցից քեզ »։

Ուրեմն շնորհալի և բարելի է սուրբ Երուսաղէմն իւր առատապարգեւ պարգեւներութեամբը. ուստի Աստուած իւր սիրելիները այս երկիրս գալու կը հրաւիրէ։ Այս երկիրս եղաւ Աբրահամու աստուածածանօթութեան սկիզբը, ուր սեղան կանգնելով պատարագ մատոյց յանուն Ճշմարտին Աստուծոյ։ Այս տեղ երեւցաւ Աստուած ընդ երկուց հրեշտակաց իւր սիրելի Աբրահամ ծառային, և սքանչելի որդեծնընդեան աւետիքը տալով անոր Սառային՝ մայր ազգաց բազմաց հանդիսացոյց։ Այս երկիրը աւազանին խորհուրդը գուշակելով, առ Չքե-

հորոմն երեւեցաւ Խաչակալ. այս տեղ զօտէ-մարտեցաւ իւր սիրելի Յակոբ ծառային հետ. և յաղթեցաւ, որ կը նշանակէր Բանին մարդեղութիւնը: Այրաւի յաղթեցաւ Աստուած իւր մարդասիրական գթութենէն, երկինքէն յերկիր խոնարհելով՝ վերաւորեալ բնութեանս առողջութիւն շնորհելով: Այս տեղ ամփոփուեցաւ 'ի ձեռն Մեթայ նախահարց ոսկորները, որոնց վրայ ծնաւ Բանն Աստուած և խաչեցաւ, որով զմեզ վերստին ծնաւ որդիս լուսոյ, և Հօր արքայութեան ժառանգակից ըրաւ 'ի փառս անձառս: Այս տեղ ամենաբարի բընութիւնն երկնից կամարը սանդուղի գլուխը նստելով՝ այսինքն բարձրադիտակ խաչին վրայ որ իւր փառաց աթոռն էր, և իւր երկնային զօրքերը հրեշտակաց գունդերը հրաւիրակ առաքեց զմեր հողեղէն բնութիւնը երկինք բարձրացունելու, և իւր անման փառաց հաղորդ ընելու: Այս տեղ ամփոփուած է՝ բոլոր Աստուածատես նախահարց ոսկորները. եթէ Երուսաղէմ և իւր սահմանները հասարակ երկիներէն մէկն լինէր, Յակոբ նահապետն չէր ըսեր՝ զիս Երուսաղէմի սահմանները տարէք թաղեցէք. Նմանապէս և Յովսէփ փրկիչն Եգիպտոսի, որ իւր ոսկորները 'ի սոյն բարեկի երկիրը թաղել կ'ուզէր: Եթէ մեռելոց ոսկերաց օգտամատոյց է այս սուրբ երկիրս, այս քանի՞ առաւել կենդանի աչօք տեսանողաց շահաւէտ և օգտամատոյց, մանաւանդ անոնց՝ որք իրենց ճշմարիտ պարտք ճանաչելով՝ սրտի սիրով և լի

յաւտով և աներկբայ հաւատով կը դիմեն այս սուրբ երկիրս և իրենց յարգական ուխտը և երկրպագութիւնը կը մատուցանեն ։ Արդ՝ այս այն երկիրն է որուն համար Մովսէս մարգարէն կանխագուշակեց ըսելով. «Երկիր՝ որ բղխէ զկաթն և զմեղր». ստուգապէս մեղր և կաթ կը բղխէ, վասն զի Աստուածային աւետարանական բաները և մարգարէից գուշակութիւնները մեղր և կաթ են, որ բղխեցան այս երկրէս և քաղցրացուցին ամենայն հաւատացելոց սիրտը և հոգին, և հոգեւորապէս պարարտացուցին մարդկային ստորանկեալ ազազուն բնութիւնը ։ Դարձեալ կ'ըսէ նոյն մարգարէն այս երկրիս համար՝ թէ երկնից անձրեւէն կը խմէ ջուրը. յիրաւի անուրանալի է, որ սուրբ առաքեալք երկնից անձրեւի պէս ընդունեցին հոգւոյն շնորհքը Պենտէկոստէի օրը սուրբ Սիոն վերնատան մէջ, որով անձրեւեալ բովանդակ աշխարհս զուարթացուցին և պայծառացուցին կենսաձիր շնորհօք ։ Նաեւ պարարտ է կ'ըսէ երկիրն այն իւղով և ձիթենի պտղով ։

Արդ՝ ինչո՞վ ազատեցաւ մեր ախտացեալ բնութիւնը սկզբնական մեղքէն, որ թաղուած էր 'ի սկզբանէ անտի յաններելի մեղս մեծամեծս. ո՞չ ապաքէն նոյն մարգարէին գուշակած իւղովը՝ որ կը սրբէ զմեղ օծմամբ յաւազանին Հոգւոյն Թափանցիկ շնորհօք. որուն անքակտելի կնիքը անեղծանելի կը մնայ մեր ճակտին վերայ 'ի յաւիտենս ժամանակաց ։ Ուրեմն յարգելի և պատուելի է Երուսաղէմն իւր բարե-

բեր բերկրալի պտուղներովը․ և պաշտելի և երկրպագելի է անօրինական սուրբ տեղերը իրենց անմահացուցիչ և կենդանացուցիչ արդիւնաւորութեամբը ։ Այս տեղ է շնորհաց աղբիւրը, որովհետեւ ամեն շնորհքներ այս սուրբ քաղաքէս մատակարարութեան ընդհանուր տեղերաց վրայ սրբազան Առաքելոց միջնորդութեամբը, ինչպէս որ Դաւիթ մարգարէն կ՚ըսէ․ « Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա, և մինչեւ ՚ի ծագս աշխարհի է խօսք նոցա »․ և կամ թէ՝ « Օրէնք ՚ի Սիոնէ ելցեն և բան Տեառն Երուսաղէմէ », վասն զի սրբազան Առաքեալները Երուսաղէմէն ելելով և աշխարհի չորս կողմը տարածուելով, Յիսուսի կենարարին բանը քարոզեցին և ճշմարիտ հաւատքը ամենուն ծանօթացուցին և երկնից արքայութեան ժառանգորդ ըրին ։ Մարմնացեալ Բանին ոտքը այս սուրբ քաղաքս կոխեց, վասն զի Բեթղեհեմ մօրի մէջ ծնաւ ամբիծ Կոյսէն զԷմմանուէլ Քրիստոսը, որ աշխարհիս ազատիչն էր․ որ Յորդանան մկրտեցաւ, ուր ջախջախեց հինօրեայ վիշապացեալ գազանին գլուխը՝ որ ոխերիմ թըշնամի էր մարդկութեանս ։ Այս երկիրս շրջելով քարոզեց և մարդիկը իրեն շնորհական եղբայր անուանելով, Հօր Աստուծոյ որդեգիր ըրաւ․ այս տեղ չարչարեցաւ, որով իսպառ բընաջինջ ըրաւ և հալածեց մարդկային չարչարանքը և նեղութիւնը, զոր կը կրէին դժոխական բանտին մէջ ։ Այս տեղ տարածեցաւ քառակուսի խաչին վրայ, և ընդ իւր կանգնեցոյց

զանկեալ բնութիւնս մեր. աստ խաչեցաւ իբ-րեւ մահապարտ, որ մեր մահապարտ բնութիւնը անլուծանելի շղթայներէն արձակեց. Եւս և այն տեղ պիտի լինի վերջին դատաստանն և իւրաքանչիւրոյ արդար հատուցումն ըստ գործոց, ինչպէս մարգարէն Դաւիթ կ'ըսէ. «Անդ անկեալ են աթոռ դատաստանի». և Յովել մարգարէն կ'ըսէ. «Զարթիցեն և ելցեն ամենայն ազգք 'ի ձորն Յովսափաթու, զի անդ նստայց դատել զամենայն ազգս շուրջանակի»։

Այսչափ անօրէնութիւնները, հրաշքները, մարգարէութիւնները, քարոզութիւնները, և Յիսուսի փրկագործութիւնները Երուսաղէմի մէջ ըլլալէն զկնի, վերջին դատաստանն ալ այս տեղ պիտի ըլլայ. ուրեմն մէկ մը չպիտի լինի որ Երուսաղէմին նենգէ, որ ինքն ալ չնենգուի. և ամենուն պարտ է՝ անոր հաւատք ընծայել և գալ իրենց Երախտաւորին շնորհակալութեան նուէրներ, ուղերձներ, աղաչանքներ, բոլորով սրտիւ մատուցանել։ Պարտուց տակ են այն մարդիկ, որք աշխարհի զբաղմունքները, մեծութեան պատրանքները, և կամ ծուլութիւնը և հեղգութիւնը իրենց բանաւոր պատճառ բըռնելով, թերի կը գտնուին այն հոգեւոր պարտուց մէջ։ Երուսաղէմ չգալ միմիայն անոնց է ներելի, որք ոչ կարողութիւն ունին հետիոտս քալելու, և ոչ դրամական կարողութիւն՝ որ նաւով և կամ այլ ինչ գրաստով գան իւրեանց բաղձանաց հասնին։ Իսկ ձեռնհաս մարդիկ ամէնն ալ պարտաւոր են հետեւող լինիլ Յիսուսի

ռւիկ ձայնին, որ քաղցր ազդեցութեամբ կ՚ըզ-գացունէ ամենայն քրիստոնէից սիրտը թէ, “Ել յերկրէ քումմէ, և յազգէ քումմէ, և եկ յերկիրն զոր ցուցից քեզ”.

Արդ՝ հրաւիրողին զմեզ յերկիրն հոգեպա-րար՝ ըմպել յաղբիւրէն գետահետեալ շնորհի ողորմութեան, վայել է փառք պատիւ և եր-կրպագութիւն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

---

Քաջ ծանօթացանք որ ամենայն քրիստոնէի պարտաւորութիւնն է Երուսաղէմ ելանել և պաշտել Արքազան տնօրինական տեղերը, և յայտ-նի է որ նոյն սուրբ Տեղեաց պայծառութիւնը և պաշտպանութիւնն ալ մեր արդար վաստա-կոց տրոց և ողորմութեանց վրայ կայացած է. որովք պայծառ կը փայլին սուրբ տեղերը ՚ի փառս Արարչին և ՚ի պարծանս քրիստոնէից: Եւ-սոյն ողորմութիւնը չէ թէ այժմ, այլ ՚ի հին օրինաց սկսեալ կուտան բարեպաշտ ջերմե-ռանդները ՚ի պէտս տան Տեառն և պաշտօնէ-ից նորա. վասն զի Աստուած պատուիրեց մար-գարէին բերանովը իւր սիրելի ժողովրդեան, որ տասանորդ տան իւր ընտրած սուրբ տեղ-ւոյն. ըստ այնմ թէ՝ “Եւ եղիցի տեղին զոր ընտրեսցէ Տէր Աստուած մեր կոչել զանուն իւր ՚ի վերայ նորա, անդ մատուսջիք զամենայն զոր ես պատուիրեմ ձեզ այսօր զտասանորդս ձեր և զպտուղս ձեռաց ձերոց”. և երկրորդ

մնացորդաց մէջ կ՚ըսէ․ «Ելէք ՚ի քաղաք Յու-
դայ և ժողովեցէք յամենայն Իսրայէլէ ամի ամի արծաթ զօրացուցանել զտուն Տեառն»․ և Նեէմիան կ՚ըսէ․ «Տայուք զպտուղս ծառոց մերոց ամ ըստ ամէ ՚ի տուն Տեառն Աստուծոյ, և եղիցի ապաստաւորացն ՚ի տեղիս սրբութեան»․ և Մակաբայեցւոց մէջ կ՚ըսէ․ «Եւ քաղաքն Պտղոմէացւոց տուեալ լինի նոցա պարգեւս և ՚ի նուէրս սրբոց, որք են Երուսաղէմ ՚ի պէտս ծախուց»․ և երրորդ Թագաւորաց մէջ կ՚ըսէ․ «Ասէ տէր․ տացեն զարծաթն ՚ի ձեռս գործաւորաց գործոյն Տեառն վերակացուաց տան Տեառն»։ Եւ մանաւանդ պէտք է որ շատերը Եսայի մարգարէի երանութեանը փափաքող լինելով՝ իրենց զաւակները նուիրեն Տիրոջ սիւնք ապաստաւորութեան, ըստ այնմ թէ՝ «Երանի այնոցիկ որք ունիցին զաւակ ՚ի Սիոն»․ և Եզեկիէլ մարգարէն կ՚ըսէ․ «Ի վերայ լերինն սրբոյ իմոյ ասէ Տէր Տէր, անդ ծառայեսցեն ինձ ամենայն տունդ Իսրայէլի, և անդ զպտուղս երախայրեաց ձերոց ՚ի հոտ անուշից ընկալայց»։

Ուրեմն պէտք է որ սիրաբորբոք հաւատացեալ քրիստոնէի անկեղծ սէրը՝ որ առ կենարարն մեր Յիսուս Քրիստոսն է, չէ թէ միայն լոկ բանիւ, այլ և գործով յայտնի ընեմք․ վասն զի նոյն ինքն Յիսուս փրկիչն իւր աստուածային անհամեմատ սուրբ սէրը, առ մարդկայինս բնութիւն գործով ցոյց տուաւ։ Ուստի պէտք է որ մենք ալ գործքով անոր սիրոյ յիշատակը անմոռաց պահեմք շինութեամբ, պայծառու-

թեամբ, սպաշտպանութեամբ, յարգելով, պատուելով և երկրպագութիւն մատուցանելով այն տեղերուն՝ ուր որ տեղի ունեցան Կենարարին մերոյ գերամաքուր ոտքն ընդունելու։ Նուէր տուող բարերար անձը թող չնայի, որ ո՞ւր պիտի երթայ իմ տուածս, և ինչ օգուտ պիտի ընդունիմ այն արարմունքէս. վստահ եղիր սիրելի եղբայր, որ քու նուէրդ բեռնակրին յանձնեցիր, որ ուղղակի յերկինս քու յաւիտենական շտեմարանիդ մէջ կը տանի անփորձ անսասան կը պահէ մինչեւ երթաս ուրախութեամբ վայելես։ Արբէք մի յիշեր որ այս բեռնակիրս անզօր է և վատուժ, կարող չէ երկինք ելանել և իմ յաւիտենական տունս երթալ և իմ գանձս անսասան տանել իւր տեղը հասուցանել. վասն զի բարի դիտումդ ձեռնտու է անոր տկարութեան, և անփորձ կը հասուցանէ իւր տեղը, թէ եւ վատուժ, թէ եւ անզօր, թէ եւ մեղսամակարթ, թէ եւ ոտից մինչ ցգըլուխ վիրաւորեալ, բայց ձեռագործ Աստուծոյ և հաւատացեալ. ոչ ապաքէն իւր զօրեղ Հովուապետն, որ գիտէ իւր մարդասիրական քաղցր սպեղանեօքը զայն վէրատին հաստատել, այն և անոր բեռը իւր ուսը բառնալով, ըստ քո բարի դիտաւորութեանդ ՚ի յաւիտենական տունդ տանել հասուցանել կարող է։

Այլ արդ՝ չէ թէ միայն հին օրինաց ընթակայ եղող մարդիկ սուրբ տեղեաց, այսինքն Տիրոջ տան պայծառութեան համար ողորմութիւն կը շնորհէին, այլ և նոր օրինաց մէջ նոր հա-

ւատացեալ քրիստոնեայք ալ խիկոյն սահմանեցին տիրոջ տանը պիտոյքը հոգալ, ինչպէս որ Գործք Առաքելոցին մէջ կ'ըսէ։ Մանաւանդ որ Ստեփան քաղաքէն Պօղոսի և Բառնաբայ առաքելոց ձեռօք իրենց ստացուածքներէն իրբեւ սիրոյ նշան նուէրներ առաքեցին Երուսաղէմ 'ի պայծառութիւն տնօրինական սուրբ Տեղեաց. և մանաւանդ 'ի պէտս սուրբ Երուսաղէմ գտնուող Առաքելոց և նոր հաւատացելոց։ Ու կ'ըսէ Կենարարն մեր թէ, «Ով որ արբուսցէ բաժակ մի ջուր ցուրտ յանուն աշակերտի, ոչ կորուսցէ զվարձս իւր»։ Եթէ ջուր ցուրտ վարձուց արժանաւոր է, ապա քանի՞ առաւել քրիստոնէի մը արդար վաստակոց պտուղը, որ իբրեւ պատարագ Աբելի կը նուիրեն առատօրէն 'ի պէտս շինութեան և պայծառութեան սուրբ Տեղեաց։ Ողորմութիւն տուողները ողորմութիւն պիտի գտնեն կ'ըսէ Քրիստոս Փրկիչն մեր։ Ու Տոբիթ կ'ըսէ. «Ողորմութիւնը մեղաւորաց հոգին կը քաւէ»։ Ինչպէս որ պոռնիկ կինն կատարեալ զղջմամբ և ողորմութեան իւղով իւր ծանր մեղքերէն ազատելով արդարացաւ։

Բայց անոնք որ ագահութեան համար կը խստանան ու չեն կատարեր, այնպիսիները Արքայան Պետրոս առաքելոյն ազդու ձայնն կը յանդիմանէ. ինչպէս որ Անանիան և Սափիրան 'ի միասին կորսնցուցին իրենց կենդանութիւնը։ Ուրեմն սիրելի եղբարք, մենք չնմանինք Անանիային և Սափիրային. որք թշնամի եղան իրենց

անձանց կորստեան . այլ Նմանող լինիմք Աբրահամու հօրն հաւատոյ, որ աներկբայ գտաւ առ յոյսն վերին, և իւր Միածինն չխնայեց պատարագելու Գողգոթայ լերան վերան . ուստի Հայր Աստուած անոր կատարեալ հաւատքը զոյգ ընդ գործոյն տեսնելով, իւր Միածին Որդին կամաւորութեամբ նոյն բարձրադիտակ լերան վերայ պատարագեց, փոխանակ որդւոյն Աբրահամու . որով՝ այսինքն Գառն Աստուծոյ պատարագելով մեր վիրաւորեալ բնութիւնը սրբեց և առողջացոյց և վերստին կենդանութեան յոյս տըւաւ : Յուսով, սիրով և հաւատով լինիք ձեր պատարագն, ինչպէս որ Գաւիթ պատարագամատակից հրեշտակին սուրբ անդրէն 'ի տեղի իւր դարձոյց, և Սողոմոն ընկալաւ կատարեալ իմաստութիւն պատարագաւ, և սուրբ Գրիգոր Լուսաւորիչ և Տրդատ ողորմելով Հայոց ազգին Թշուառ վիճակին, չխնայեցին իրենց անձը նուիրել այս սուրբ Տեղւոյս շինութեան և պայծառութեան . և մանաւանդ անոնց ժամանակէն սկսեալ մինչեւ ցարդ կան և մնան այս Արքայական տեղերս պայծառ, բոլոր ազգիս արդար սրտօք և ողորմութեամբ : Որոց հատուսցէ Տէր Աստուած 'ի փառս անճառս զարխուր փոխարէնի յարաղուարձ բերկրութեամբ . ամէն :

ՎԵՐՋ

# ՑԱՆԿ ՊԱՏՄԱԳՐՈՒԹԵԱՆ